### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6 — ՀՈՒՆԻՍ 1970

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов» — теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание








# ԼԵՆԻՆԻԶՄԸ ԵՎ ԱՐԴԻ ԳԻՏԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ


Ս. Պ. ՏՐԱՊԵԶՆԻԿՈՎ

Պատմական գիտությունների դոկտոր


*Արդի դարաշրջանի գլխավոր գծերից մեկն է գիտության աննախընթաց արագ զարգացումը, որը հենվում է հարաճուն արտադրողական ուժերի նյութական բազայի վրա։ Մարդկության առջև բացվում են նոր հորիզոններ, ինչպես բնության գաղտնիքների իմացության, այնպես էլ հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունների խոր ըմբռնման ասպարեզում։ Այժմ անվիճելի է այն փաստը, որ մարդկությունը գտնվում է գիտատեխնիկական այն մեծ հեղափոխության պատմական շրջանում, որն ուղեկցվում է արտադրական ոլորտում և հասարակական կյանքում տեղի ունեցող ամենախոր հեղաշրջումներով։ Գիտության մեջ ձեռք բերվող ամեն մի նոր հաղթանակ հանգեցնում է հասարակության կյանքի, տեխնիկական ու սոցիալական առաջադիմության տեմպերի արագացման վրա դրա ազդեցության ուժեղացմանը։*

*Հասարակական առաջավոր բոլոր ուժերի կամքն ու միտքը ուղղված են այն բանին, որ տիրապետելով բնության ուժերին, դրանք օգտագործվեն հասարակական առաջադիմության արագացման համար, թույլ չտալ, որ ռեակցիան դրանք մարդկության համար չարիք դարձնի։*

*Սոցիալիզմի պայմաններում գիտատեխնիկական հեղափոխությունը համաժողովրդական գործ է, կուսակցության և կառավարության մշտական հոգատարության առարկան, կոմունիզմի համար մղվող պայքարի ամենավճռական բնագավառներից մեկը։ Ներկայումս անհնար է առանց լայնորեն զարգացնելու գիտական հետազոտությունները և արտադրության մեջ արագորեն յուրացնելու դրանց արդյունքները, ապահովել էկոնոմիկայի աճման անհրաժեշտ տեմպերը։ Հասարակական-տնտեսական համաշխարհային երկու սիստեմների՝ սոցիալիզմի ու կապիտալիզմի մրցակցության արդյունքը զգալի չափով կախված է արտադրաուժերի առավել արդյունավետ զարգացումից, հասարակության նյութական ու հոգևոր կյանքում գիտության նվաճումների առավել լրիվ օգտագործումից։*

## 1. ՄԵՐ ԴԱՐԱՇՐՋԱՆԸ ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՄԵԾ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆ Է

*Մեր օրերում գիտատեխնիկական հեղափոխությունը գտնվում է իր ծավալման ու գործողության կարևոր փուլում։ Կապիտալիզմի հետ գիտատեխնիկական մեծագույն մրցակցության մեջ համաշխարհային սոցիալիստական սիստեմը ոչ միայն պետք է պահպանի իր դիրքերը, այլև ի բարօրություն բոլոր ժողովուրդների առաջադիմության ու բարգավաճման հաղթանակի այդ մարտում։ Իսկ ի՞նչը պետք է նպաստի սոցիալիզմի հաղթական ելքին։*

*Առաջին հերթին դա հիմնարար գիտության ըստ ամենայնի զարգացումն է, որի արդյունքներից են կախված որակապես նոր, շրջադարձային տեղաշարժերը հասարակության նյութական արտադրության և հոգևոր կյանքի ոլորտներում։ Հիմնարար գիտությունը կամ, ինչպես Մարքսն էր ասում՝ «զուտ գիտությունը» միշտ չէ, որ ի ցույց է դնում իր գեղեցկությունն ու վեհությունը։ Սակայն երբ այդ հզոր ուժը դուրս է գալիս լաբորատորիաների անդորրի սահմաններից, մարդկությունն իսկույն զգում է նրա հրամայական երթը։ Գիտական իմացության մյուս մասը կիրառական գիտությունն է, որը միշտ մարդկանց աչքի առաջ է, գործողության, կիրառության մեջ, տեսանելի և շոշափելի են նրա արդյունքները։ Կիրառական գիտությունը դա այն ուժն է, որն անմի-*

գանական աշխարհի և կենդանի մատերիայի հիմքում ընկած բնության բուն երևույթների միասնությամբ և ընդհանրությամբ։ Ընդհանրացված վիճակում դա կարելի է ցույց տալ այնպիսի «հանգուցվող» գիտական ուղղությունների երևան գալու օրինակներով, ինչպիսիք են՝ բիոֆիզիկան, բիոքիմիան և ուրիշներ։ Բազմաթիվ գիտությունների կապի կենտրոնացված արտահայտությունն է կիբեռնետիկան։ Գիտության այդ նոր բնագավառը մշակում է կառավարման տեսությունը մարդկային գործունեության տարբեր ասպարեզներում, ընդսմին օգտագործելով այնպիսի գիտությունների տվյալները, ինչպիսիք են մաթեմատիկան, ֆիզիկան, քիմիան, կենսաբանությունը, էկոնոմիկան, հաշվողական տեխնիկայի զարգացումը և այլն։ Մեր օրերում տեղի է ունենում գիտելիքների դիֆերենցման ու ինտեգրման անընդմեջ պրոցեսը, ուստի, գիտության զարգացումը, մանավանդ կոմպլեքսային բարդ պրոբլեմների մշակման ժամանակ, հենվում է ո՛չ միայն առանձին գիտնականների գործունեության, այլև բազմաթիվ լաբորատորիաների ու ինստիտուտների կոոպերացման վրա։

Հինգերորդ՝ գիտությունը ավելի ու ավելի է ներթափանցում պետական ու տնտեսական կառավարման բոլոր ոլորտները։ Կոմունիստական կուսակցությունը պետության և հասարակության իր ղեկավարման ընթացքում գիտության կայուն հիմքերի վրա է դնում սոցիալական պրոցեսների ղեկավարման գործը։ Դա սոցիալիզմի օրոք հասարակական զարգացման կարևորագույն օրինաչափություններից մեկն է։ Գիտական մեթոդների ամեն կերպ զարգացման և ժողովրդական տնտեսության կառավարման պրակտիկայում լայն կիրառման այդ անհրաժեշտությունը բարձրացնում է գիտնականների դերն ու պատասխանատվությունը։ Գիտության կարևորագույն խնդիրներից մեկն է դառնում մեր հասարակության արտադրական, տնտեսական, սոցիալական ու հոգևոր պրոցեսների կառավարման տեսական հիմունքների մշակումը։ Առանձին ճյուղերի էկոնոմիկան ու ժողովրդական տնտեսությունն ամբողջությամբ վերցրած այնքան են աճել, որ դրանք հնարավոր է կատարել միայն խիստ գիտական հիմունքով։ Դրա հետ մեկտեղ իր ողջ սրությամբ ծառացել է հատուկ կատեգորիայի կադրերի՝ բուն գիտության կառավարմանը իրազեկ գիտության գործիչների նպատակասլաց պատրաստման հարցը։

Վեցերորդ՝ գիտատեխնիկական հեղափոխությունը արդի նյութական ու հոգևոր կուլտուրայի ակտիվ գործող տարր է դարձնում գիտությունը։ Այն ո՛չ միայն փոխում է արտադրական պրոցեսների բնույթը, այլև հարաճուն ազդեցություն է գործում մարդկանց հասարակական հարաբերությունների կատարելագործման վրա։ Դա, նախ և առաջ, վերաբերում է հանրային աշխատանքի բովանդակության փոփոխմանը, աշխատանքի, որը կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման ըստ ամենայնի արագացման հիման վրա ձեռք է բերում տեխնոլոգիական պրոցեսների կառավարման ֆունկցիաներ, ինչպես արդյունաբերական, այնպես էլ գյուղատնտեսական ոլորտում հագեցվում է ինտելեկտուալ տարրերով։ Ներկայումս գործնական լուծման ռելսերի վրա են դրված հասարակական զարգացման այնպիսի խոշոր պրոբլեմներ, ինչպիսիք են՝ քաղաքի և գյուղի, մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև գոյություն ունեցող էական տարբերությունների հաղթահարումը, բանվոր դասակարգի և գյուղացիության մեջ եղած տարբերությունների վերացումը և երկրի բոլոր քաղաքացիներին անդասակարգ կոմունիստական հասարակարգի աշխատավորներ դարձնելը։ Հենց այդ ուղղությամբ է զարգանում սովետական սոցիալիստական հասարակարգը։

Անտագոնիստական, շահագործական հասարակարգի պայմաններում միանգամայն հակասական են գիտատեխնիկական հեղափոխության արդյունքներն ու հետևանքները. դրանք բազմապատիկ ուժեղացնում են կապիտալիստական արտադրության բացասական կողմերը[3]։ Իսկ հասարակական

[3] Արևմտագերմանական հայտնի սոցիոլոգ Ռենե Քենիգը արձանագրում է, որ «տեխնիկայի զարգացումը ոչ միայն հակադրականության տարրեր է մտցնում մարդկային աշխատանքում, այլև ավելի է առարկայացնում հասարակական հարաբերությունները»։ (R. König. Der Einfluß der technischen Entwickung auf Gesellschaft und Beruf. „VDI-Zeitschrift„, 1968, № 10, S. 383.



հարաբերությունների սոցիալիստական վերափոխումը գիտակցաբար պլանավորող և վերահսկվող պրոցես է դարձնում գիտատեխնիկական առաջադիմությունը, որի վերջնական նպատակն է՝ ամբողջ հասարակության բարօրությունը և նրա յուրաքանչյուր անդամի համակողմանի զարգացումը։ Իրականացել են Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, թե «միայն սոցիալիզմը կազատի գիտությունը բուրժուական կապանքներից, կապիտալին նրա ճորտացումից, կապիտալիստական կեղտոտ ընչաքաղցության շահերին նրա ստրկությունից»[4]։

## 2. ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԱՄԲՈՂՋՈՎԻՆ Ի ՍՊԱՍ ԴՆԵԼ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆԸ

Գիտատեխնիկական առաջադիմության անշեղ ընթացքը գործի մի կողմն է։ Գործի մյուս կողմն այն է, որ գիտատեխնիկական առաջադիմությունը, ինչպես անցյալում, այնպես էլ այժմ ընթանում է ոչ թե հասարակական կյանքից մեկուսացված, այլ սերտորեն կապված է սոցիալական առաջադիմության հետ։ Հասկանալի է, որ սոցիալիստական երկրներում գիտատեխնիկական առաջադիմությունը ինքնանպատակ չէ. այն իրականացվում է հանուն առաջավոր, ամենակատարյալ հասարակական հարաբերությունների հաստատման ու զարգացման, հանուն խոր սոցիալական առաջադիմության, որը մարդուն ազատագրում է ամեն տեսակի դասակարգային ճնշումից և ոչնչացնում է մարդու կախումը բնության տարերային ուժերից՝ հանուն հասարակության բարօրության, հանուն մարդու բարօրության։

Մարդկության պատմության մեջ, այն պահից ի վեր, երբ գիտությունը հանդես է եկել որպես սոցիալական գործունեության առանձին ոլորտ, սոցիալական առաջադիմությունը և գիտական առաջընթացը, հակասությունների, կործանիչ աղետների ու պատերազմների միջով, ընդհանրապես և ամբողջությամբ վերցրած ընթացել են ձեռք-ձեռքի։ Եվրոպայի կապիտալիստական զարգացման նախերգանքը եղան աշխարհագրական մեծ հայտնագործությունները, աստղագիտության, երկնային ու երկրային մարմինների, մեխանիկայի, հիդրոստատիկայի ու հիդրոդինամիկայի բնագավառում գիտական իմացության առաջընթացի հուժկու քայլերը, որոնք թույլ տվեցին ընդհանրացնել և իրոք իմաստավորել գիտական ու տեխնիկական զարգացման համաշխարհային փորձը։ Հենց այդ ժամանակաշրջանում է, որ դրվում են արդի բնագիտության հիմքերը, ամրապնդվում է նրա կապը արտադրական ոլորտի հետ։

Այն ժամանակվա գիտության աճով էր ուղեկցվում կապիտալիստական արտադրության տեխնիկական վերակառուցումը, արտադրողաուժերի արագ զարգացման նյութական նախադրյալների ստեղծումը։ Այդ բանը համոզիչ կերպով ցույց տվեց արդյունաբերական հեղաշրջումն Անգլիայում, որը վերջնականապես հաստատեց արտադրության կապիտալիստական եղանակը։ Այդ պահից սկսած զգալիորեն ավելի արագ է իրականացվում գիտության զարգացումը, քանի որ բուն գիտությունը դառնում է կապիտալի ներդրման շահութաբեր ոլորտ, և այն հետզհետե ավելի ակնհայտ է դառնում։ Ֆ. Էնգելսը նշել է, որ «...գիտության միայն այնպիսի մի արգասիքը, ինչպիսին է Ջեմս Ուատի շոգեմեքենան, իր գոյության առաջին հիսուն տարում շատ ավելի մեծ արդյունք տվեց աշխարհին, քան աշխարհը ի սկզբանե ծախսել էր գիտության զարգացման վրա»[5]։ Սակայն հետագայում իրականությունը ցույց տվեց, որ գիտության զարգացման սահմանափակումները հիմնականում թաքնված են սոցիալական պայմաններում, կապիտալիստական հարաբերությունների սիստեմում։ Այդ կապակցությամբ նպատակահարմար ենք գտնում կանգ առնել ներկայիս գիտատեխնիկական հեղափոխության մի քանի առանձնահատկությունների, մասնավորապես այդ հեղափոխության և ժամանակակից աշխարհում տեղի ունեցող սոցիալական հարաբերություններում եղած կապերի վրա։

Ծավալված գիտատեխնիկական հեղափոխության առաջին առանձնահատկությունն այն է, որ վերջինս տեղի է ունենում կապիտալիզմից սոցիալիզմին անցման հեղափոխական դարաշրջանում։ Լինելով արդի պատմական պրոցեսը

[4] В. И. Ленин, ПСС, т. 36 стр. 381.
[5] К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 1, стр. 555.

հեղափոխականացնող կարևորագույն գործոններից մեկը, մեր օրերի գիտատեխնիկական հեղափոխությունը, վերջին հաշվով, տանում է դեպի սոցիալիզմի դիրքերի ամրապնդումը, համաշխարհային մասշտաբով կազմում է սոցիալիզմի հաղթանակի պայմաններից մեկը։

Արդի գիտատեխնիկական հեղափոխության երկրորդ առանձնահատկությունը որոշակի իմաստով երկու աշխարհների, սոցիալիստական և կապիտալիստական տարբեր տիպի երկու սիստեմների միջև ծավալված պայքարի առանցքն է։ Այդ պայմաններում գիտատեխնիկական հեղափոխությունը, նրա արդյունքներն ու հետևանքները դառնում են երկսայրի զենք և կարող են օգտագործվել ինչպես առաջադիմության ուժերի կողմից՝ հօգուտ քաղաքականության և հետագա բարգավաճման, այնպես և ռեակցիայի ուժերի կողմից՝ բռնության և ավերման չարագուշակ նպատակներով։ Գիտատեխնիկական առաջադիմության արդյունքների, նրա սոցիալական բովանդակության այդպիսի բևեռացումը զրկում է լրիվին հիմքից «Կոնվերգենցիայի տեսության» և «Միասնական ինդուստրիալ հասարակության» կողմնակիցների մտայնությունները։ Երկու սիստեմների վիթխարի մրցությունն ու պայքարը ավելի են սրվում գիտության և տեխնիկայի բնագավառում եղած մրցակցությամբ։ Ուստի և բնական է, որ յուրաքանչյուր սիստեմ, յուրաքանչյուր երկիր ձգտում է մյուսներից առաջ անցնել այդ մրցակցությունում, զորեղացնել իր հզորությունը։ Դա որոշում է գիտատեխնիկական հեղափոխության պրոբլեմների շուրջը ծավալված պայքարի սրությունը և առանձնապես ընդգծում տեխնիկական առաջադիմության և սոցիալական առաջադիմության սերտ կապը։

Մեր օրերի գիտատեխնիկական հեղափոխության երրորդ առանձնահատկությունը համապարփակ բնույթ է կրում։ Եթե անցյալում հեղափոխական հեղաշրջումները կատարվում էին գիտության ու տեխնիկայի առանձին բնագավառներում, ապա ներկայումս գիտատեխնիկական հեղափոխությունը համապարփակ է, լրիվին ընդգրկում է հասարակության արտադրա-տնտեսական կյանքը։ Ընդ որում, յուրաքանչյուր նոր հայտնագործություն է՛լ ավելի է արագացնում գիտատեխնիկական առաջադիմության սրընթաց վազքը[6]։ Միևնույն ժամանակ, հեղափոխությունը գիտության մեջ օրգանապես միասնական հեղափոխական պրոցեսում է միաձուլվում արտադրության և հասարակության ոլորտում տեղի ունեցող հեղափոխության հետ, որի ընթացքում ավելի ու ավելի ակտիվորեն է ազդում հասարակական-տնտեսական զարգացման բոլոր կողմերի վրա։

Առավել շոշափելի են դառնում գիտատեխնիկական հեղափոխության սոցիալական արդյունքները, իսկ դրան համապատասխան աճում է նաև մարքս-լենինյան տեսության նշանակությունը գիտության մյուս բոլոր ճյուղերի, մարդկանց պրակտիկ գործունեության համար։ Է՛լ ավելի մեծացել է հասարակական ճշմարիտ տեսության, հասարակական գիտությունների ողջ կոմպլեքսի, այդ թվում փիլիսոփայության ավելի արագ զարգացման պահանջը ոչ միայն սոցիալիստական, այլև կապիտալիստական երկրներում, որտեղ ավելի ու ավելի մեծ թվով առաջավոր մտավորականներ, հասարակական գործիչներ և շարքային աշխատավորներ ձգտում են ինչպես գիտատեխնիկական, այնպես և դեպի սոցիալական առաջադիմությունը։

Հարց է ծագում. այդ երևույթի ո՞ր կողմին է պատկանում առաջնությունը՝ տեխնիկական, թե՞ սոցիալական առաջադիմության։

Մարքսիստ-լենինյանները այդ հարցը դիտում են դիալեկտիկորեն, փոխադարձ կապի, փոխադարձ կախվածության տեսանկյունից և անպայման դասակարգային դիրքերից։ Աշխարհում գոյություն ունի միայն մեկ դասակարգ՝ բանվոր դասակարգը, որն իր գոյության բուն իսկ պայմանների պատճառով հետևողականորեն և մինչև վերջ շահագրգռված է այն բանում, որ տեխնիկական առաջադիմությունն ի սպաս դրվի սոցիալական պրոգրեսին, շահագործումից ու սարկացումից աշխատավորների ազատագրման գործին։

6 Գիտական գիտելիքների ծավալը Ջ. Բեռնալի գնահատմամբ կրկնապատկվում է յուրաքանչյուր 7 տարում, իսկ Դ. Պրայսի կարծիքով՝ յուրաքանչյուր 10—15 տարում (տե՛ս «Наука о науке», М., 1969, стр. 269, 289)։



Այդ դասակարգը ինչպես միշտ ամենակազմակերպված, ամենահեղափոխա-
կան և վերափոխիչ դասակարգն է։
Բուրժուազիան այդ տեսակետից չափազանց եսամոլ է։ Նույնիսկ կողմ-
նակից է տեխնիկական առաջադիմության, բայց այնպիսի առաջադիմության,
որը չառաջացնի խոր սոցիալական վերափոխումներ։ Այդ պահպանողական
գծերը բուրժուազիան ցուցաբերել է նաև անցյալում իր տիրապետության
«լավ ժամանակներում», իսկ ներկայումս նա ո՛չ միայն դարձել է ավելի պահ-
պանողական, այլև դառնում է ավելի ռեակցիոն։ Վերցնենք օրինակի համար
իմպերիալիստական բուրժուազիայի գործողությունները Աֆրիկայի և Ասիայի
երկրներում։ Այնտեղ նա մազաչափ անգամ չի ցանկանում հրաժարվել իր
դասակարգային շահերից, իշխողի արտոնություններից։ Ասենք, ոչ միայն այդ
մայրցամաքներում. իմպերիալիստական բուրժուազիան ամենուրեք և ամեն
տեղ, ծածուկ, թե բացահայտ, հանդես է գալիս որպես ժողովուրդների ազա-
տությունը, առաջադիմությունն ու ազատագրումը խեղդող ուժ։
Մարդկության ողջ պատմությունը համոզիչ վկայում է, որ գիտատեխնի-
կական անարգել և ներդաշնակ առաջադիմությունը հնարավոր է միայն սո-
ցիալական առաջադիմության զուգակցմամբ, որ այնտեղ, ուր տեխնիկական
պրոգրեսը չի ուղեկցվել սոցիալական առաջադիմությամբ, այն զարգացել է
այլանդակ ձևերով ու անհրաժեշտ թափ չստանալով, վերջ ի վերջո մարել է։
Եվ, ընդհակառակը, երբ այդ զուգակցվել է սոցիալական առաջադիմությամբ,
տեղի է ունեցել գիտության սրընթաց զարգացում, և հասարակությունը առաջ
է ընթացել իր զարգացման մեջ։ Ինչպես ժամանակին գիտատեխնիկական
առաջադիմությունը սոցիալական պրոգրեսի զուգակցմամբ հանգեցրել է հա-
սարակության սոցիալ-տնտեսական կարգերի որակական փոփոխությունների,
որոնք ավարտվել են կապիտալիզմի տիրապետության հաստատմամբ, այն-
պես և հետագայում այդ նույն երևույթները հանգեցրին հին, կապիտալիստա-
կան հարաբերությունների խորտակմանը ու նոր, սոցիալիստական հարաբե-
րությունների ստեղծմանը, որոնք մեր օրերում ընդգրկել են երկրագնդի
բնակչության մեկ երրորդը։
Կապիտալի երկրներում գիտատեխնիկական հեղափոխությունը ուղեկ-
ցվում է իմպերիալիզմի դեմ հզոր ճնշում գործադրող, նրա սոցիալ-տնտեսա-
կան հիմքը քայքայող բանվոր դասակարգի, առաջադեմ բոլոր ուժերի հետա-
գա համախմբմամբ։ Տեղի է ունենում այնպիսի բարենպաստ օբյեկտիվ պայ-
մանների և այնպիսի սուբյեկտիվ գործոնների հասունացման արագընթաց
պրոցես, որոնք դյուրացնում են հեղափոխական ուժերի հաղթական պայքարը։
Գիտատեխնիկական հեղափոխությունը կապիտալիստական աշխարհում ու-
ղեկցվում է այնպիսի պրոցեսներով, որոնք լուրջ ազդեցություն են գործում
հասարակության սոցիալական կառուցվածքի, դասակարգային ուժերի հարա-
բերակցության վրա. մի կողմից՝ պայմաններ են ստեղծվում աշխատավոր-
ների հակաիմպերիալիստական դաշինքի ամրապնդման, իսկ մյուս կողմից՝
որոշակի բազա՝ օպորտունիզմի տարածման, բանվոր դասակարգի վրա բուր-
ժուական գաղափարախոսության ազդեցության ուժեղացման համար։
Գիտատեխնիկական առաջադիմությունը առաջ է բերում մասսայական
վերաորակավորում։ Ժամանակակից տեխնիկան պահանջում է գրագետ և լավ
պատրաստված բանվորներ։ Կապիտալի երկրներում այդ պրոցեսը զուգա-
կցվում է արտադրությունից բանվորների մի մասի, մանավանդ ավագ տարիքի
բանվորների դուրս մղմամբ։ Հայտնվում է իրենց ուժերի և ունակությունների
կիրառում չգտնող «ավելորդ» մարդկանց մի ամբողջ շերտ։ Աշխատավոր երի-
տասարդության զգալի մասը նույնպես չի կարողանում ձեռք բերել արդի
պահանջները բավարարող որակավորում, և կյանք է մտնում որպես գործա-
զուրկ, առանց ապագայի որևէ հեռանկարի։ Այդ երիտասարդությունը կարող
է ներգրավվել և՛ գիտակից հեղափոխական գործունեության, և՛ անարխիստա-
կան խռովարարության մեջ։
Սովետական Միությունում գիտա-տեխնիկական պրոգրեսը իրականաց-
վում է միասնությամբ սոցիալական մեծ առաջադիմության հետ, որը մեր
հասարակությանը տանում է դեպի մարդկային քաղաքակրթության բար-

լայն իմաստով՝ խոսքը զարգացման մասնավոր մոմենտների մասին չէ) սպառել են իրենց։

Արտադրաուժերը բուրժուական հասարակարգի շրջանակներում զարգանում են բախումներով, ընդհարումներով։ Ավելի ու ավելի ակնհայտ են դառնում բոլոր ուղղություններով բուրժուական հասարակարգի բացահայտ փլուզման ու քայքայման նշանները։ Իհարկե, արտադրաուժերի զարգացումը կանգ չի առել, այն ընթանում է տատանումներով՝ վեր ու վար, բայց ընդհանրապես կապիտալիզմի սոցիալ-տնտեսական և բարոյա-քաղաքական զարգացման կորագիծն ամբողջությամբ վերցրած իր բոլոր տատանումներով հանդերձ ընթանում է ոչ թե վեր, այլ վար։

Արտադրության կապիտալիստական եղանակը անընդհատ հեղափոխականացնելով արտադրության տեխնիկան և հանրային բնույթ տալով աշխատանքին, արդեն ստեղծել է սոցիալիզմի նախադրյալները։ Համաշխարհային-պատմական մասշտաբով առավել զարգացած կապիտալիստական երկրների արտադրաուժերը գիտատեխնիկական հեղափոխության պրոցեսում դուրս են եկել կապիտալիզմի շրջանակներից, և այդ տեսակետից հասարակությունը միանգամայն հասունացել է սոցիալիզմի համար։ Մոնոպոլիստական կապիտալիզմի սերտաճումը պետական իշխանության հետ աշխարհի ժողովուրդների առաջ վարկաբեկել է բուրժուական կարգերի ինչպես տնտեսական սիստեմը, այնպես և քաղաքական վերնաշենքը։ Այլ կերպ ասած՝ կապիտալիզմը որպես սոցիալ-տնտեսական սիստեմ սպառել է իրեն և միայն կոպիտ ուժի, միլիտարիստական քաղաքականության, կաշառման, շանտաժի ու բռնության, մասսայական «մանիպուլյացիաների» և խաբեության օգնությամբ, արդիականության հակաիմպերիալիստական ու հեղափոխական բոլոր ուժերի կայուն միասնության բացակայությամբ է պահպանում իր գոյությունը։

Գաղափարախոսության ու կուլտուրայի ասպարեզում է՛լ ավելի զգալի չափով են խարխլված ու քայքայված բուրժուական հասարակարգի հիմքերը։ Անկումը, գաղափարական ունայնությունը, բարոյական վայրենացումը, որ քարոզում է բուրժուազիան, իրենց սայրով շրջվում են նրա իսկ տիրապետության դեմ։ Առաջադեմ մարդկությունն այլևս չի ուզում հաշտվել ընկճող ունայնության, բարոյազրկության հետ և բոլոր ուժերով ձգտում է պաշտպանել համաշխարհային կուլտուրան, քաղաքակրթությունը, նախորդ սերունդների լավագույն տրադիցիաները։ Օբյեկտիվորեն ասած՝ այժմ բոլոր ուղիներն ու ճանապարհները մարդկությանը տանում են դեպի սոցիալական առաջադիմություն, դեպի սոցիալիզմի հաղթանակը։ Ապագան նրանն է։

Սակայն դա նշանակո՞ւմ է արդյոք, թե բուրժուազիայի կործանումը ավտոմատիկ կերպով, մեխանիկորեն կանխորոշված է։ Ո՛չ։ Լենինը, նշելով իմպերիալիզմի դարաշրջանում սոցիալիզմի նյութական նախադրյալների անպայման հասունությունը, միաժամանակ ընդգծել է, որ առանց սուբյեկտիվ գործոնի, այսինքն առանց բանվոր դասակարգի և աշխատավորական մասսաների հեղափոխական պայքարի, կապիտալիզմն ինքը երբեք չի անհետանա՝ նեխումը կարող է ձգձգվել։ Միայն բանվոր դասակարգը, աշխատավորական լայն մասսաների ակտիվ աջակցությամբ և իսկական հեղափոխական կուսակցության ղեկավարությամբ, կարող է լուծել համաշխարհային մասշտաբով կապիտալիզմի վերացման և սոցիալիզմի հաղթանակի պրոբլեմը։

Հասկանալի է, որ դա հեշտ խնդիր չէ։ Բուրժուազիան ոչ թե սոցիալ-տնտեսական զարգացման պասսիվ արգասիք է, այլ կենդանի, գործող, ակտիվ պատմական ուժ։ Այո՛, այդ դասակարգն իր դարն ապրել է և արգելակ դարձել պատմական զարգացման համար։ Բայց, դրա հետ մեկտեղ, բուրժուազիան, թեև սուր հակասության մեջ է մտել պատմական զարգացման պահանջների նկատմամբ, այնուամենայնիվ, դեռ զորեղ դասակարգ է։ Ավելին. այն ի վիճակի է առավել չափով կենտրոնացնել ուժերն ու միջոցները քաղաքական խաբեության, բռնության, պրովոկացիաների համար այն պահին, երբ նրան ամենքից շատ է սպառնում սոցիալական կործանում։ Սոցիալիզմի հաղթանակը Եվրոպայի և Ասիայի մի շարք երկրներում, աճող ժողովրդական շարժումն աշխարհում բուրժուազիայի համար ստեղծել են կոր-



ծանման ահեղ վտանգ։ Դա ծայրաստիճան սրել է նրա դասակարգային ինքնապաշտպանության բնազդը։ Որքան մեծ է վտանգը, այնքան ավելի է դասակարգը կամ անհատը լարում իր կենսական ուժերը ինքնապաշտպանության համար մղվող պայքարում։ Ուստի և բանվոր դասակարգի աճման ու ամրապնդման հետ մեկտեղ, բուրժուազիան ամենևին էլ չի թուլանում ու հյուծվում։ Նա մոբիլիզացնում է բոլոր ուժերը՝ բանակը, ոստիկանությունը, գիտությունը, դպրոցը, եկեղեցին, պառլամենտը, մամուլը, ֆաշիստական հրոսակներին, աշխատավորների լագերից փախած դավաճաններին, բանվորական շարժման բարոյալքված տարրերին և պատրաստվում բոլոր միջոցներով դիմադրել, կյանքի ու մահի պատերազմ սկսել բանվոր դասակարգի դեմ։

Եթե պատմականորեն կործանման դատապարտված բուրժուազիան կարողանար բավարար ուժ, եռանդ, զորություն գտնել դաժան ու անողորմ գոտեմարտում բանվորական դասակարգին հաղթելու, սոցիալիզմի նվաճված դիրքերը ժողովուրդներից խլելու համար, ապա դա կնշանակեր, որ ամբողջ աշխարհը դատապարտված է տնտեսական ու կուլտուրական քայքայման, ինչպես անցյալում այդ տեղի է ունեցել շատ երկրների, ազգերի ու քաղաքակրթությունների նկատմամբ։ Կյանքը հրամայաբար թելադրում է այն հետևությունը, որ մարդկությունը, քաղաքակրթությունը կարելի է փրկել միայն սոցիալիզմի ուղիներով։ Ժամանակակից հասարակությունը այլևս չի կարող մահացու վտանգի մատնել իրեն։ Կարծես ինքը պատմությունը ասում է բանվոր դասակարգին և նրա ավանգարդ կոմունիստական կուսակցություններին. «այո, մարդկության ճակատագիրը ձեր ձեռքում է. եթե իմպերիալիստների արարքներին չհակադրվի ժողովրդական մասսաների կազմակերպված ուժը, ապա քաղաքակրթությունը սպառնալիքի տակ կլինի»։

Այժմ ամբողջ հարցն այն է, թե ինչպե՞ս արագացնել սոցիալիզմի հաղթանակը, ինչպիսի՞ ուժեր պետք է իրականացնեն այդ։ Այդպիսի ուժեր կան։ Եվ մարքսիստ-լենինյանները տեսնում են այդ ուժերը։ Ուստի և նրանք պայքարում են հանուն այն բանի, որ ինչքան կարելի է արագ թուլացնել, ջլատել աջ ռեֆորմիստական ու ձախ ավանտյուրիստական գաղափարախոսությունը, հաղթահարել գաղափարական-քաղաքական տարաձայնությունները միջազգային կոմունիստական շարժման շարքերում, կազմակերպել, ակտիվացնել, համախմբել բանվոր դասակարգին, աշխատավորներին ու բոլոր հակաիմպերիալիստական առաջավոր ուժերին ամբողջ աշխարհում։ Եվ այն ժամանակ կարագանա շարժումը հանուն սոցիալական առաջադիմության, կդյուրանա սոցիալիզմի հաստատումը ամբողջ մոլորակի վրա, կայուն ու հավերժ խաղաղություն կհաստատվի աշխարհում։

Ժողովուրդներն այլևս չեն կարող հանդուրժել, որ արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականությունը, այս կամ այն ազգի վիթխարի հարստությունները գտնվեն հասարակության արտոնյալ սակավաթիվ դասակարգի ձեռքում։ Առանձնապես անհեթեթ է այն, որ հասարակության նյութական կյանքի այնպիսի գլխավոր աղբյուրը, ինչպիսին հողն է իր անթիվ-անհամար հարստություններով, առանց որոնց անհնար է մարդկանց կյանքը, շարունակում է գտնվել մի ոչ մեծ խումբ սեփականատերերի ձեռքում, որոնք աղքատության, բարբարոսության, սովի ու բնաջնջման են մատնում միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց։ Բանվոր դասակարգը, աշխատավորները, հասարակության հեռատես առաջադեմ բոլոր ուժերը ավելի ու ավելի են հասկանում, որ հենց արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության մեջ է թաքնված մարդկության ճակատագրին սպառնացող վտանգը։ Հենց դա է հասարակության դասակարգային բաժանման սկզբնապատճառը, դասակարգային անտագոնիզմի ու դասակարգային պայքարի հրահրման օջախը։ Հենց արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականությունն է իր մեջ թաքցնում պատերազմների, սոցիալական և ռազմական ամեն տեսակի սուր ընդհարումների մեծ վտանգ։ Հետևապես, այդ պրոբլեմների լուծման գլխավոր ճանապարհն է՝ պայքարը արտադրության գործիքների ու միջոցների մասնավոր սեփականության վերացման համար, պայքարը իշխանությունը աշխատավոր ժողովրդի ձեռքը տալու համար։

Ամբողջ հարցը նպատակին հասնելու միջոցների մեջ է։ Եթե աջ ռեֆորմիզմի գաղափարախոսները օրակարգից առհասարակ հանում են այդ հարցը, ապա ձախ ավանտյուրիստական տիպի գաղափարախոսները գտնում են, որ դա կարելի է լուծել միայն բռնի, զինված պայքարի միջոցներով կամ, ինչպես իրենք են ասում, համաշխարհային հեղափոխության կամ համաշխարհային պատերազմի միաժամանակյա գործողությամբ։ Արդյոք հարկ կա՞ ասելու, որ այդ դոկտրինան ամբողջովին ավանտյուրիստական է և հղի է կործանարար հետևանքներով։

Իսկական մարքսիստ-լենինյանները, հասկանալի է, օրակարգից երբեք չեն հանել համաշխարհային հեղափոխության և պայքարի միջոցների, ընդհուպ մինչև զինված պայքարի հարցը, բայց դրա հետ մեկտեղ նրանք այդ միջոցները երբեք չեն դիտել որպես ինքնանպատակ, բացարձակ չեն համարել պայքարի այդ ուղիներն ու միջոցները։ Օբյեկտիվ օրինաչափությունները անխուսափելիորեն տանում են դեպի կապիտալիզմի կործանումը և սոցիալիզմի հաղթանակ։ Բայց անհնար է ճշտությամբ որոշել, թե ե՞րբ տեղի կունենա դա, և պայքարի ինչպիսի՞ միջոցներով ձեռք կբերվի՝ հեղափոխակա՞ն, թե՞ էվոլյուցիոն, բռնի՞, թե՞ խաղաղ։ Ամենից հավանականն այն է, որ դա կիրականացվի բազմազան միջոցներով, նայած կոնկրետ իրադրությանը, դասակարգային ուժերի հարաբերակցությանը այս կամ այն երկրում։

Գիտատեխնիկական հեղափոխությունը սրում է սոցիալական բոլոր կոլիզիաները ժամանակակից աշխարհում։ Մի կողմից՝ այն հույս է ներշնչում բուրժուազիայի և նրա գաղափարախոսների հոգում, թե կարելի է կասեցնել կապիտալիզմի կործանումը, կանխել սոցիալական հեղափոխությունը, պահպանում է վիթխարի արտադրաուժերը և պետական ապարատի զորությունն իր ձեռքը կենտրոնացրած շահագործող դասակարգի ամենակարող լինելու պատրանքը։ Մյուս կողմից՝ պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի այդ անսահման իշխանությունը և բուրժուական հասարակարգի միլիտարիզմի ու կործանիչ ուժերի աճի պարզ ուրվագծվող վտանգը առաջացնում են աշխատավորների, բոլոր ազնիվ մարդկանց հարաճուն ընդդիմադրությունը։ Ավելի ու ավելի համընդհանուր է դառնում այն անվիճելի ճշմարտության գիտակցումը, թե միայն սոցիալիզմն է ելքը բուրժուական կարգերի հակասությունների փակուղուց, թե միայն արմատական սոցիալական վերափոխումները կարող են գիտության ու տեխնիկայի նվաճումները ի սպաս դնել ոչ թե կործանման ու քայքայման դիվային ուժերին, այլ մարդկությանը։ Եվ այն ժամանակ «գիտության, պրոլետարիատի և տեխնիկայի ներկայացուցիչների դաշինքին ոչ մի մութ ուժ չի կարողանա դիմադրել»[11]։ Սոցիալիզմ — ահա քաղաքակրթության փրկության բանալին, մարդկության նոր, պայծառ ապագայի ճանապարհը։

* * *

Մեր դարը ամբողջ աշխարհով մեկ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթական տարածման դար է։ Մարքսիզմ-լենինիզմի հաղթական դրոշի ներքո այժմ քայլում են ճնշված ու շահագործվող միլիոնավոր մասսաներ։ Կարելի է ասել, որ մեր դարաշրջանը բանվոր դասակարգի սոցիալիստական դրոշի ներքո մարդկության առաջադեմ ուժերի մասսայական անցման դարաշրջան է։ Հանուն իրենց ազատության ու անկախության իմպերիալիզմի դեմ պայքարող ժողովուրդները երես են դարձնում կապիտալիզմից։ Ասենք, ինքը բուրժուազիան է՛լ ավելի ու ավելի հազվադեպ է օգտվում կապիտալիզմի վարկաբեկված դրոշից, գերադասելով այն քողարկել կեղծ ժողովրդական, կեղծ դեմոկրատական ֆրազեոլոգիայով։

Իմպերիալիզմն իրեն վարկաբեկել է արդիականության գլխավոր, կենսականորեն կարևոր՝ խաղաղության ու պատերազմի, ժողովուրդների ազատության ու անկախության հարցերում։ Իմպերիալիստները այրվող խանձողները ձեռքներին աշխարհով մեկ դես ու դեն ընկած, պատերազմի խարույկներ են վառում մերթ այստեղ, մերթ այնտեղ և կրակին յուղ լցնում։ Բայց ինչպես

[11] В. И. Ленин, ПСС, т. 40, стр. 189.



պատմությունը պահում է ժամանակի հաշիվը, այնպես էլ ժողովուրդներն են պահում իմպերիալիզմի արյունահեղ հանցագործությունների հաշիվը։

Միլիտարիզմի գաղափարախոսությունը, որը իր համար զենք է դարձրել մոնոպոլիստական կապիտալը, արտահայտում է նրա իսկական բնությունը, նրա ներքին էությունը։ Իմպերիալիստական գաղափարախոսներն ու պրոպագանդիստները քարոզում են «նախազգուշական պատերազմի», պատերազմական գործողությունների «էսկալացիայի», «սարսափի հավասարակշռության», «մեգա-մահվան» և այլ ագրեսիվ դոկտրինաներ։ Այդպիսին է արյունահեղ ագրեսիաներ սանձազերծող, համաշխարհային միջուկային պատերազմ պատրաստող իմպերիալիզմի տրամաբանությունը։ Այդ լույսի տակ հատուկ ուժով է հնչում Լենինի նախազգուշացումը, այն գաղտնիքը մերկացնելու անհրաժեշտության մասին, որի քողի տակ ծնունդ է առնում պատերազմը։

Կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև ավելի քան հարյուր տարի առաջ սկսված անհաշտ պայքարը ցույց է տալիս, որ համաշխարհային հասարակական զարգացման ընթացքը անխուսափելիորեն տանում է դեպի կապիտալիզմի կործանում և սոցիալիզմի ու կոմունիզմի հաղթանակը։ Եվ այդ անխուսափելիության նկատմամբ սարսափով պետք է բացատրել կապիտալիստական երկրների պետական ու քաղաքական ականավոր գործիչների ավելի ու ավելի հաճախ արձակվող կոչերը՝ կոմունիզմի դեմ «գլոբալ» գրոհ կազմակերպելու, աշխատավորների մեջ կոմունիստական գաղափարների ներթափանցման դեմ «համաշխարհային պատնեշ» ստեղծելու մասին։

Զինված ճանապարհով սոցիալիզմը ոչնչացնելու իրենց փորձերում անհաջողություն կրելով, կորցնելով հավատը սոցիալիստական երկրները տնտեսապես խեղդելու հնարավորության նկատմամբ, կապիտալիստական աշխարհի պարագլուխները այժմ ուժեղացնում են կոմունիզմի դեմ գաղափարախոսական դիվերսիաներ կազմակերպելու փորձերը։ Եթե բուրժուական գաղափարախոսները կոմունիզմի գաղափարների դեմ պայքարի միջոցներ ընտրելիս առաջ էլ աչքի չէին ընկնում իրենց մաքրասիրությամբ, ապա այժմ նրանց մեթոդները վկայում են հոգեկան ծայրաստիճանի դեգրադացիայի մասին։ Բուրժուական գաղափարախոսության գործիք են դառնում հակասովետական կեղտոտ կեղծաթղթերը, պրոպագանդիստական աղմկոտ իրարանցմանը մասնակից են դառնում հարաճուն թվով ռադիոկայաններ, տպագիր օրգաններ, ինստիտուտներ։ Համառ միջոցներ են ձեռնարկվում կոորդինացնելու հակասովետական պրոպագանդան ո՛չ միայն առանձին կապիտալիստական երկրների շրջանակներում, այլև միջազգային մասշտաբով։

Այդ պայմաններում սխալ կլիներ թերագնահատել հակառակորդին։ Բուրժուական գաղափարախոսական ուժերի ակտիվացումը բոլոր մարքսիստ-լենինյանների առջև դնում է պատասխանատու խնդիրներ։ Անհրաժեշտ է ողջ ճակատով մեկ զորեղ հարձակում կազմակերպել ժամանակակից բուրժուական գաղափարախոսության դեմ, տալ բուրժուական կոնցեպցիաների ու հայացքների խոր և փաստարկված քննադատությունը, բացահայտել բուրժուական գաղափարախոսության բոլոր ձևերի ու արտահայտությունների դասակարգային, ռեակցիոն իմաստը։ Կոմունիստները, հասարակական գիտությունների աշխատողների ստվար բանակը, բոլոր գիտնականները չունեն ավելի կարևոր խնդիր, քան անդուլ հետևողական պայքար մղել հանուն մարքսիզմ-լենինիզմի մեծ գաղափարների մաքրության, պատմական և արդի պրակտիկայի, գիտության նվաճումների բազայի վրա խոր և ստեղծագործորեն զարգացնել տեսությունը։ Դրան է կոչում մեզ հեղափոխական տեսության ողջ ոգին։ Եվ դա մի առանձին ուժով մենք զգում ենք այսօր, լենինյան հոբելյանի օրերին։ Լենինի մեծ գաղափարները մեզ կոչում են առա՜ջ դեպի անդուլ ստեղծագործություն և պայքար։

«Вопросы философии»
№ 4, 1970.

# ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԴԵՐԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԸՄԲՌՆՈՒՄԸ

Հ. Գ. ՂԱԶԱՐՅԱՆ

Արվեստը պատկանում է ժողովրդին: Այն իր խոր արմատներով պետք է թափանցի աշխատավոր զանգվածների ամենախոր շերտերը: Այն պետք է հասկանալի լինի այդ զանգվածներին և սիրելի դառնա նրանց: Այն պետք է միավորի այդ զանգվածների զգացմունքները, մտքերն ու կամքը, բարձրացնի նրանց: Այն պետք է նրանց մեջ զարթնեցնի արվեստագետներին ու զարգացնի նրանց:

**Վ. Ի. ԼԵՆԻՆ**

*Սոցիալիզմը, իբրև գաղափարախոսություն, իբրև սոցիալիստական իրականություն, իր անջնջելի դրոշմն է դրել XX դարում մղվող գրական պայքարի, գրական տարբեր մեթոդների առաջացման ու զարգացման ողջ ընթացքի, առանձնահատկությունների և օրինաչափությունների վրա:*

*Դեռևս 900-ական թվականների սկզբին իր* Ի՞նչ անել *(1902) նշանավոր աշխատության մեջ Լենինը հարցը դրել է շատ պարզ ու որոշակի. «միայն այսպես,— ասում է նա,— բուրժուակա՞ն, թե՞ սոցիալիստական գաղափարախոսություն. սոցիալիստական գաղափարախոսության ամեն մի թերագնահատում, ամեն մի հեռացում նրանից՝ ինքնին նշանակում է բուրժուական գաղափարախոսության ուժեղացում (տե՛ս Երկեր, հ. 5, էջ 507): Իսկ սոցիալիստական գաղափարախոսության հաղթանակը նշանակում է* սոցիալիզմը միացնել բանվորական շարժմանը, *որոշակի սոցիալիստական գաղափարներով տոգորել տարերային բանվորական շարժումը, «տարերային շարժումը միաձուլել* հեղափոխական կուսակցության *գործունեության հետ որպես մի անքակտելի ամբողջություն» (Երկեր, հ. 4, էջ 270):*

*Հիմնական խնդրի լուծումը՝ ինքնակալության տապալումը, քաղաքական ազատության նվաճումը, պահանջում էին վիթխարի ջանք, գաղափարական-կազմակերպական աներևակայելի աշխատանք: Անհրաժեշտ էր ստեղծել* կոմունիստական *կուսակցություն: Այս էր թելադրում կյանքի անհրաժեշտությունը: «Մեր առաջ իր ամբողջ ուժով կանգնած է թշնամու ամրոցը,— ասում է*



*Վ. Ի. Լենինը* Մեր շարժման կենսական խնդիրները *(1900) հոդվածում,— որտեղից մեր գլխին ռումբերի և գնդակների տարափ է տեղում, խլելով մեր լավագույն մարտիկների կյանքը: Մենք պետք է գրավենք այդ ամրոցը, և մենք կգրավենք այն, եթե արթնացող պրոլետարիատի բոլոր ուժերը միացնենք ռուս հեղափոխականների բոլոր ուժերին և դարձնենք մի կուսակցություն, որին կձգտի այն ամենը, ինչ Ռուսաստանում կենդանի է ու ազնիվ: Եվ ա՛յդ ժամանակ միայն կկատարվի ռուսական բանվոր-հեղափոխական Պյոտր Ալեքսեևի այն մեծ մարգարեությունը, թե «կբարձրանա միլիոնավոր բանվոր մարդկանց մկանուտ ձեռքը, և զինվորների սվիններով պաշտպանված դեսպոտիզմի լուծը փոշեցրիվ կլինի» (Երկեր, հ. 4, էջ 477):*

*Խնդիրը որոշակի էր, լուծումը՝ բարդ:*

*Սովետական գրականության անմիջական ակունքները հասնում են, ահա, այդ ժամանակաշրջանը, սերտորեն կապվում ազատագրական շարժումների պատմության ընթացքի հետ, երբ տակավին նոր էր սկսում ձևավորվել բոլշևիկների կուսակցությունը: XIX դարի վերջին, XX դարի սկզբին ազատագրական շարժումը գրականությունը սնում էր* նոր բովանդակությամբ, *արդեն հուշում էր* նոր բախումներ ու կերպարներ, *որոնք և որոշում էին գրական պրոցեսի նոր բնույթը (տե՛ս* История русской советской литературы, т. 1, изд. «Наука», 1967, стр. 7):

*Ռուսաստանի պատմության մեջ 1895 թ. սկսվում է հեղափոխական շարժման երրորդ, Վլադիմիր Իլյիչի բնորոշմամբ՝* պրոլետարական *էտապը: Բանվոր դասակարգը հանդես է գալիս իբրև Ռուսաստանի հասարակական կյանքին ուղղություն տվող քաղաքական մեծ ուժ: 1882 թ.* Կոմունիստական կուսակցության մանիֆեստի *ռուսական հրատարակության առաջաբանում Մարքսն ու Էնգելսն ազդարարում էին. «Ռուսաստանը ներկայացնում է հեղափոխական շարժման առաջավոր ջոկատը Եվրոպայում» (Կ. Մարքս, Ֆ. Էնգելս, Ընտիր Երկեր, հ. 1, էջ 4): Գնահատելով հեղափոխական շարժումները Ռուսաստանում՝ Մարքսը, այնուհետև, գուշակում էր, որ այդ շարժումը «վերջիվերջո պետք է անխուսափելիորեն, գուցե տևական ու կատաղի պայքարից հետո, հանգեցնի Ռուսական Կոմունայի ստեղծման»* (К. Маркс, Ф. Энгельс. Сочинения, т. *19*, стр. *252*):

*Այդ ժամանակաշրջանում էլ՝ 90-ական թվականներին, ստեղծվում է Մ. Գորկու* Ֆոմա Գորդեև *(1898—1899) վեպը՝ պրոլետարական էտապի առաջին և ամենաբնորոշ երկը, որով բացվում է սոցիալիստական ռեալիզմի* սկզբնական փուլը *Ռուսաստանում: «*Ֆոմա Գորդեևը*,— ասում էր Բ. Վ. Միխայլովսկին,— նախապատրաստված էր XIX դարի երկրորդ կեսի ռուսական ռեալիզմի զարգացմամբ և սերտորեն կապված էր այդ ժամանակի դեմոկրատական գրականության ավանդների հետ: Սակայն Գորկու ստեղծագործության մեջ արդեն արտացոլվում էր նոր իրականությունը, որն ազատագրական շարժման պրոլետարական էտապի սկիզբն էր Ռուսաստանում: Գորկու վեպում արդեն դրսևորվում էին այնպիսի առանձնահատկություններ, որոնք վկայում էին սոցիալիստական ռեալիզմի ձևավորման* սկզբնական փուլը» (История русского романа в двух томах, т. 2, М.-Л., 1964, стр. 551):

*Ստեղծագործական մեթոդի, գրական ուղղությունների ու գրական հոսանքների առաջացումը բացառապես պայմանավորված է հասարակական-քաղաքական կյանքի ընթացքով, սոցիալական կյանքի տեղաշարժերով: Մարդկային կյանքի հարաբերությունների զարգացումն ու փոփոխություններն իրենց*

անմիջական կնիքն են դնում գրականության զարգացման ընթացքի վրա, սկզբնավորում կամ ձևավորում գրական այս կամ այն ուղղությունն ու ստեղծագործական մեթոդը։

Այսպես, ահա, պատմական օրինաչափ զարգացման արդյունք ու պատմական անհրաժեշտություն է նաև սոցիալիստական ռեալիզմը՝ իբրև գրականության պրոլետարական էտապի և սոցիալիստական վերափոխումների գեղարվեստական արտացոլում։

Սոցիալիստական ռեալիզմն իրականում գրականության և արվեստի զարգացման նոր աստիճան է, պատմականորեն ձևավորված նոր որակ, որի առաջացումը կապված է հասարակական զարգացման որոշակի շրջանի, կարելի է ասել՝ դարակազմիկ առաջընթացի հետ։ Պատմական այդ ճշմարտության դրսևորման մեջ էլ պետք է տեսնել նրա՝ իբրև ստեղծագործական մեթոդի, կենսական ուժը, հասարակական ներգործության հետզհետե մեծացող վիթխարի ոլորտը։

Գրական շարժման ծավալուն պրոցեսում նկատելի է, թե ինչպես արագ անհետանում կամ թուլանում էին գրական այն հոսանքները (սիմվոլիզմ, ֆուտուրիզմ, էքսպրեսիոնիզմ և այլն), որոնք տվյալ շրջափուլում, արտահայտելով հասարակական որոշ տենդենցներ, շուտով սպառում էին իրենց հնարավորությունները։ Մինչդեռ ռեալիզմն անընդհատ զարգանալով ու կատարելագործվելով, առավել մեծ ուժով է դրսևորում իր բացահայտ կենսունակությունը։

Ռեալիզմն իր զարգացման ճանապարհին, պրոլետարական հեղափոխությունների բոցերում, վերաճեց սոցիալիստական ռեալիզմի, դասական գրականությունը, իր արժեքավոր ավանդներով, դրվեց սովետական գրականության զարգացման հիմքում։ Վերաճման այս ընթացքը, սակայն, տեղի չունեցավ միանգամից, այլ անցավ հարստացման երկարատև ու բարդ մի պրոցես։

Արդեն 90-ական թթ., 900-ական թթ. սկզբներին, երբ բուրժուական աշխարհը դրսևորվում էր իր բացահայտ մերկությամբ, իր ներքին անհաշտելի հակասություններով, քննադատական ռեալիզմը հասավ զարգացման բարձրակետին։ Անհետանում էր լուսավորիչների երազանքը բանականության ու արդարության թագավորության մասին։ Բանականությամբ կյանքը կարգավորելու նրանց փիլիսոփայությունն իրականում դառնում էր անզոր։ Ռեալիստ գրողն արդեն ձգտում էր բացահայտել հասարակության արատների ներքին զսպանակները, ցույց տալ նրանց իրական ազդեցությունը մարդկային անհատի վրա։

«Ռեալիստական արվեստը մարտական արվեստ է,— գրել է գերմանական ականավոր գրող Բերտոլտ Բրեխտը Սոցիալիստական ռեալիզմի մասին իր հոդվածում։— Այն պայքարում է իրականության նկատմամբ կեղծ հայացքների, մարդկության իրական շահերին հակասող ազդակների դեմ։ Այն օգնում է մշակելու ճիշտ հայացքներ...

Ռեալիստ արվեստագետներն ընդգծում են էականը, «երկրայինը», բառիս վեհ իմաստով տիպականը (պատմականորեն նշանակալին)։ Ռեալիստ արվեստագետներն ընդգծում են ծագման ու անհետացման պահը։ Իրենց բոլոր ստեղծագործություններում նրանք մտածում են պատմականորեն...

Ռեալիստ արվեստագետները պատկերում են գաղափարների ուժը և գաղափարների նյութական հիմքը» (Театр, т. 5/I, М., 1965, стр. 193—194)։

Եթե իրականության գեղարվեստական արտացոլման մեջ ռեալիստ գրող-



ները հանգում են աշխարհի ճանաչելիությանը, դեկադենտները, որոնց թիվն արագ աճում էր XIX դարի 90-ական թվականներին, հեռանում են ո՛չ միայն մարդկային իրական հարաբերությունների պատկերացումից, այլև հանգում աշխարհի անճանաչելիության սին քարոզներին, մարդու փրկության անհնարինությանը։

Սոցիալիստական ռեալիզմի ամենապարզ ու ամենաակնառու տարբերությունը ստեղծագործական մյուս բոլոր մեթոդներից, ինչպես և քննադատական ռեալիզմից, ամենից առաջ կոմունիստական գեղագիտական իդեալն է, պրոլետարիատի դասակարգային իդեալը։ Իսկ այդ իդեալի առանձնահատկությունն այն է, որ պատմության մեջ այն է առաջինն արտահայտում հասարակական պրոցեսների որոշակի տենդենցն ու օրինաչափությունները։ Հասարակության պատմության մեջ պրոլետարիատն այն դասակարգն է, որի սուբյեկտիվ շահերը համընկնում են հասարակության օբյեկտիվ ընթացքին։

Պրոլետարական հեղափոխության գեղեցկությունն իրականության մեջ և այդ հեղափոխությունն արվեստում՝ իբրև գեղեցկի ու վսեմի նոր ու բարձր չափանիշ, առաջինը գիտականորեն գնահատում են Մարքսն ու Էնգելսը։ Նրանք բացահայտում են այն գաղափարախոսների ամբողջ սնանկությունը, ովքեր պրոլետարիատի հեղափոխական պայքարը համարում էին գեղագիտությունից դուրս։

Մարքսիստական ուսմունքի հիմնադիրները ցույց են տալիս, որ կապիտալիստական հասարակության մեջ գերագույն գեղեցկությունն ազատության համար մղվող պրոլետարական պայքարն է։ Մարդկային եղբայրությունը բանվորների բերանում խոսք չէ, այլ ճշմարտություն, և աշխատանքից կոշտացած նրանց դեմքերից շողում է մարդկային ազնվությունը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Из ранних произведений, М., 1956. стр. 607)։

Դեռ դարասկզբին Լենինն ընդգծում էր. «Ամենից առաջ պրոլետարական գործը,— ասում ենք մենք,— որովհետև նա է, որ ապահովում է ո՛չ միայն աշխատանքի և մարդկության տևական, արմատական շահերը, այլև դեմոկրատիայի շահերը...» (Երկեր, հ. 20, էջ 20)։

Լենինյան խոսքի պատմական այս ակնհայտ ճշմարտությունն էլ հետզհետե դառնում էր աշխատավոր մասսաներին տիրապետող ուժ, պատմականորեն ստանում գեղագիտական մեծ նշանակություն, դառնում գրականության, պրոլետարական-հեղափոխական գրականության ուղենիշ։

Պատմության մեջ առաջինը կոմունիստական գեղագիտական իդեալն է ճշմարտացի բացահայտում կյանքի իրական պատկերը, լիապես արտացոլում անհատի ու հասարակության զարգացման առաջավոր տենդենցները, ձգտում կյանքի օրինաչափությունների գիտական իմացությունից բխող իդեալների իրագործմանը։

Մարքս-լենինյան աշխարհայացքը, անտարակույս, այն ազդակն է, որը կազմակերպում է գրողին, հասարակական կյանքի բարդ իրադրություններում տալիս նրան կողմնորոշման ուժ, ստեղծագործական կարողություններն ուղղում սևեռուն նպատակի։ Մարքս-լենինյան աշխարհայացքը տալիս է հասարակական երևույթների մեկնաբանման բանալին, լուսավորում արվեստագետի ուղին՝ թափանցելու բնության, հասարակական կյանքի ու մարդու հոգեկան աշխարհի խորքերը։ «Ոչ մի տաղանդ,— կարդում ենք «Правда»-ում,— չի կարող փոխարինել բուն կյանքի դիալեկտիկային համապատասխանող գիտական աշխարհայացքին։ Այսպիսին է հենց կոմունիզմի դիալեկտիկական-մա-

տերիալիստական աշխարհայացքը: Դրա հիման վրա տաղանդը փթթում է, առնականանում, դառնում խորաթափանց ու հեռատես» (1965 թ., № 252):

Ստեղծագործական դժվարին ճանապարհով դեպի մարքս-լենինյան գաղափարախոսությունն են գալիս բուրժուական աշխարհի նշանավոր շատ գրողներ: Կյանքը, ի վերջո, համոզում է նրանց, որ արվեստը չի սիրում խաղեր, որ անհեթեթություն է ճշմարտությանը հասնելու համար հենվել միայն բնազդի վրա, փորձելով մարդուն ազատել դատողության իշխանությունից: Աշխարհն աբսուրդ է, յուրաքանչյուր պայքար՝ ծիծաղելի,— գտնում էր Արթուր Ադամովը՝ իր մի շարք պիեսներով Էժեն Իոնեսկոյի, Սամուել Բեկետի հետ ստեղծելով «Անտիթատրոնը»: Սակայն շուտով (1957-ից) նա սկսեց մերժել «Անտիթատրոնը», հեռանալ իր վաղ շրջանի մոդեռնիստական փորձերից: «Ես այլևս չեմ հավատում,— ասում է նա 1959-ին,— այդ խաբուսիկ ավանգարդայնությանը, որն, անկասկած, օգտվում է նոր հնարքներից, բայց մոռանում, որ այդ նոր հնարքները ոչինչ են, եթե հեղինակը չի ծառայում գաղափարախոսության, և, իհարկե, ոչ ամեն գաղափարախոսության, այլ եթե իրերն իրենց անուններով կոչենք՝ մարքսիզմ-լենինիզմին» («Вопросы литературы», 1965, № 6, стр. 150):

«Ռեալիզմը, որը ես պաշտպանում եմ,— ասում է ֆրանսիական ականավոր գրող Լուի Արագոնը, բանավիճելով սոցիալիստական ռեալիզմի հակառակորդների հետ,— ուզում է ճանաչել իրականությունը, ծանոթացնել նրա հետ և վերափոխել այն» («Интернациональная литература», 1937, № 1, стр. 226):

Ականավոր շատ գրողների հետ մեկտեղ Արթուր Ադամովը ևս գալիս է դեպի մարքս-լենինյան աշխարհայեցողությունը, իր ստեղծագործությունը խորապես տոգորում հեղափոխական ոգով, միշտ ունենալով պատմական կոնկրետ դրդապատճառ, միշտ արտահայտելով պատմական ճշմարտությունը: Մարքսիզմ-լենինիզմը նրանց հանում է ստեղծագործական մոլոր ուղիներից, մղում զարգացման լայն պողոտա: Նրանք ավելի ու ավելի են ըմբռնում Գյոթեի այն խորիմաստ դիտողությունը, թե ստեղծագործողի խնդիրն է՝ հայտնաբերել հասարակական զարգացման տենդենցները, ցույց տալ «...մարդու կապը այն իրադրության հետ, որի մեջ նա ապրում է... այն ուժերը, որոնք թշնամի կամ հակամետ են մարդուն, հետևել, թե ինչպես աստիճանաբար կազմավորվում է նրա աշխարհայեցողությունը»:

Ուրեմն, գրողի խնդիրն է՝ հայտնաբերել այն ուժերը, որոնք ներգործում են մարդու վրա, նրան մղում այս կամ այն արարքի, բացահայտել այդ ուժերի բնույթը, ուղղությունը, նրանց օգտակար և վնասակար դերը հասարակական կյանքում: Գրողի դերն ամենևին էլ կյանքի օբյեկտիվ նկարագրությունը, պատմության արձանագրումը չէ, այլ ամենակարևորը՝ դրա զարգացման ոգու հայտնագործումն է:

Ուրեմն, արտաքին աշխարհի լոկ նկարագրական կողմը, մարդու ֆիզիոլոգիական ու պաթոլոգիական առանձնահատկությունների պատկերումը ստեղծագործողին տանում են ոչ թե դեպի հասարակական կյանքի բացահայտում ու ռեալ ուժերի ճանաչողություն, օգնում նրան լիարժեք դրսևորելու մարդու ներաշխարհի հարստությունը՝ օրգանապես կապված հասարակական հենց այդ հարաբերությունների հետ, այլ մղում են դեպի նատուրալիզմ, ոչ սակավ՝ տեսադաշտը, սահմանափակում նրա հասարակական ճանաչողությունը:



Ռեալությունը, օբյեկտիվ աշխարհը, անտարակույս, դառնում է պատկերի նախահիմքը: Սակայն, եթե հնադարյան արվեստից մինչև քաղաքակրթության արշալույսը նկատելի է մարդկային պրիմիտիվ ապրելակերպի արտացոլումը արվեստում— համայնական ուժ ստացած տոտեմ-առարկաները, մարդկանց շրջապատող բնությունն ու կենդանական աշխարհն արտացոլող երգ ու պար, անձավապատկերներ, ապա կեցության պատմական զարգացմանը զուգընթաց, բնականորեն զարգանում ու հարստանում է այդ կեցությունն արտացոլող արվեստը, պրիմիտիվ պատկերներից ներթափանցելով հասարակական բարդացած հարաբերությունների խորքը, մարդկային անպարփակ հոգեաշխարհը, իսկ 90-ական թվականներից արդեն արտահայտում նաև Ռուսաստանի բանվոր դասակարգի սոցիալիստական գիտակցությունը, իրականության սոցիալիստական հեղաշրջման համար մղվող հեղափոխական պայքարը:

Ինչպես, ի՞նչը կարող է մագնիսական հզոր ձգողականությամբ ի մի բերել բնության, հասարակական կյանքի երևույթների անպարագիծ հարստությունն ու բազմազանությունը, եթե ոչ նպատակամետ աշխարհայեցողություն արտահայտող արվեստը: Ստեղծագործողը պետք է կարողանա հարյուր հազարավոր երևույթները ենթարկել մի որոշակի, սևեռուն նպատակի, գեղագիտական մի վսեմ իդեալի, խուսափելով ապակողմնորոշող բազմապիսի ճյուղավորումներից, որքան էլ դրանք դյութող լինեն:

Ճիշտ է, գրականության գեղագիտական արտացոլումը, գեղարվեստական պատկերն ու կերպարը շատ ավելի բազմակողմ ու բազմանշանակ են, սակայն, պրոլետարական-սոցիալիստական գրողը, տոգորված մարքս-լենինյան աշխարհայացքով, հետզհետե ավելի ու ավելի է թափանցում հասարակական կյանքի խորքերը, ավելի ու ավելի են պակասում նրա աշխարհայեցողության ու իրականության արտացոլման հակասությունները: Նա ավելի ու ավելի է դառնում մարտնչող գրող, իր դարաշրջանի առաջավոր հայացքների, սոցիալիստական տենդենցների կրող:

Այդպիսին էր Մաքսիմ Գորկին: Ահա ինչու Լենինն անչափ բարձր էր գնահատում Գորկու պրոլետարական արվեստն իբրև անվիճելի հեղինակություն, իբրև «հսկայական պլյուս» պրոլետարիատի գործի հաղթանակի համար: «Ընկեր Գորկին իր մեծ գեղարվեստական երկերով,— ասում է նա,— չափազանց ամուր է կապել իրեն Ռուսաստանի և համայն աշխարհի բանվորական շարժման հետ...»: «...Գորկին,— վերստին հավաստում է նա,— անպայման խոշորագույն ներկայացուցիչն է պրոլետարական արվեստի, նրա համար շատ բան է արել և է՛լ ավելի շատ կարող է անել» (Երկեր, հ. 16, էջ 131, 268):

«Գրական գործը,— այսպիսով ընդհանրացնում է Լենինը,— պետք է դառնա համապրոլետարական գործի մի մասը», «...որպես հակակշիռ բուրժուական գրական կարիերիզմին ու ինդիվիդուալիզմին, «աղայական անարխիզմին» և շահամոլությանը,— սոցիալիստական պրոլետարիատը պետք է առաջադրի պարտիական գրականության սկզբունքը, զարգացնի այդ սկզբունքը և հնարավորության չափ ավելի լրիվ և ավելի ամբողջական ձևով կենսագործի այն» (Երկեր, հ. 10, էջ 40):

Բացահայտորեն պրոլետարիատի հետ կապված գրականությունը Լենինը համարում էր ազատ, սոցիալիզմի գաղափարին ծառայող գրականություն, ոչ թե «վերին տասը հազարին», այլ երկրի ծաղիկը, նրա ուժը, նրա ապագան կազմող» միլիոնավոր ու տասնյակ միլիոնավոր աշխատավորներին ծառայող գրականություն: Լենինը դա համարում էր իսկական գրականություն, «...մարդ-

կության հեղափոխական մտքի վերջին խոսքը սոցիալիստական պրոլետարիատի փորձով ու կենդանի աշխատանքով բեղմնավորող ազատ գրականություն» (Երկեր, հ. 10, էջ 45)։

Լենինը բացառապես պրոլետարական գործի, սոցիալիստական հեղափոխության հաղթանակի տեսանկյունից էր գնահատում գրական ստեղծագործությունները, ամենայն խստությամբ վերաբերվելով բոլոր շեղումներին։ Այստեղից էլ այն արտակարգ զգայուն վերաբերմունքն ու անսահման սերը, որ պրոլետարիատի մեծ առաջնորդը ցուցաբերում էր պրոլետարական մեծ գրողի հանդեպ, միաժամանակ և անողոք խստությունն ու անսքող ցավը նրա սխալների ու թուլությունների հանդեպ, որ այնպես ճարպկորեն օգտագործում էին պրոլետարական հեղափոխության թշնամիները։

Անդրադառնալով, այսպես կոչված, «աստվածորոնման» խմբակի գործունեությանը (որին հարել է նաև Մ. Գորկին)՝ Լենինն այն գնահատեց իբրև պրոլետարիատի ազատագրական կռվին խանգարող ռեակցիոն հոսանք։ Նա բոգդանովյան իդեալիզմ էր համարում Գորկու այն միտքը, թե «Աստված կոմպլեքսն է ցեղի, ազգի, մարդկության մշակած այն գաղափարների, որոնք արթնացնում և կազմակերպում են սոցիալական զգացմունքներ» (Երկեր, հ. 35, էջ 123)։

«Աստծու իդեան,— գրել է Լենինը,— միշտ թմրեցրել ու բթացրել է «սոցիալիստական զգացմունքները», փոխարինելով կենդանին մեռյալով, միշտ լինելով ստրկության (վատթարագույն, անելանելի ստրկության) իդեա» (Երկեր, հ. 35, էջ 125)։ Իսկ ռուսական առաջին հեղափոխությունից հետո, երբ հասարակության մեջ դեմառդեմ կանգնած էին բացահայտ թշնամական դասակարգերը, «...աստծո իդեայի ամեն մի, նույնիսկ ամենանրբացրած, ամենաբարեմիտ պաշտպանությունը կամ արդարացումը,— գրում է նա 1913 թ.,— ռեակցիայի արդարացումն է» (նույն տեղը)։

Գրական ստեղծագործությունները Լենինը գնահատում էր ամենից առաջ հեղափոխության շահերին նպաստելու տեսակետից։ Բայց գեղարվեստական գրականությունը, իբրև կյանքի արտացոլում, Լենինը համարում էր բարդ երևույթ։ Լև Տոլստոյին նվիրված նրա հոդվածաշարը եղել և մնում է գրական երկի բազմակողմանի վերլուծման, պատմականորեն արժեքավորելու դասական, օրինակելի չափանիշ։ Տոլստոյին Լենինը համարում էր «ռուսական հեղափոխության հայելին», երբ իր ամբողջ աշխարհայեցողությամբ նա, իրոք, դեմընթաց էր հեղափոխությանը։ Տոլստոյի ստեղծագործությունը Լենինը դիտում է որպես մի առաջընթաց քայլ ամբողջ մարդկության գեղարվեստական զարգացման մեջ (տե՛ս Երկեր, հ. 16, էջ 419)։ Նրա բերանով խոսում էր ռուս ժողովրդի ա՛յն ամբողջ բազմամիլիոն մասսան, որն արդեն ատում է ժամանակակից կյանքի տերերին (տե՛ս նույն տեղը, էջ 461—462)։ Միաժամանակ Լենինը խարանում էր բոլոր նրանց, ովքեր Տոլստոյին համարում էին «մարդկության խիղճը»։

Հանճարեղ գրողը գտնում էր, որ «Մարդկության առաջընթացի ընդհանուր օրենք չկա, ինչպես այդ ապացուցում են անշարժ արևելյան ժողովուրդները» (տե՛ս Լենին, Երկեր, հ. 17, էջ 41)։ Մեծ գեղագետը ապավինում էր համաշխարհային ոգուն։ «Մենք մեկ և միմիայն մեկ անսխալական ղեկավար ունենք,— բացականչում էր Տոլստոյը,— Համաշխարհային Ոգին է, որ թափանցում է մեր մեջ» (Լենին, Երկեր, հ. 17, էջ 41)։ Այսպիսին է քարոզիչ Տոլստոյը, կտրված կյանքի հեռանկարից, դասակարգային պայքարի այն մեծ իրա-



դարձություններից, որ ծավալվում էին նրա շուրջը բովանդակ Ռուսաստանում։ «...Մեր օրերին,— գրում է Լենինը 1911 թվականին,— Տոլստոյի ուսմունքի իդեալականացման յուրաքանչյուր փորձ, «չարին չդիմադրելու», «Ոգուն» դիմելու», «բարոյական ինքնակատարելագործման» նրա կոչերի, «խղճի» և ընդհանրական «սիրո» նրա դոկտրինայի, ասկետիզմի ու քվիետիզմի և այլ քարոզների արդարացման կամ մեղմացման ամեն մի փորձ,— ամենաանմիջական ու ամենախոր վնասն է բերում» (նույն տեղը, էջ 44)։

Մատնանշելով տոլստոյականության պատմական վախճանը առաջին հեղափոխությունից հետո, նրա ուսմունքը համարելով ուտոպիական և իր բովանդակությամբ բացահայտ ռեակցիոն, Լենինը, սակայն, գտնում էր, որ գեղագետն արտահայտում է պատմական խոր և համապարփակ ճշմարտություն։ Հանճարեղ գրողի ստեղծած պատկերներն ու կերպարները, իբրև իրականության ամենալիակատար, ճշմարտացի դրսևորումներ՝ բազմակողմանի և բազմանշանակ արտացոլում են Ռուսաստանի բովանդակ կյանքը հետռեֆորմյան և նախահեղափոխական շրջանում՝ 1861—1904 թվականներին, դրանով իսկ դառնում մեծապես պատմական և մեծապես օգտակար։ Ահա թե ինչու «Նրա մեծ երկերը բոլորի սեփականությունը դարձնելու համար,— ասում է Լենինը,— ...հարկավոր է սոցիալիստական հեղաշրջում»։

Խոսելով Լ. Տոլստոյի պատմական արժանիքների մասին՝ Լենինն ասում է. «Տոլստոյն այնքան ճիշտ է արտացոլում նրանց տրամադրությունը, որ ինքն իր ուսմունքի մեջ մտցնում է նրանց միամտությունը, նրանց օտարացումը քաղաքականությունից, նրանց միստիցիզմը, աշխարհից հեռանալու ցանկությունը, «չարին չհակառակվելը», անզոր անեծքները կապիտալիզմի և «փողի իշխանության» հասցեին։ Միլիոնավոր գյուղացիների բողոքն ու նրանց հուսահատությունը— ահա թե ինչն է միաձուլվել Տոլստոյի ուսմունքի մեջ» (Երկեր, հ. 16, էջ 431—432)։

Եթե Տոլստոյի ռեալիզմի ուժը պատմական ճշմարտության խոր արտացոլման մեջ է, ապա Գորկունը՝ նաև ու, ամենից առաջ, պրոլետարական-սոցիալիստական աշխարհայացքի։ Մեկի ուժը միայն արտացոլման մեջ է, թեկուզ և հանճարեղ, մյուսինը՝ և՛ արտացոլման, և՛ աշխարհայացքի— պրոլետարական-հեղափոխական ուսմունքի մեջ, ի հակադրություն «մի կալ հակառակ չարին»՝ տոլստոյականության։

Այդ իսկ պատճառով Գորկու արվեստը ո՛չ միայն պատկերում ու ցույց է տալիս, այլև կոչում է պրոլետարական-հեղափոխական ակտիվ պայքարի, գծում աշխատավորության ազատության ճիշտ ուղին, սոցիալիստական ցանկալի ապագան, ոգեշնչում մարդուն։ Իսկ Տոլստոյը, ցույց տալով մասնավոր սեփականության վրա կառուցված հասարակության սոցիալական խոցերը, խեղված մարդուն, կոչում է հեզության և ինքնակատարելագործման, սոցիալական հասարակական միջավայրից մեկուսանալու, հանգելով բացահայտ միստիկայի, մարդու ապակողմնորոշման ու լքումի։

Իսկական գրողը, իհարկե, չի առաջնորդվում ստեղծագործական ինչ-որ կանխավ սահմանված «մեթոդով», ինչ-որ կանոնադրությամբ. նա վեր է նման պայմանականություններից։ Դարավոր ավանդները և, ամենից առաջ՝ ժամանակակից կյանքը, ժողովուրդն իր կենսական պահանջներով՝ իբրև դարաշրջանի հզոր գործոն, դառնում են տիրական և որոշող ուժ։ Այդ են վկայում գրականության նշանակալից փաստերը։ Ստեղծագործական ամենամեծ կոթողները ծնվում են ժողովուրդների ծանր փորձության պահերին կամ կյանքի

շրջադարձային փուլերում: Այսպես են ստեղծվել Պատերազմ և խաղաղությունը, Վերք Հայաստանին, Քաոսը, Մայրը, Խաղաղ Դոնը, Երկիր Նաիրին, Վարդանանքը և հազարավոր այլ գործեր: Դրանք աշխարհ են եկել դարաշրջանի հրամայական պահանջով, պատմության խոսքն են, արտահայտում են պատմական ճշմարտությունը, բացառապես պատմական են: Ուրեմն, պատմությունն ու պատմականությունն են որոշում գրողի ճակատագիրն ու գրական երկի բախտը: Եվ, որքան խորն է երկի պատմական ճշմարտությունը, այնքան մեծ են նրա գեղարվեստական ուժը, ներգործությունը:

Գրողը հազարավոր թելերով օրգանապես կապված է իր դարաշրջանին, իր ժողովրդին, նրանից դուրս չունի, չի կարող ունենալ կյանք:

Ջուր եմ փախչում, ինձ խաբում,
Հավար կապ է ինձ կապում.
Ամենքի հետ ապրում եմ,
Ամենքի չափ տառապում:—

Հավաստում է հայ ազգային հանճար Հովհ. Թումանյանը:

Գրական երկը, հետևապես, ինչ-որ տեսությունների ու կանխապես տրըված մեթոդների, տեսական մարզանքների արգասիք, կամ միագումար չէ, այլ բուն կյանքի, նրա կենսական պահանջների, ժամանակի ոգու, հասարակական-քաղաքական կյանքի գեղարվեստական ճշմարտացի, անմիջական ու խոր արտացոլում:

Սոցիալիստական գրականություն ասելով, իբրև կոնկրետ հասկացություն, նկատի ունենք պրոլետարական-հեղափոխական գրականությունը Հոկտեմբերից առաջ և սովետական լավագույն գրականությունը՝ դրանից հետո: Այդ գրականության խնդիրն է, մի կողմից՝ մասնավոր սեփականության հողի վրա կառուցված բուրժուական հարաբերությունների բացահայտումն ու բացասումը (ինչպես այսօր անում են տասնյակ առաջավոր գրողներ կապիտալի աշխարհում), մյուս կողմից՝ հանրային սեփականության հողի վրա կառուցված սովետական բազմազգ ժողովուրդների սոցիալիստական հարաբերությունների, աշխարհը սոցիալիստորեն վերափոխող սովետական նոր մարդու հարուստ ներքնաշխարհի բացահայտումն ու հաստատումը, իբրև սոցիալիզմի դարաշրջանի հրամայական պահանջ և կենսական անհրաժեշտություն:

Սովետական գրականության խնդիրը եղել և մնում է իրականության, պատմական ճշմարտության կենդանի արտացոլումը, հասարակության զարգացման առաջավոր տենդենցների բացահայտումը: Այդ իսկ պատճառով սովետական գրականության ոգին եղել և մնում է լենինյան կուսակցականությունը, ստեղծագործական մեթոդը՝ սոցիալիստական ռեալիզմը:

Պատմականորեն կյանքի կոչված սոցիալիստական գրականությունն արտահայտում է հեղափոխության ոգին, Լենինի արտահայտությամբ՝ «դասակարգերի ամենասուր պայքարից խթանված տասնյակ միլիոնների գիտակցությունը, կամքը, ավյունը, ֆանտազիան» (Երկեր, հ. 31, էջ 102): Ինչպես հայ բանաստեղծն է ասում.

Իմ բազմամիլիոն, բյուր ընկերների
Խինդը այսօրվա և թռիչքը մեծ...

«Ars poètica»-ում (1928) Չարենցը պատկերավոր լեզվով յուրակերպ հանրագումարի է բերում բանաստեղծական իր սկզբունքները: Կյանքի հակասական, բարդ ու նրբին դրսևորումների պատկերումը պահանջում է արվեստի, սոցիալիստական գեղագիտական իդեալի արտահայտման լենինյան չափանիշ, լենինյան դարաշրջանի արժանի խոսք:



Լե՛նին— այսօր արդեն ասել է գազաթ,
Ասել է— ներքի՛ն կառուցում քո նոր թեմայի,
Այդ թեմա՛ն ուռձանում է այսօր քո մեջ,
Աճում է, բայց ո՛չ այնպես, ինչպես խոտը.
Նա աճում է կամքո՛վ, երկաթով,— նա կյանքի՛ առավոտ է՝
Մտքի, խորքի, կառուցման անհուն ելևէջ...

Իսկ այն իրագործելու համար Չարենցն անհրաժեշտ է համարում հազարավոր թելերով ու սերտորեն կապվել իր դարին ու ապագային: Կյանքի ստեղծագործական մեծ փորձը բանաստեղծին բերում էր մեկ հաստատուն համոզման ևս— առանց խոսքի հմուտ վարպետության հնարավոր չէ հաղթահարել զգացմունքների ու մտախոյանքների տարերքը, հնարավոր չէ հաղթահարել անցյալի ժառանգության հսկայական բեռ-հարստությունը և գրական գալիք սերունդներին ավանդել նվիրական պատգամներ:

Թե ուզում ես, որ խոսքդ կտրի հորիզոններ, դաշտեր,—
Պիտի վարպետ լինես անօրինակ թափի,
Ինչպես Լենինը— ապստամբության, ինչպես Էյնշտեյնը—
Թվի, տարածության, ձգողության, չափի:—

Եվ այնուհետև՝

Պոե՛տ ես— դու այսօր պիտի մաքառես—
Եվ չի օգնի այստեղ քեզ գնդացիրը:
Չի օգնի սվինը:— Հինը հաճախ
Հանճարեղ 'անցքեր է ճարում,—
Եվ չկոտրե՛ս եթե այդ ռիթմը դավաճան—
Քեզ չի օգնի Լենինը— այս լենինյան դարում...

Սոցիալիստական գրականությունն ամբողջովին ծառայում է «միլիոնավոր, տասնյակ միլիոնավոր աշխատավորներին»: Մերժելով գրականության և արվեստի մեջ առանձնապես 20-ական թվականների սկզբներին զգացվող ժողովրդի ոգուն խորթ արտահայտությունները՝ ֆուտուրիզմը, լեֆիզմը, կուբիզմը, Լենինը, ինչպես վերհիշում է Կլարա Ցետկինը, գրական գալիք սերունդներին թողեց իբրև նվիրական մի ավանդ. «Հասկանալի է, մենք կոմունիստներ ենք: Մենք չպետք է ձեռքներս ծալած կանգնենք և թույլ տանք քաոսին ծավալվելու ամենուրեք»:

# ՀՐԱԺԱՐՈՒՄ ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ ՍԿԶԲՈՒՆՔՆԵՐԻՑ

## ՉԿԿ IX համագումարում ընդունված կուսակցության կանոնադրության առթիվ

Ն. ԼՈՄԱԿԻՆ, Ն. ՊԵՏՐՈՎԻՉԵՎ

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունը, որը կայացավ 1969 թվականի հունիսին, մեծ նվաճում է կոմունիստական, բանվորական և ազատագրական բոլոր շարժումների համար։ Այն ողջ աշխարհի կոմունիստների համախմբման ճանապարհին մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա հիմնված կարևոր փուլ նշանավորեց։

Մեծ նշանակություն ունի խորհրդակցության այն եզրակացությունը, ըստ որի, կոմունիստները պետք է հետևողականորեն պաշտպանեն իրենց սկզբունքները, հետամուտ լինեն մարքսիզմ-լենինիզմի հաղթանակին, կոնկրետ իրադրության համապատասխան պայքարեն թեորիայի ու քաղաքականության աջ և ձախ օպորտունիստական աղավաղումների, ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և ձախ ադանդավորական ավանտյուրիզմի դեմ։ Հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին, պրոլետարական ինտերնացիոնալիզմին— կոմունիստական ու բանվորական կուսակցությունների ճիշտ կողմնորոշման և հաջող գործունեության անհրաժեշտ պայմանն է։

Թե համաշխարհային կոմունիստական շարժմանը ինչպիսի մեծ վնաս կարող է հասցնել նահանջը մարքսիզմ-լենինիզմից, կապերի խզումը ինտերնացիոնալիզմից, ցույց են տալիս Չինաստանի կոմունիստական կուսակցության այժմյան ղեկավարության գործողությունները։ Խորհրդակցությունում այդ գործողությունները խոր վերլուծեց ՍՄԿԿ պատվիրակության ղեկավար ընկ. Լ. Ի. Բրեժնևը։ «Գրեթե տասը տարի առաջ Մաո Ցզե-դունը և նրա կողմնակիցները,— ասաց նա,— գրոհ սկսեցին գիտական կոմունիզմի սկզբունքների վրա։ Չինաստանի կոմկուսի ղեկավարությունը տեսության հարցերի վերաբերյալ իր բազմաթիվ ելույթներում քայլ առ քայլ ռևիզիայի է ենթարկում կոմունիստական շարժման սկզբունքային գիծը։ Նա այդ գծին հակադրեց իր հատուկ կուրսը արդիականության բոլոր արմատական հարցերում...

Փաստերը վկայում են, որ չինական ղեկավարությունը սոսկ խոսում է իմպերիալիզմի դեմ պայքարելու մասին, իսկ գործնականում նա, ուղղակի



թե անուղղակի, օգնում է իմպերիալիզմին։ Օգնում է նրանով, որ ձգտում է պառակտել սոցիալիստական պետությունների միասնական ճակատը։ Օգնում է նրանով, որ միջազգային սուր ճգնաժամերի պահերին հրահրիչ դեր է խաղում, խոչընդոտում է միջազգային լարվածության թուլացմանը։ Օգնում է նրանով, որ ձգտում է խանգարել հակաիմպերիալիստական լայն ճակատի ամրապնդմանը, ձգտում է պառակտել միջազգային մասսայական կազմակերպությունները, երիտասարդական, կանանց, գիտական կազմակերպությունները, խաղաղության կողմնակիցների շարժումը, արհմիութենական շարժումը և այլն։

Բնական է, որ իմպերիալիստները Պեկինի այժմյան արտաքին քաղաքական կողմնորոշումն օգտագործում են որպես հաղթաթուղթ համաշխարհային սոցիալիզմի և ազատագրական շարժման դեմ մղվող քաղաքական պայքարում»։

ՉԿԿ ղեկավարների գործողությունները քննադատեցին նաև խորհրդակցությանը մասնակցող մյուս կուսակցությունների պատվիրակությունների ղեկավարների բացարձակ մեծամասնությունը։

Ցավոք, ՉԿԿ լիդերները չցանկացան ուշադրություն նվիրել այդ քննադատությանը։ Նրանք առաջվա նման այնպիսի գիծ են տանում, որպեսզի արգելակեն սոցիալիստական երկրների միասնության ամրապնդումը, որը հիմնված է մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վրա և պառակտեն կոմունիստական ու բանվորական միջազգային շարժումը։ Պեկինյան պրոպագանդան մեկ անգամ չէ, որ ձայնակցել է ռեակցիոն, իմպերիալիստական ուժերին, որոնք ձգտում են սեպ խրել սոցիալիստական երկրների համագործակցության մեջ։

1

Մաոականների սխալ ու վնասակար դիրքորոշումը, նրանց հակալենինյան կուրսը անցյալ տարի կայացած ՉԿԿ IX համագումարում կուսակցության պաշտոնական քաղաքականությունը դարձավ։ Այդ համագումարի որոշումների բնույթը, ըստ էության, նախապես կանխորոշվել էր արհեստականորեն ստեղծված այն իրադրության համապատասխան, որում վերջինս նախապատրաստվել էր ու անցկացվել։ «Կուլտուրական հեղափոխության» ընթացքում օրինականորեն ընտրված կուսակցական ղեկավար օրգանները ջախջախվեցին, կուսակցական գործերի վարողները դարձան «հեղափոխական կոմիտեները», որոնց ղեկավարները նշանակվեցին զինվորականներից։ Կուսակցական հին կադրերը, բոլոր նրանք, ովքեր մաոական կուրսի դեմ էին արտահայտվում կամ կասկածում դրա ճշմարտացիությանը, անարգվում էին, հալածվում, ենթարկվում ծաղր ու ծանակի, ռեպրեսիաների։ Գործի էին դրվում բոլոր միջոցները բարձրացնելու հակասովետական և նացիոնալիստական շմուլքի պղտոր ալիքը։ Այդպիսի պայմաններում, իհարկե, կուսակցության ու երկրին հուզող հարցերի ազատ քննարկման մասին խոսք լինել չէր կարող։

IX համագումարի պատգամավորները չէին ընտրվում, այլ նշանակվում էին մաոականներից։ Կարելի է ասել, որ դա արդեն ո՛չ թե հեղափոխական փառավոր տրադիցիաներ ունեցող Չինաստանի կոմունիստական կուսակցության հերթական համագումարն էր, այլ նոր քաղաքական կազմակերպության առաջին համագումարը, որը կոչված էր բավարարելու Չինաստանի ռազմաբյուրոկրատական վերնախավի պահանջները։ Այդ բանն ըստ էության, թեև

մշուշապատ, խոստովանում են իրենք՝ մաոականները։ Հապա էլ ինչպե՞ս կարելի է բացատրել, օրինակ, նրանց պաշտոնական լոզունգը. «Կեցցե՜ Չինաստանի կոմունիստական կուսակցության համաչինական IX համագումարի մեծ հաղթանակը»։ Հաղթանակ՝ ո՞ւմ կամ ինչի՞ հանդեպ։ Այս ամենը վկայում են, որ խոսքը վերաբերում է կուսակցության առողջ ուժերի դեմ տարած «հաղթանակին», այն ուժերի, որոնք կուսակցությունը մարքսիստական-լենինյան են դարձնում, որոնք ժամանակին նրա համար արժանավայել տեղ ու ճանաչում են նվաճել կոմունիստական և բանվորական միջազգային շարժման մեջ։

Այսպիսով, ստեղծվեց կոմունիզմի գործի համար բացասական լուրջ հետևանքներով հղի նոր իրադրություն։ Մարքսիստ-լենինյանները դա չնկատել կամ լռության մատնել, բնական է, չեն կարող։ Նրանք իրենց պարտքն են համարում մերկացնել մաոականների գաղափարա-քաղաքական կոնցեպցիայի հակալենինյան, հակաժողովրդական էությունը։

ՉԿԿ IX համագումարում ընդունվեց կուսակցության նոր կանոնադրություն։ Նոր կանոնադրության ընդունման փաստը, ինքնին տարօրինակ չէ։ Յուրաքանչյուր հեղափոխական կուսակցություն իր գործունեության ընթացքում ղեկավարվում է երկու հիմնական փաստաթղթով՝ ծրագրով ու կանոնադրությամբ։ Ծրագիրը մի փաստաթուղթ է, որը բնորոշում է կուսակցության բնույթը, տալիս այն բանի պարզորոշ, գիտականորեն հիմնավորված շարադրանքը, ինչի նա ձգտում է, հանուն ինչի պայքարում։ Կանոնադրությունը՝ կուսակցության կառուցվածքի կազմակերպական սկզբունքներն ու նրա ներքին կյանքի նորմերը, կուսակցական-կազմակերպական գործունեության եղանակները սահմանող փաստաթուղթ է։ Ծրագրի ու կանոնադրության միջև ներքին սերտ կապ կա։ Եթե ծրագիրը կուսակցության գաղափարական միասնության հիմքն է, ապա կանոնադրությունը՝ կազմակերպական միասնության։ Առանց գաղափարական միասնության չկա կազմակերպական միասնություն, և, ընդհակառակը, գաղափարական միասնությունն անհնար է առանց կազմակերպական միասնության։

Մշակելով շատ թե քիչ երկարատև ժամանակաշրջանի ստրատեգիական գիծը, յուրաքանչյուր մարքսիստական-լենինյան կուսակցություն միաժամանակ ստուգում է, թե իր կառուցվածքում գոյություն ունեցող կազմակերպական ձևերը, ներքին կյանքի օրենքները, պրակտիկ գործունեության միջոցները որքանով են համապատասխանում նոր քաղաքական խնդիրներին, ապահովում դրանց լուծումը։ Եվ պատահական չէ, որ կոմունիստական ու բանվորական կուսակցությունները ժամանակ առ ժամանակ փոփոխում կամ լրացնում են գործող կանոնադրությունը, կամ նորն են ընդունում։

Կյանքն իր ուղղումներն է մտցնում կուսակցության կազմակերպական կառուցվածքի կոնկրետ ձևերի, դրանց գործունեության մեթոդների մեջ և դրանք պետք է արտացոլվեն ու հաստատվեն նրանց կանոնադրություններում։ Կազմակերպական շինարարության, իրենց գործողությունների, ինչպես նաև ողջ քաղաքական գործունեության ձևերն ու մեթոդներն ընտրելիս կուսակցությունը հենվում է հեղափոխական թեորիայի պատմական կոնկրետ պայմանների մանրազնին ու համակողմանի վերլուծության վրա։

Սովետական կոմունիստներն իրենց սեփական փորձով գիտեն, թե որքան անհրաժեշտ է, որ կուսակցության կանոնադրությունը, նրանում սևեռված դրույթները լիովին համապատասխանեն կյանքի պահանջներին, հնարավորություն ընձեռեն կուսակցությանը առավել հաջողությամբ լուծելու նրա առջև



ծառացած խնդիրները։ Դրա համար էլ եղբայրական մյուս կուսակցությունների այդ պրոբլեմի հետ առնչվող հոգսերը նրանց հարազատ են ու հասկանալի։

Ինչ վերաբերում է Չինաստանի կոմունիստական կուսակցությանը, ապա կարելի է հաստատապես ասել, որ, մի շարք պատճառների հետևանքով, այդ հարցը նրա համար հատկապես ակտուալ նշանակություն ունի։ Հիշատակենք միայն երկու հանգամանք։ Առաջին. ՉԿԿ, որի հիմնադրումից գրեթե կես դար է անցել, մինչև հիմա ծրագիր չունի. այդ հանգամանքը բարձրացնում է նրա կանոնադրության կշիռը՝ որպես կուսակցության միակ հիմնական փաստաթղթի։ Երկրորդ, Չինաստանի կոմկուսակցությունը, վաղուց գործող կանոնադրության խախտման հետևանքով, տասներեք տարի շարունակ կուսակցության համագումարներ չի հրավիրել։ Ուրեմն, այդ տեսանկյունից ևս անհրաժեշտ էր բարձրացնել կանոնադրության դերը, այնտեղ մուծել այնպիսի դրույթներ, որոնք արգելակեին ներկուսակցական դեմոկրատիայի խախտումը, կուսակցության բոլոր անդամների կողմից կուսակցական կյանքի սկզբունքների ու նորմերի անշեղ պահպանման երաշխիքը լինեին։

Այդպես պետք է մոտենալ գործին, եթե ելնենք կուսակցության վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքից։

Ինչպիսի՞ն է, իրականում, IX համագումարում ընդունված ՉԿԿ նոր կանոնադրությունը։ Դրա մանրազնին ծանոթությունը հիմք է տալիս հաստատելու, որ այնտեղ աղաղակող հակասություններ կան կուսակցության վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի հետ, նաև բոլոր կոմունիստների կողմից ընդունված հայացքների տեսանկյունից՝ կուսակցության շինարարության հարցերի հետ։ Նոր կանոնադրությունը, ՉԿԿ 1956 թ. համագումարի հաստատած կանոնադրության համեմատ, ամեն առումով ոչ թե առաջընթաց է, այլ ուղղակի նահանջ մարքս-լենինյան այն ճիշտ դիրքերից, որոնց վրա հենված էր այդ համագումարը։ Այն տառացիորեն ներխցկված է այնպիսի դրույթներով, որոնք կոչված են կուսակցությունը, այժմյան ղեկավարող վերնախավի ձեռքին, հեգեմոնիստական, մեծապետական, շովինիստական քաղաքականության իրականացման համար, հլու գործիք դարձնել։

## 2

«Կանոնադրության հիմնական դրույթները»— այսպես էր վերնագրված ՉԿԿ նախկին կանոնադրության առաջին բաժինը։ Այնտեղ տրված է կուսակցության սահմանումը, նրա շինարարության կարևորագույն սկզբունքները։ Համառոտակի խոսվում էր Չինաստանում սոցիալիստական վերափոխումների ուղիների վերաբերյալ, խնդիրներ էին դրվում ինդուստրացման, գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, ժողովրդի կենսամակարդակի բարձրացման բնագավառներում։ Ձևակերպվում էին ազգամիջյան հարաբերությունների հարցերը. ըստ որում, ընդգծվում էր, որ «անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել մեծախանական, շովինիզմի կանխմանն ու հաղթահարմանը»։ Ի վերջո, այդ բաժինը, ինչ-որ չափով, իրոք, լրացնում էր ծրագրի բացակայության հետևանքով առաջացած դատարկությունը։ Նոր կանոնադրության այդ բաժինը, անգամ իր ծավալով, անչափ պոչատ է, նախկինից երեք անգամ փոքր։ Կանոնադրական բաժնի այդպիսի զատղատումը, եթե նորից հիշատակենք, որ Չինաստանի կուսակցությունը ծրագիր չունի, ինքնըստինքյան իրավացի տարակուսանք է հարուցում։ Համենայն դեպս, գլխավորը դա չէ, այլ այն, որ նոր բաժինն իր էությամբ ոչըն-

չացնում է այն ամենը, ինչն իրավացիորեն համարվում է մարքսիստական
տիպի կուսակցության անհրաժեշտ հայտանիշ։

ՉԿԿ նոր կանոնադրությունը, փաստորեն, ամրապնդում է նրա այժմյան
ղեկավարության հեգեմոնիստական, պառակտչական, արտաքին քաղաքակա-
նության հակասովետական կուրսը։ Նախկին կանոնադրության մեջ ասված էր.
«Կուսակցությունը ջանքեր է գործադրում Սովետական Միության կողմից գըլ-
խավորող խաղաղության, դեմոկրատիայի և սոցիալիզմի լագերի երկրների
միջև բարեկամության զարգացման ու հաստատման համար...»։ Իսկ նոր կա-
նոնադրության մեջ ասված է. ՉԿԿ «սերտորեն համախմբվում է բոլոր, իրոք,
մարքսիստական-լենինյան կուսակցությունների հետ» և «նրանց հետ պայքա-
րում ջախջախելու իմպերիալիզմը, որի գլուխ է կանգնած ԱՄՆ, ժամանակակից
ռևիզիոնիզմը», ընդ որում, այդ ռևիզիոնիզմի կենտրոնը չին լիդերները «սո-
վետական ռևիզիոնիստներին» են համարում։ Քաջ հայտնի է, թե ում նկատի
ունեն մաոականները «իսկական մարքսիստական-լենինյան կուսակցություն-
ներ» ասելով։ Այդ տարբեր երկրներում, նրանց իսկ կազմակերպած, նրանց
թելադրանքով գործող, հերձվածողների և փախստականների մի քանի պա-
ռակտիչ և քայքայիչ խմբեր են։ Չնայած սակավաթվությանն ու խայտաբղե-
տությանը, այդ խմբերը քիչ չեն վնասում միջազգային կոմունիստական շարժ-
մանը և դրա համար արժանանում Պեկինի հիացական գովեստներին։ Պեկին-
յան լիդերները «ռևիզիոնիստներ» են համարում մարքսիզմ-լենինիզմի դիր-
քերում կանգնած և մաոականների թեորիապես սնանկ, քաղաքականապես
սխալ ու վնասակար դիրքորոշումը մերժող կոմունիստական և բանվորական
կուսակցությունների ճնշող մեծամասնությանը։

«Ռևիզիոնիզմի» և «ռենեգատության» ծանր մեղքեր են բարդում մաոա-
կանները Ֆրանսիայի, Հնդկաստանի, Ամերիկայի Միացյալ Նահանգների,
Իտալիայի, Լատինական Ամերիկայի և այլ երկրների կոմկուսակցությունների
վրա։ Եվ, իհարկե, նրանք, առաջին հերթին, ձգտում են ամեն գնով արատա-
վորել սոցիալիստական շատ երկրների կոմկուսակցություններին, հատկապես
ՍՄԿԿ ու նրա լենինյան Կենտրոնական կոմիտեին, որոնց համարում են «№ 1
թշնամի»։ Բանն այնտեղ է հասել, որ չին լիդերները Սովետական Միությա-
նը, մի երկիր, որն աշխարհում առաջինը ճամփա բացեց դեպի սոցիալիզմ,
իսկ այժմ առաջինն է հարթում կոմունիզմի ուղին, հավասարեցնում են իմ-
պերիալիզմի հետ։ Սանձազերծ, մերկապարանոց հակասովետիզմն է մաոա-
կանների արտաքին քաղաքականության կուրսի կարևոր, եթե ոչ ամենակա-
րևոր տարրը։

1969 թ. կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազ-
գային խորհրդակցության մասնակիցներից շատերը զայրույթով էին արտա-
հայտվում պեկինյան ղեկավարության այդ կուրսի առթիվ։ Նրանք ընդգծում
էին այն վիթխարի դերը, որ կատարում են մեր երկիրը, Սովետական Միու-
թյան կոմունիստական կուսակցությունը իմպերիալիզմի դեմ մղվող պատ-
մական պայքարում, հանուն խաղաղության գործի, ազգային-ազատագրու-
թյան, դեմոկրատիայի ու սոցիալիզմի հաղթանակի։

ՉԿԿ այժմյան ղեկավարները լենինյան մեր կուսակցության մեջ են տես-
նում հեգեմոնիստական, մեծապետական-շովինիստական իրենց ձգտումների
գլխավոր խոչընդոտը և դրա համար նրանք ջանում էին, որ իրենց հակասո-
վետական կուրսը կանոնադրության մեջ նշվի իբրև կուսակցության պաշտո-
նական քաղաքականություն։ ՉԿԿ ղեկավարությունն առաջ էլ, իհարկե, չէր



քաշվում հակասովետական ոտնձգություններից, բայց այժմ նա իր գործողու-
թյուններում առավել ևս ազատ է։ Կարելի է ամեն թշնամական արարք թույլ
տալ ընդդեմ ՍՄԿԿ և կոմունիստական ու բանվորական մյուս կուսակցություն-
ների— կանոնադրությամբ ամեն բան թույլատրված է։

ՉԿԿ նոր կանոնադրությունը վերանայում է կուսակցության գաղափա-
րական-թեորիական հիմունքները, մարքսիզմ-լենինիզմը փոխարինում մաո-
իզմով։ ՉԿԿ նախկին կանոնադրության մեջ ասված էր. «Չինաստանի կոմու-
նիստական կուսակցությունն իր գործունեության ընթացքում ղեկավարվում է
մարքսիզմ-լենինիզմով։ Միայն մարքսիզմ-լենինիզմն է ճիշտ բացատրում
հասարակության զարգացման օրինաչափությունները, ճիշտ նշում սոցիալիզ-
մի և կոմունիզմի կառուցման ուղիները»։ Նոր կանոնադրության մեջ գրված է.
«Չինաստանի կոմունիստական կուսակցությունը ղեկավարվում է մարքսիզմ-
լենինիզմի-մաոցզեդունյան գաղափարներով՝ որպես նրա գաղափարները
սահմանող թեորիական հիմք։ Մաոցզեդունյան գաղափարները այն դարա-
շրջանի մարքսիզմ-լենինիզմն են, երբ իմպերիալիզմը համընդհանուր փլուզում
է ապրում, իսկ սոցիալիզմը՝ հաղթանակում ողջ աշխարհում»։ Թեև այս ձևա-
կերպմամբ է օգտագործվում «մարքսիզմ-լենինիզմ» արտահայտությունը,
բայց դա ոչ այլ ինչ է, եթե ոչ ներքողարկում։ Դա անհրաժեշտ է բացառապես
այն բանի համար, որպեսզի մոլորեցվեն միամիտները, մեղմացվի անցումը
մեկից մյուսին— մարքսիզմ-լենինիզմից՝ մաոիզմին։

Կասկածից վեր է, որ խոսքը հենց այդպիսի անցմանն է վերաբերում։
Զուր չէ, որ «մաոցզեդունյան գաղափարների» վերաբերյալ դրույթները կանո-
նադրության մեջ մտցնելը չինական պրոպագանդան գնահատում է իբրև
«կուլտուրական հեղափոխության մեծ հաղթանակ»։ Ուշադրությունը շեղելու
նպատակով, հիշատակելով մարքսիզմ-լենինիզմը, նոր կանոնադրության հե-
ղինակներն այն մեկնելիս՝ քարը քարին չթողին։ Կանոնադրությամբ հաստատ-
ված նրանց կարծիքով, Մաո Ցզե-դունը «ժառանգեց, պաշտպանեց և զար-
գացրեց մարքսիզմ-լենինիզմը, այն հասցրեց մի նոր փուլի»։ Այս և նման
դատողությունների իմաստը առավել պարզ է. մաոիզմը՝ ժամանակակից
մարքսիզմ-լենինիզմն է, որով և պետք է առաջնորդվել։ Մարքսը, Լենինը—
նրանք, իբր, անցյալում էին, իսկ այժմ ողջ աշխարհում կա միայն մի «առաջ-
նորդ»—Մաոն, նրան էլ պետք է հետևել, չծանրաբեռնելով ուղեղը այն բանով,
թե նա ուր է տանելու և ինչպես։

Հասկանալի է, մարքսիզմ-լենինիզմը ինչ-որ կարծրացած, քարացած
բան չէ։ Ինչպես ոչ մի տեսություն, այն կապված է կյանքի, բանվորական և
ազգային-ազատագրական շարժումների, հանուն սոցիալիզմի և կոմունիզմի
մղվող պայքարի հետ։ Մարքսիզմ-լենինիզմը գիտություն է և, որպես այդպի-
սին, այն պետք է հետևողականորեն զարգացնել, առաջ մղել։ Բայց մարք-
սիզմ-լենինիզմի ուսմունքի զարգացումը որևէ առնչություն չունի նրա հիմնա-
կան դրույթների ռևիզիայի, այդ ուսմունքի ազգային ինչ-որ տարբերակների
ստեղծման փորձերի հետ։ Նման փորձերը մարքսիզմ-լենինիզմից՝ հասարա-
կության զարգացման օրինաչափությունների, սոցիալիզմի և կոմունիզմի կա-
ռուցման վերաբերյալ միակ գիտությունից հրաժարվել է նշանակում։ Նրանք
սասանում են կոմունիստական և բանվորական միջազգային շարժման ին-
տերնացիոնալիստական միասնության հիմքերն իսկ, այն «քարշ տալիս»
«ազգային բնակարաններով մեկ»։

Այժմյան չին լիդերները հորինելով «չինականացված մարքսիզմը», դրա-
նով իսկ ցույց տվին, որ «սովորական» մարքսիզմը, մարքսիզմն իր բուն և
ընդհանուր առումով նրանց չի բավարարում: Այժմ նրանք ավելի հեռու են
գնում, հայտարարելով, թե Մաո Ցզե-դունի գաղափարները մարքսիստական
մտքի գագաթն են, «մեր դարաշրջանի մարքսիզմ-լենինիզմը»: Սակայն ձևա-
կերպումների և ոչ մի հնարանք չի կարող սքողել այն ակնհայտ փաստը, որ
«Մաո Ցզե-դունի գաղափարների» և մարքսիզմ-լենինիզմի միջև աղաղակող
հակասություններ կան:

ՉԿԿ նոր կանոնադրությունը մարքսիզմ-լենինիզմին խորթ անհատի պաշ-
տամունքը պաշտոնապես արմատավորում է կուսակցության մեջ ու երկրում:
Անհրաժեշտ է հիշատակել, որ Չինաստանի կոմկուսակցության VIII համագու-
մարում կանոնադրության փոփոխության վերաբերյալ զեկուցման մեջ մատ-
նանշվել է, որ ՉԿԿ «մերժում է իրեն խորթ անհատի աստվածացումը»:
Նախկին կանոնադրության մեջ ասվում էր, որ կուսակցությունը չի հան-
դուրժում «այնպիսի գործողություններ, որոնք անձը վեր են դասում կուսակ-
ցության կոլեկտիվից», ընդգծվում էր, որ կուսակցությունը «պետք է առանձ-
նահատուկ ուշադրություն նվիրի համեստությանն ու շրջահայեցողությանը,
զգուշանա մեծամտությունից»: Այժմ այդ տողերն անհետացել են: Դրանց
փոխարեն գրված է, որ Չինաստանի կոմունիստական կուսակցության առաջ-
նորդը Մաո Ցզե-դունն է: Այսինքն՝ թագադրության նման մի բան է տեղի
ունեցել. Մաոյին պաշտոնապես կուսակցության գահին են բարձրացրել: Կա-
նոնադրության մեջ հիշատակված է ո՛չ միայն «միապետը», այլև նրա ժա-
ռանգորդը: «Ընկեր Լին Բյաոն,— ասված է այնտեղ,— միշտ բարձր է պահում
մաոցզեդունյան գաղափարների մեծ կարմիր դրոշը, առավել նվիրվածությամբ
ու առավել տոկունությամբ է անցկացնում և պաշտպանում ընկեր Մաո Ցզե-
դունի պրոլետարական հեղափոխական գիծը: Ընկեր Լին Բյաոն ընկեր Մաո
Ցզե-դունի մերձավոր զինակիցն է և նրա գործի շարունակողը»: Այսպիսով,
նախապես հայտարարված է, թե ով է «ժառանգելու» կուսակցությունը, ում
«հովանավորությանն է» անցնելու այն:

Բոլոր այս աննախադեպ դրույթների և պատմության մեջ անհատի, կու-
սակցության, դասակարգերի ու մասսաների դերի գիտական, մատերիալիս-
տական հայացքի միջև անհաշտելի հակասություններ կան: Հայտնի է, որ
մարքսիզմ-լենինիզմը բարձր է գնահատում պրոլետարական կուսակցություն-
ների, նրանց առաջնորդների ու ղեկավարների դերը հասարակության հեղա-
փոխական վերափոխման համար մղվող պայքարում: Առանց կուսակցության,
առանց նրա փորձված ու հեղինակավոր ղեկավարների բանվոր դասակարգը չի
կարող հաջողությամբ պայքարել հանուն կոմունիստական իդեալների հաղթա-
նակի: Արժանվույնը հատուցելով ղեկավարներին, առաջնորդներին, որոնք ճիշտ
են հասկանում ու արտահայտում բանվոր դասակարգի, բոլոր աշխատավորների
արմատական շահերը, մարքսիզմ-լենինիզմը ելնում է պատմության մեջ ժո-
ղովրդական մասսաների վճռական դերի ճանաչումից: Դա մարքսիզմ-լենինիզ-
մի փիլիսոփայության, կոմունիստների աշխարհայացքի հիմնական սկզբունք-
ներից մեկն է:

Չին լիդերներն անցյալում ևս բազմիցս իրենց հավատարմությունն են
արտահայտել հասարակության զարգացման գործում ժողովրդական մասսա-
ների վճռական դերի վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին: Նրանք
ժամանակին մեծ շուքով հռչակեցին, այսպես կոչված՝ «մասսաների գիծը»:



Սակայն շատ չանցած, վերջինիս մեկընդմիշտ դուրս մղեց մի այլ անզուսպ,
ձանձրացնող, իր ձևերով արատավոր գիծ՝ Մաո Ցզե-դունի, որին ամենքը պետք
է խոնարհ ու երկյուղածությամբ երկրպագեն, անձը փառաբանող գիծը: ՉԿԿ
ղեկավարների անհամեստությունն ու ինքնառեկլամը անցել է ամեն սահման:
Մաո Ցզե-դունին անգամ արևի հետ համեմատելը նրա որոշ տրուբադուրներին
թերի ու «սխալ է» թվում. չէ՛ որ արևը միայն ցերեկն է լույս տալիս, իսկ Մաո
Ցզե-դունը «միշտ է լուսատու»: Յուրաքանչյուր ոք, ով համարձակվում է թեկուզ
չնչին չափով կասկածի տակ առնել Մաոյի ամենազորությունն ու անսխալա-
կանությունը կամ սկսում գովաբանել նրան առանց պատշաճ ջանքերի, նզով-
վում է, համարվում «սև ռևզիոնիստ» ու դաժանաբար հետապնդվում: Ինչ վե-
րաբերում է մասսաներին, ապա Մաո Ցզե-դունը նրանց մասին այսպես է
արտահայտվել. չին ժողովուրդը «թղթի մաքուր թերթ է, որի վրա կարելի է
գրել ամենագեղեցիկ հիերոգլիֆներ ու սքանչելի կտավներ նկարել»: Եվ մաո-
ականները միջոցների մեջ խտրություն չդնելով, իրոք «գրում» ու «նկարում»
են: Դարավոր կուլտուրա ունեցող բազմամիլիոն ժողովրդին նրանք դիտում են
լոկ իբրև քաղաքական շահադիտական կոմբինացիաների օբյեկտ: Մի՞թե դա
այն ամենի ծանակումը չէ, ինչ նվիրական է կոմունիստների, նրանց գաղափա-
րախոսության համար:

3

ՉԿԿ նոր կանոնադրության մեջ կուսակցության անդամության կարգում
լուրջ փոփոխություններ են մտցվել: Այդ փոփոխությունների իմաստը մեծ
մասամբ հանգում է այն բանին, որպեսզի դրանց օգնությամբ մաոականների
համար ցանկալի ձևով նորոգվի կուսակցության կազմը: Առաջարկվում է
հարկադրել կուսակցությունից դուրս գալ նրանց, ովքեր իրենց հետ տարված
«դաստիարակչական աշխատանքից հետո չեն ուղղվում», «անընդմեջ կարգա-
վորել կուսակցական կազմակերպությունները, հեռացնել անպետքը և վերցնել
նորը»: Փաստերը ցույց են տալիս, որ «հեռացնել անպետքը» խիստ արտա-
հայտությունը վերաբերում է ո՛չ թե իրական դասակարգային թշնամիներին,
այլ ուրիշ կերպ մտածողներին, նրանց դեմ, ում կասկածում են մաոական-
ների դիրքորոշման նկատմամբ ոչ-լոյալ վերաբերմունք ունենալու մեջ: Մաո-
իստները բացառիկ վտանգավորների խմբին են դասում այնպիսի մարդկանց,
որոնք կապ ունեն «սովետական ռևիզիոնիզմի» հետ, այսինքն՝ նրանց, ովքեր
պահպանել են համակրանքը սոցիալիզմի առաջին երկրի և լենինյան կուսակ-
ցության նկատմամբ: Ապացուցելով, այսպես կոչված՝ կուսակցության «կար-
գավորման» անհրաժեշտությունը, Լին Բյաոն ՉԿԿ IX համագումարին տված իր
զեկուցման մեջ բացահայտ սպառնալից տոնով հայտարարեց. «Ով կհամար-
ձակվի արտահայտվել ընդդեմ նախագահ Մաո Ցզե-դունի, մաոցզեդունյան
գաղափարների,— երբ և ինչպիսի հանգամանքներում էլ դա տեղի ունենա,—
նրան կդատապարտի ողջ կուսակցությունը և կպատժի ողջ երկիրը»:

Ինչ վերաբերում է «վերցնել նորը» դրույթին, ապա դրա իմաստը լու-
սաբանվում է կուսակցության ընդունելության պայմանների պարզեցմամբ,
նոր դրույթներով, որոնք հնարավորություն են ընձեռում մանրբուրժուական
տարրերին ազատ կերպով մուտք գործելու նրա շարքերը: Նախկին կանոնա-
դրության մեջ մատնանշվում էր, որ ՉԿԿ անդամ կարող է դառնալ միայն
ուրիշի աշխատանքը չշահագործող անձը: Այդ պահանջն այժմ անհետացել է,
թեև Չինաստանի պայմաններում, մաոականների իսկ խոստովանությամբ, այն
մինչև հիմա էլ իր նշանակությունը չի կորցրել: Այժմյան կանոնադրության

մեջ ասված է, որ ՉԿԿ անդամ կարող է լինել «չին բանվորը, չքավոր, սակավ-
ունևոր, միջակ գյուղացին, հեղափոխական զինծառայողը կամ ուրիշ հեղա-
փոխական տարր»։ Եթե նկատի ունենանք, որ մաոականները իսկական հեղա-
փոխական տարրեր են համարում խունվեյբիններին և ցզաոֆաններին, բոլոր
նրանց, ովքեր անառարկելիորեն ընդունում են իրենց պարտադրած շովինիս-
տական, պառակտչական, հակասովետական կուրսը, ապա դժվար չէ կռա-
հել, թե հանուն ինչի կանոնադրության մեջ երևան եկավ նման ձևակերպումը։
Այն հնարավորություն է ընձեռում կուսակցության դռները լայն բանալ հենց
այդպիսի տարրերի համար, ներգրավել այնտեղ այնպիսի ուժեր, որոնցում
ՉԿԿ այժմյան ղեկավարությունը իր հենարանն է տեսնում։

ՉԿԿ սոցիալական կազմի տվյալները վաղուց ի վեր չեն հրապարակվում,
ինչպես, ասենք, երկրի վիճակը բնորոշող ուրիշ տվյալներ ևս։ Դրանք նույնիսկ
չեն զետեղվել ՉԿԿ IX համագումարի նյութերում։ Հայտնի է, որ 1957 թ. ՉԿԿ
հաշվվում էր մոտ 13 միլիոն կուսանդամ, որոնցից բանվորները 14 տոկոսից
պակաս էին։ Հիմքեր կան ենթադրելու, որ բանվորական կազմակերպությու-
ների ջախջախման, խունվեյբինների և այլոց հաշվին կուսակցության մեջ
«նոր արյան» մասսայական ներարկման հետևանքով, այժմ այդ տոկոսն
ավելի է իջել։

Ինչպես հայտնի է, մարքսիզմ-լենինիզմի կազմակերպական սկզբունք-
ները պահանջում են, որպեսզի կուսակցությունը կառուցվի դեմոկրատական
հիմունքներով, որպեսզի նրանում ապահովվի կոմունիստների նախաձեռնու-
թյան և ակտիվության անշեղ զարգացումը։ Կուսակցության քաղաքական և
պրակտիկ գործունեության բոլոր հարցերը մշակելիս վճռական ձայնը պետք
է պատկանի կուսակցության անդամներին։ Լենինն ընդգծում էր, որ միայն նա
է արժանի կոմունիստի բարձր կոչմանը, ով ինքնուրույն քննում է իր կուսակ-
ցության ճակատագիրը և անձնական պատասխանատվություն կրում դրա
համար։

ՉԿԿ ևս դա ժամանակին համարում էր կուսակցության մարտունակու-
թյան անհրաժեշտ պայման։ Նախկինում գործող կանոնադրության մեջ, օրի-
նակ, նշվում էր, որ անհրաժեշտ է «ձեռնարկել արդյունավետ միջոցներ ներ-
կուսակցական դեմոկրատիայի զարգացման, կուսակցության բոլոր անդամ-
ների ակտիվության և ստեղծագործական նախաձեռնության խրախուսման
համար»։ Նոր կանոնադրության մեջ այդ մասին արդեն ոչինչ չկա, բոլոր շեշ-
տերը տեղափոխված են։ Այդ փոփոխությունների բուն իմաստը, ըստ էու-
թյան, ներկուսակցական դեմոկրատիայի վերացումն է, կուսակցության մեջ
զորանոցային կարգեր մտցնելը, կոմունիստներին՝ ղեկավարող վերնախավի
հրահանգներն անառարկելիորեն, մեխանիկորեն կատարողներ դարձնելը։
Այդ փոփոխությունների արդարացման համար վկայություններ են բերում,
թե «Չինաստանին այժմ սպառնում է ռևիզիոնիզմից և իմպերիալիզմից բխող
ներքին խարխլման և ագրեսիայի վտանգը»։

Կուսակցության բոլոր անդամներից «մաոցզեդունյան գաղափարներին»
բացարձակ, անպայման և անառարկելի հավատարմության պահանջը կուսակ-
ցության մեջ այնպիսի մթնոլորտ է ստեղծում, ուր տեղ չկա ներկուսակցական
դեմոկրատիայի, մտքերի ազատ փոխանակության համար։ Սակայն բանը
միայն դրանում չէ։ Թեև նոր կանոնադրությունը, ինչպես և նախկինը, ՉԿԿ
համագումարների, տեղերում կուսակցական համագումարների ու ժողովների
անցկացման պարբերականություն է նախատեսում, այնտեղ այսպիսի լրա-



ցում է մտցված. «Առանձնահատուկ դեպքերում դրանք (համագումարները,
ժողովները— հեղ.) կարելի է գումարել ժամկետից շուտ կամ հետաձգել»։ Թե
ով և ինչ հանգամանքներում է իրավասու այդ անել՝ ոչ մի խոսք։ Այսպիսով,
քմահաճության, կուսակցական կյանքի կարևորագույն նորմերից մեկի «օրի-
նական» ոտնահարման լայն հնարավորություն է ստեղծվում։ Անշուշտ, ՉԿԿ
ղեկավարությունը, առանց այդ վերապահումների էլ հաշվի չէր առնի համա-
գումարների և ժողովների գումարման կանոնադրական ժամկետները, բայց
նման գործողություններն այժմ կարելի է արդարացնել, վկայակոչելով կանո-
նադրությունը։

Նախկին կանոնադրությունը կուսակցական ղեկավար օրգանների ձևա-
վորման դեմոկրատական կարգ էր նախատեսել։ Այնտեղ ասվում էր. «Ընտ-
րությունները անց են կացվում գաղտնի քվեարկությամբ, ընդ որում, անհրա-
ժեշտ է ընտրողների քննադատման, չընտրելու և ցանկացած թեկնածուով
փոխարինման իրավունքը գործով ապահովել»։ Այժմյան կանոնադրության մեջ
այդ սահմանումը փոխարինված է անորոշ, միտումնավոր կերպով ճապաղ-
ված ձևակերպմամբ. ըստ դրա, «կուսակցական ղեկավար օրգանների բոլոր
ատյաններն ընտրվում են դեմոկրատական կոնսուլտացիաների հիման
վրա»։ Պարզ է, որ այդ ձևակերպումը կարելի է բացատրել այսպես, կամ այն-
պես, դրան վերագրել ցանկացած իմաստ, ինչի, ըստ էության, ձգտում էին
մաոականները։

Նոր դրույթ է մտցված նաև այս մասին. «Կուսակցության համագումար-
ների հրավիրումը և կուսակցական կոմիտեների կազմը տեղերում ու բանա-
կում պետք է հաստատեն կուսակցական վերադաս կազմակերպությունները»։
Դա հնարավորություն է տալիս մաոականներին, սեփական հայեցողությամբ,
մեքենայություններ թույլ տալ կուսակցական ղեկավար օրգանների կազմում,
ղեկավարությունում առաջադրել իրենց նվիրված անձանց։ Բնորոշ է, որ կա-
նոնադրությունից իսպառ վերացել են կուսակցական վերահսկողության կենտ-
րոնական և տեղական հանձնաժողովների վերաբերյալ դրույթները։ Այժմ կու-
սակցության վերահսկողության օրգաններ չեն նախատեսվում։

Մաո Ցզե-դունի և նրա շրջապատի բացառիկ դիրքն ամրապնդելու համար
Չինաստանի կոմկուսակցությունն այնպիսի կետեր է ընդունել, որոնք, փաս-
տորեն, Կենտկոմի նախագահի, նրա տեղակալի և Կենտկոմի քաղբյուրոյի
մշտական կոմիտեի (ընդամենը 5 հոգու) իրավունքներն անսահմանափակ են
դարձնում։ Կանոնադրության մեջ, մասնավորապես, ասված է. «Նախագահի,
Նախագահի տեղակալի և Կենտկոմի Քաղբյուրոյի Մշտական Կոմիտեի ղեկա-
վարությամբ հիմնվում են մի քանի անհրաժեշտ կոմպակտ և օպերատիվ օր-
գաններ, որոնք միասնաբար վարում են կուսակցության, կառավարության և
բանակի ընթացիկ գործերը։ Այդպիսի կետը կոչված է, նախ՝ ետին թվով ար-
դարացնելու «կուլտուրական հեղափոխության» ընթացքում դեմոկրատական
ճանապարհով ընտրված կուսակցական կոմիտեների ցրումը և կանոնադրու-
թյամբ չնախատեսված օրգանների ստեղծումը, ինչպես «կուլտուրական հե-
ղափոխության» տխրահռչակ շտաբը և, ապա՝ արձակելու ղեկավարող վեր-
նախավի ձեռքերն ապագայի համար։ Այժմ, եթե մի բան պատահի, կարելի
կլինի «օրինական» հիմունքներով ստեղծել «կոմպակտ և օպերատիվ» օրգան-
ներ ու այլախոհների դեմ պայքարելիս՝ հենվել դրանց վրա։

Կառավարող կուսակցությունների՝ սոցիալիստական երկրների կոմունիս-
տական կուսակցությունների վիճակը պահանջում է, որպեսզի նրանց կանո-

նադրության մեջ հստակ սահմանվեն կուսակցության գործունեության ձևերն ու մեթոդները, պետական և հասարակական կազմակերպությունների ղեկավարման նրա սկզբունքները։ Այդպես է ՍՄԿԿ և եղբայրական մյուս կուսակցությունների կանոնադրություններում։ Համապատասխան դրույթներ կային նաև ՉԿԿ նախկին կանոնադրության մեջ։ Այնտեղ բավական հստակ սահմանված էին կուսակցական օրգանների ֆունկցիաները բոլոր աստիճաններում, պարզորոշ խոսվում էր ղեկավարության, կոլեկտիվիզմի ու կուսակցության փոխհարաբերության մասին պետական և հասարակական կազմակերպությունների հետ, կային հատուկ բաժիններ։ «Կուսակցական խմբերի ղեկավարությունն անկուսակցական կազմակերպություններում», «Կուսակցությունը և երիտասարդական կոմունիստական միությունը»։ Նոր կանոնադրությունից այդ դրույթներն ու բաժիններն իսպառ վերացել են։ Դրանց փոխարեն կանոնադրության մեջ մտցվել է միմիայն մի դրույթ. «Պետական օրգանները պրոլետարական դիկտատուրայի իշխանություններն են. ժողովրդա-ազատագրական բանակը, ինչպես նաև կոմունիստական երիտասարդական միությունը, բանվորների, չքավոր և սակավունևոր գյուղացիների, կարմիրգվարդիականների հեղափոխական-մասսայական կազմակերպությունները և հեղափոխական մասսայական այլ կազմակերպություններ պարտավոր են ենթարկվել կուսակցության ղեկավարությանը»։

Այդպիսի դիրքորոշումը դժվար է համատեղել կոմունիստական կուսակցության դերի և պետական ու հասարակական կազմակերպությունների հետ նրա փոխհարաբերության բնույթի վերաբերյալ մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի հետ։ Հրամայական տոնով ձևակերպված վերոհիշյալ դիրքորոշումը դարձյալ մի նպատակ է հետապնդում— ողջ իշխանությունը կենտրոնացնել Մաոյի գլխավորած կուսակցական վերնախավի ձեռքում։

Լենինիզմը սովորեցնում է, որ կոմունիստական կուսակցությունը, իրականացնելով բոլոր պետական և հասարակական կազմակերպությունների քաղաքական ղեկավարությունը, վարչարարություն չի անում, նրանց ֆունկցիաներն իր վրա չի վերցնում, չի նենգափոխում դրանք։ Հանդիսանալով սոցիալիստական հասարակության քաղաքական կազմակերպության միջուկը, միավորելով և ուղղություն տալով աշխատավորների մասսայական կազմակերպությունների գործունեությանը, կոմունիստական կուսակցությունը միաժամանակ ձգտում է, որպեսզի դրանք բոլորը, իրենց ֆունկցիաների և իրավունքների սահմաններում, գործեն վստահ ու համարձակ։ Դա նշանակում է, որ սոցիալիզմ և կոմունիզմ կառուցող հասարակության մեջ, լուծում պահանջող խիստ բարդ խնդիրների, աշխատավորների ակտիվության բարձրացման, ինչպես նաև կուսակցության դերի աճման հետ մեկտեղ, պետական և հասարակական կազմակերպությունների դերի բարձրացման, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման ու կատարելագործման պրոցես է սկսվել։ Այդպիսին է սոցիալիստական հասարակության զարգացման օրինաչափություններից մեկը, և այդ օրինաչափությունը, ինչպես և շատ ուրիշները, կոպիտ կերպով ոտնահարում են մաոականները։

ՍՄԿԿ ելնում է այն բանից, որ սովետական և չին ժողովրդի արմատական շահերը համընկնում են։ Մեր կուսակցությունն ամեն բան անում է, որպեսզի պահի ու պաշտպանի սովետական և չին ժողովուրդների եղբայրական բարեկամական զգացմունքները։ Դրա հետ մեկտեղ, մեր երկրի կոմունիստները, բոլոր մարքսիստ-լենինյաններն իրենց պարտքն են համարում վճռա-



կան պայքար մղել ընդդեմ պեկինյան ղեկավարների պառակտչական քաղա-
քականության, նրանց մեծապետական արտաքին քաղաքականության կուրսի,
հակալենինյան, հակաժողովրդական գաղափարա-քաղաքական դիրքորոշման։

IX համագումարում կանոնադրության մեջ մտցված հիմնական փոփո-
խությունների վերլուծությունը, և դրանց համեմատությունը VIII համագու-
մարում ընդունված կանոնադրության հետ, ցույց են տալիս, որ ՉԿԿ այժմյան
ղեկավարությունը, ձևականորեն պահպանելով կուսակցության նախկին կո-
չումը, գործն այնպես է վարում, որը տանում է սկզբունքորեն այլ քաղաքա-
կան կազմակերպության ստեղծման։ Դրա կառուցման ու գործունեության
հիմքում ընկած են անհատի պաշտամունքը, ծայրահեղ ցենտրալիզմը, ռազ-
մականացումը, հրաժարումը ներկուսակցական դեմոկրատիայից։ Իր նպա-
տակներով ու խնդիրներով դա նացիոնալիստական, շովինիստական կազմա-
կերպություն է, որն ունի խիստ արտահայտված հակասովետական ուղղու-
թյուն։

Ընդհանուր առմամբ, ՉԿԿ նոր կանոնադրությունը կուսակցության շի-
նարարության մարքսիստական-լենինյան սկզբունքների բացահայտ ռևիզիա
է, հրաժարում այդ սկզբունքներից։ Ապագան ցույց կտա, թե ՉԿԿ արդյոք իր
մեջ ուժ կգտնի, որպեսզի կանգնեցնի կուսակցության վերասերման պրոցեսը,
վերադարձնի նրան մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնա-
լիզմի դիրքերը, աշխարհի կոմունիստական և բանվորական կուսակցություն-
ների միասնական ճակատի շարքերը։ Իրադարձությունների նման շրջադար-
ձը կարտահայտեր չին ժողովրդի արմատական շահերը, միջազգային բանվոր
դասակարգի, բոլոր երկրների աշխատավորների շահերը։

«Коммунист», № 4, 1970 г.



# ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՓՈՒԼԻ ՍԿԶԲՆԱՎՈՐՈՒՄԸ

Վ. Գ. ՍԵՎՅԱՆ

Հայ իրականության մեջ մարքսիզմ-լենինիզմի գաղափարների տարածումը, հեղափոխական շարժումների վերելքը և բոլշևիկյան կուսակցական կազմակերպությունների ստեղծումն իրարանցում առաջացրին հայ բուրժուական, մանր-բուրժուական քաղաքական կուսակցությունների, բուրժուա-ազգայնական մտավորականության շրջանում։ Բուրժուազիայի գաղափարական պաշտպանները գրոհի ելան մարքս-լենինյան գաղափարախոսության դեմ։ Նրանք բոլոր միջոցներով ու եղանակներով խեղաթյուրում էին մարքսիզմի փիլիսոփայական հիմունքները, նպատակ ունենալով գաղափարապես զինաթափել պրոլետարիատին։

Մարքսիզմ-լենինիզմի դեմ հայ բուրժուական մտավորականության պայքարն ընթանում էր հիմնականում երկու ձևով։ Առաջինը՝ մարքսիզմի փիլիսոփայական հիմունքների բացահայտ քննադատությունն էր, երկրորդը՝ մարքսիզմի աղավաղումը՝ իրենց մարքսիստ ձևացնող ռևիզիոնիստների կողմից։ Այդ պայքարը հատկապես սուր բնույթ ստացավ 1905—1907 թվականների ռուսական հեղափոխության պարտությունից հետո։ Այդ տարիներին քաղաքական-հասարակական ռեակցիան մոլեգնում էր նաև գաղափարախոսության՝ փիլիսոփայության, գիտության, արվեստի բնագավառում։ Մտավորականության շրջաններում լայնորեն թափանցեցին անկումային տրամադրությունները, գաղափարական տարրնթացությունը։ Հակահեղափոխությունը զգեստավորվեց իդեալիզմով և պայքար ծավալեց մարքս-լենինյան փիլիսոփայության դեմ։

Պրոլետարիատի, նրա աշխարհայացքի դեմ մղած պայքարում հայ բուրժուազիան այլևս չէր կարող որպես զենք օգտագործել կղերա-ֆեոդալական և ազգային-պահպանողական, ազգային լիբերալիստական հոսանքների գաղափարախոսությունը։ Վերջինս խոր ճգնաժամ էր ապրում։ Ուստի, մարքսիզմի դեմ պայքարելու, նրա ազդական ուժը թուլացնելու համար հայ բուրժուազիան տենդագին որոնում էր մոդայիկ փիլիսոփայական հոսանքներ, ուղղություններ։ Այդ ժամանակ Եվրոպայում տարածված պոզիտիվիզմը, նեոկանտականությունը, պրագմատիզմը, մախիզմը դարձան հայ բուրժուական գաղափարախոսության հավատամքը։ Սուբյեկտիվ իդեալիստական այդ ուղղությունների ջատագովների և տարածողների դերում հանդես եկան դաշնակցության փիլիսոփայող գաղափարախոսները՝ Մ. Վարդանյանը (Հովհաննիսյան), Ե. Ֆրանգյանը, Ե. Կուլյանը, Ա. Հովհաննիսյանը, Վ. Խորենին (Վ. Տեր-Գրիգորյան) և այլք։ Փիլիսոփայական այդ հոսանքների տարածման գործում մեծ դեր խա-



ղաց բուրժուական մամուլը՝ «Վտակ», «Հորիզոն», «Մշակ», «Դրոշակ», «Գործ»
լրագրերն ու հանդեսները։
Հայ փիլիսոփայության պատմության մեջ մատերիալիզմի և իդեալիզմի
միջև դրսևորվեց նաև մի միջանկյալ հոսանք, որին հարեցին հնչակյան կուսակցության գաղափարախոսներ Արսեն Կիտուրը, Ռուբեն Խանազատը և ուրիշներ։ Հայ իրականության մեջ ձևավորվեց ևս մի ուղղություն՝ սպեցիֆիզմը,
որի գաղափարախոսները՝ Բ. Իշխանյանը, Դ. Անանունին և մյուսները գռեհվեցին մարքս-լենինյան փիլիսոփայության ռևիզիայով՝ մատերիալիզմը ննեգափոխեցին իդեալիզմով, դիալեկտիկան՝ մետաֆիզիկայով։
Բուրժուական և մանրբուրժուական տեսաբանները ճգնում էին փիլիսոփայորեն «հիմնավորել» իշխող դասակարգի շահերը։ Դաշնակցություն բուրժուանացիոնալիստական կուսակցության տեսական հիմքերն էին, մի կողմից՝
սուբյեկտիվիզմը, անարխիզմը, ավանտյուրիզմը, վոլյունտարիզմը, մյուս
կողմից՝ մանրբուրժուազիայի տարերայնությունը, տարրնթացությունը, բանվոր դասակարգի շրջանում բուրժուական գաղափարախոսության տարածումը։
Փիլիսոփայության և սոցիոլոգիայի բնագավառում ստեղծված իրադրությունը՝ նահանջը մատերիալիզմից իդեալիզմին, հայ մարքսիստներին պարտավորեցնում էր համառ ու անհաշտ պայքար մղել բուրժուական քաղաքական և փիլիսոփայական հոսանքների դեմ։ Առանց այդ պայքարի անհնար էր
մարքսիստական փիլիսոփայությունը պաշտպանել ամեն տեսակ հարձակումներից, ապահովել լենինյան գաղափարների հաղթանակը։
Հայ մարքսիստների առջև ծառացավ բարդ խնդիր՝ գիտության ու հասարակական նոր պրակտիկայի փորձի ընդհանրացման հիման վրա մերկացնել փիլիսոփայական ռեակցիայի տեսական հիմքերը, ամենից առաջ՝ բուրժուա-ազգայնական կուսակցության տեսաբաններին, որոնք բացահայտ քննադատում էին մարքս-լենինյան փիլիսոփայությունը։ Այդ պայքարում Լենինի
մերձավոր զինակիցները պաշտպանեցին մարքսիզմ-լենինիզմի տեսական-
փիլիսոփայական սկզբունքների անաղարտությունը, հանդես եկան սուբյեկտիվ իդեալիզմի խառցված արտահայտության՝ մախիզմի, նրա ռուսական ու
հայկական երանգավորումների՝ էմպիրիոմոնիզմի, ֆենոմենալիզմի («ռեալիստական փիլիսոփայության»), ռևիզիոնիզմի և ռեֆորմիզմի քննադատությամբ։ 1908 թվականին Միխա Ցխակայային ուղղված իր մի քանի նամակներում Ստ. Շահումյանը լենինյան դիրքերից քննադատում է էմպիրիոմոնիզմի դրույթները։ «...Մենք հաստատ համոզված ենք Իլյիչի դիրքորոշման ճշտությանը... մեծ անվստահությամբ ենք վերաբերվում էմպիրիոմոնիզմին»,—
գրել է Ստ. Շահումյանը» (Երկեր, հ. 2, էջ 40)։
Ռեակցիայի ծանր տարիներին հայ հեղափոխականներն ընդհատակում
շարունակում էին իրենց գործունեությունը, անխնա պայքարում գաղափարական, բուրժուական անկումային տրամադրությունների դեմ։ «Հավատը
դեպի ապագան և սերը դեպի մեր գործն անսպառ է, եռանդ են ներշնչում
մեզ։ Մենք ծանրաբեռնված ենք ամեն տեսակ գործերով ու հոգսերով։ Ցավոք
սրտի, մեր պայմաններում ոչ մի հնարավորություն չկա լրջորեն փիլիսոփայությամբ զբաղվելու» (նույն տեղը, էջ 66—67)։ «Պատմությունը,— գրել է
Ս. Սպանդարյանը,— քշել և դրել է մեզ անհրապույր մի կացության մեջ,
բայց միթե այդ պատճառով մենք պիտի ծալենք մեր հզոր ձեռքերը դատարկ
կրծքերի տակ։ Ընդհակառակը, աշխատել և աշխատել ամեն տեսակի պայմաններում» (Նամակներ, փաստաթղթեր, էջ 212)։ Հայ մարքսիստներն ան-





դամ հոգևոր և քաղաքական ռեակցիայի այս խեղդիչ մթնոլորտում չթուլացող եռանդով պայքարում էին լենինյան գաղափարների հաղթանակի համար։

Շահումյանի վկայությամբ, ինքը և իր ընկերներն ուշադիր հետևում էին լույս տեսնող փիլիսոփայական գրականությանը, հասարակական կարծիք ստեղծում հրապարակված գրքերի մասին։ Շահումյանը նկատել է, որ «...էմպիրիոմոնիզմի երեք հատորները շարունակ իմ սեղանի վրա են և ըստ հնարավորին կարդում եմ դրանք։ Ես կարդացի նրա (Բոգդանովի— Վ. Ս.) «Հասարակության հոգեբանությունից»-ը։ Մինչև այժմ իմ կարծիքը ծայր աստիճան բացասական է» (Երկեր, հ. 2, էջ 67)։

Աքսորավայրից ուղարկած նամակներից մեկում Ս. Սպանդարյանը նշել է. «Վա՜յ էն ազգին, որի ճակատագիրը վճռում են ծակ փիլիսոփա Վարանդյանը և «ազգային», բայց առանց տաղանդի փաստաբան, տիպիկական ֆիլիստեր Սամսոն Հարությունյանը։ Մի՞թե ժամանակը չէ, մի՞թե մարդիկ չկան, որ այդ ոճրագործների վզին տան» (Ս. Սպանդարյան, Երկեր, հ. 2, էջ 338)։

Մարքս-լենինյան փիլիսոփայությունը իդեալիստական աղավաղումներից պաշտպանելու գործում աչքի ընկավ Սուրեն Հովսեփյանը։ Ուսումնասիրելով Լենինի Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ աշխատությունը, Հովսեփյանը հոդվածներ է գրում Բոգդանովի և այլ մախիստների դեմ, քննադատում նրանց փորձերը՝ նույնացնելու Մարքսի և Էնգելսի հայացքները Մախի և Ավենարիուսի հայացքների հետ։ «Մտքի երերումների և փիլիսոփայական հայացքների կատարյալ անորոշության մեր ժամանակում,— գրել է նա,— երբ Մախին շփոթում են Մարքսի հետ, Ավենարիուսին՝ Էնգելսի, գիտական պոզիտիվիզմը՝ մատերիալիզմի հետ,— մատերիալիստական գրականության կլասիկ երկերի, հետևաբար և ժամանակակից մատերիալիստական փիլիսոփայության պատմական նախադրյալների ուսումնասիրությունը չի կարող չլինել շատ և շատ օգտակար գործ» («Просвещение», 1913, № 11, стр. 102)։

* * *

Հասարակական կյանքը գիտության առջև դրեց բազմաթիվ կնճռոտ հարցեր՝ ո՞րն է պատմության առաջընթաց զարգացման գլխավոր շարժիչ ուժը, ստորինից դեպի բարձր զարգացման պատճառը, կա՞ն արդյոք այդ զարգացման մեջ օրինաչափություն, օբյեկտիվ ճշմարտություն, ներքին կապ, ինչի՞ է հանգում պատմության զարգացումը, որոնք են զարգացման աղբյուրները, բնույթը, ուղղությունը։ Նման և բազմաթիվ այլ հարցեր արժանացել էին ինչպես իդեալիստական, այնպես էլ մարքսիստական փիլիսոփայության ու սոցիոլոգիայի ուշադրությանը։ Հայ սոցիոլոգիական մտքի պատմության մեջ այս հարցերին տրվել են տրամագծորեն հակադիր պատասխաններ։

Այս և ուրիշ հարցերի կապակցությամբ հայ մարքսիստները, ամենից առաջ, սկզբունքային պայքար ծավալեցին բուրժուական սուբյեկտիվ սոցիոլոգիայի դեմ, որը հայ իրականության մեջ մարքս-լենինյան սոցիոլոգիայի տարածման գլխավոր արգելակն էր, նրա թշնամին։

Հայտնի է, որ սուբյեկտիվ սոցիոլոգները դեմ էին հասարակական կեցության և հասարակական գիտակցության մարքս-լենինյան ըմբռնմանը։ Ըստ նրանց, մարքս-լենինյան պատմական մատերիալիզմը փաստորեն «տնտեսական մատերիալիզմ» է. նրանք ժխտում էին հասարակական կեցության առաջնայնությունը և գիտակցության երկրորդայնությունը, վերջապես՝ գիտական



հիմքից զուրկ և չփաստարկված դատողությունների միջոցով պնդում էին հա-
սարակական կեցության և հասարակական գիտակցության նույնությունը։
Հայ մարքսիստների աշխատություններում այս դրույթները հանգամա-
նալի քննադատվեցին, ցույց տրվեցին մարքս-լենինյան ըմբռնումը։
Հակառակ սուբյեկտիվ իդեալիստական պնդումների, մարքս-լենինյան
փիլիսոփայական մատերիալիզմն ուսուցանում է, որ հասարակական կեցու-
թյունը և հասարակական գիտակցությունը նույնական չեն։ Տարօրինակ կլի-
ներ,— ասում է Լենինը,— եթե խոսվեր արտացոլվողի և արտացոլողի նույ-
նության մասին։ Եթե մենք ընդունենք արտացոլողի և արտացոլվողի նույնու-
թյունը, այն ժամանակ պետք է ժխտենք երևույթների օբյեկտիվ գոյությունը,
մարդկանց գոյությունը, որոնց գիտակցության մեջ արտացոլվում են այդ երե-
վույթները։ Եթե գիտակցությունն է արտացոլում իրերի օբյեկտիվ տրամաբա-
նությունը, ապա դա նշանակում է, որ կեցությունն օբյեկտիվ ռեալություն է։
Արտացոլված գիտակցության մեջ է սուբյեկտիվը, իսկ արտացոլվողը գիտակ-
ցությունից դուրս է, օբյեկտիվ։ Արտացոլվածը և արտացոլողը նույնական չեն։
Արտացոլվածը կարող է լինել արտացոլվողի մոտավորապես ճիշտ պատճենը։
Բուրժուական տեսաբանները քննադատում էին մարքսիզմն այն հար-
ցում, թե վերջինս իբր անտեսում է պատմության մեջ սուբյեկտիվ գործոնի,
վերնաշենքի դերը։ Փորձեր արվեցին մարքսիզմը նույնացնել գռեհիկ, տնտե-
սական մատերիալիզմի հետ։ Մերկացնելով այդ կեղծիքը, Ս. Սպանդարյանը
գրել է. «Սխալ է և միմիայն բուրժուական տգիտության ու տխմարության
հետևանք է այն կարծիքը, թե սոցիալ-դեմոկրատիան աշխարհ է եկել միմիայն
«ստամոքսի հարցը» վճռելու։ Հետազոտելով և քննելով մարդկության էվո-
լյուցիան, անալիզ անելով ներկա հասարակության կապիտալիստական կազ-
մը և ըմբռնելով դասակարգային կռվի իսկական իմաստը— մենք կտեսնենք,
որ սոցիալ-դեմոկրատիան ամենից շատ և ամենազորեղ կերպով շահագրգռ-
ված է կուլտուրական, սոցիալական հարցի լուծման մեջ» (Հոդվածներ, էջ 115)։
Սպանդարյանն իր երկերում ցույց է տալիս, որ հասարակական կեցությամբ
պայմանավորված գիտակցությունը միաժամանակ խոշոր ուժ է նույն այդ հա-
սարակության փոփոխման գործում։ Ժողովրդական լայն մասսաների կուլտու-
րականության բարձրացումը «առաջ կտանի երկրի թե՛ տնտեսական և թե՛
սոցիալական պրոգրեսը»։
Ի հակադրություն «տնտեսական մատերիալիզմի», որը ժխտում է գաղա-
փարական գործոնի, վերնաշենքի դերը հասարակական կյանքում, Ստ. Շա-
հումյանն ընդգծում է, որ «տնտեսական ստրուկտուրայի» փոփոխումն առանց
գաղափարների ազդեցության, տարերային պրոցես է, այն դառնում է գի-
տակցված պրոցես, երբ հասարակական գիտակցությունը ներգործում է հա-
սարակական կեցության վրա։
Քննադատելով էմպիրիոմոնիստ Բոգդանովին և էմպիրիոկրիտիկներին,
հասարակական կեցության և հասարակական գիտակցության նույնացման
սուբյեկտիվ իդեալիստական սկզբունքը, Շահումյանը գրել է. «Ով ծանոթ է
բուրժուական փիլիսոփայության և հասարակական գիտությունների մեջ այժմ
իշխող «էմպիրիոկրիտիցիզմ» կոչվող «նոր» ուղղության հետ, նրա համար
հասկանալի կլինի, որ այդ երևույթը մի բացառիկ և պատահական երևույթ չէ։
Նույնացնել իրականությունը «գիտակցության» հետ, «գաղափարի» հետ և
ապա ժխտել այդ իրականությունը հանուն վերացական «գաղափարի», հետո
միստիկական ու ֆանտաստիկական կերպարանքով ներկայացնել կենդանի

հասարակական պրոբլեմները և միամիտ ընթերցողների աչքերին թող փչել, շփոթություն առաջացնել անգիտակից մասսաների ուղեղներում,— ահա թե ինչ է տալիս հասարակական գիտությունների մեջ «կրիտիցիզմը», բուրժուական փիլիսոփայության այդ «վերջին խոսքը»» (Երկեր, հ. 2, էջ 229)։

Այնուհետև Շահումյանը շարունակում է. «կեցության ու գիտակցության նույնության» նրա (Բոգդանովի— Վ. Ս.) դրույթը, ըստ իս կործանում է Մարքսի ամբողջ սիստեմը» (Նույն տեղը)։

Հայ մարքսիստները բացահայտեցին բուրժուական սոցիոլոգիայի հակագիտական էությունը։ Սուբյեկտիվ սոցիոլոգները պնդում էին, որ պատմությունն առանձին ականավոր անհատների՝ թագավորների, զորավարների, քննադատորեն մտածող անձնավորությունների, մի խոսքով, պատմության «հերոսների» գործունեության արդյունքն է։ «Դաշնակցության պատմա-փիլիսոփայության աշխարհայացքի հիմքը,— գրել է Մ. Վարդանյանը,— մնում է անհատը»։ Այս թեզը դաշնակցության համար ճակատագրական նշանակություն ունեցավ այն իմաստով, որ նա հրաժարվեց մասսայական պայքարից ու ամբողջապես կանգնեց անհատական տեռորի դիրքերում։

Հայ բուրժուական սոցիոլոգիայի, մասնավորապես պատմագիտության սնանկությունը բացահայտելու գործում մեծ է հայ լենինյանների դերը։ Այս առումով ուշագրավ է Ստ. Շահումյանի «Վ. Փափազյանը պատմագետի դերում» աշխատությունը։ Շահումյանն այն գրել էր Բաքվի «Հայկական կուլտուրական միության» կողմից հրապարակված Վ. Փափազյանի, Մ. Առաքելյանի և Մ. Ղազարյանի՝ պատմության հարցերին նվիրված ուսումնասիրությունների առթիվ։

Ստ. Շահումյանը ցույց տվեց, որ այդ գործերում ներկայացված հայ ժողովրդի պատմության մեջ բացի տերտերականությունից, ռեակցիոն կղերականությունից, անցյալի իդեալականացումից, չկան «քիչ թե շատ լուրջ գիտելիքներ, տեղեկություններ հայոց պատմությունից»։ Այդ պատմագիտական բրոշյուրների մեջ,— շարունակում է Շահումյանը,— տխուր պատկեր է ներկայացնում Վ. Փափազյանն իր պատմական աշխարհայացքով և դրույթներով։ Այդ ուղղությանը պատկանող պատմաբանները, ղեկավար սկզբունք ունենալով սուբյեկտիվ սոցիոլոգիական մեթոդը, հայ ժողովրդի պատմությունը ներկայացնում էին որպես իշխանների երկպառակություն, դավաճանություն, անմիաբանություն, մի կողմում, իսկ մյուս կողմում՝ ստրուկ, «ոտքի տակ կոչող», «խեղճ ու կրակ», «անկազմ ու անկամք» ժողովուրդ— ահա այդ «պատմագետների» պատկերած հայոց պատմությունը։

Պատմության նման սուբյեկտիվ իդեալիստական մեկնությանը հայ մարքսիստները հակադրեցին մարքս-լենինյան պատմագիտության սկզբունքները։ Պատմության գիտական ուսումնասիրմանը,— նկատել է Շահումյանը ձեռնամուխ պետք է լինի մեր նոր մարքսիստական երիտասարդությունը... նա, զինված պատմության մատերիալիստական ըմբռնման նոր գիտական մեթոդներով՝ պետք է ուսումնասիրի եղած թե՛ հայկական և թե՛ օտար ազգի ուղղակի և կողմնակի պատմության աղբյուրները և լույս սփռի մեր պատմության անցյալի վրա։

Շարադրելով մարքս-լենինյան սոցիոլոգիայի հիմնարար սկզբունքները, Ստ. Շահումյանը եզրակացնում է, որ հասարակության զարգացման պատմությունը՝ դա մասսաների, արտադրողների պատմությունն է, արտադրության զարգացման, դարերի ընթացքում միմյանց հաջորդող արտադրության եղա-



նակների պատմությունը։ Նշանակում է, ընդգծում է Շահումյանը, հասարակության զարգացման իրական պատմության ընթացքը որոշում են ոչ թե այս կամ այն թագավորների, պետական գործիչների, իշխանների բարի կամ չար կամքը, այլ ժողովրդական մասսաների գործունեությունը, նյութական և հոգևոր բարիքներ ստեղծողները, որոնք արտադրապրոցեսի հիմնական ուժերն են։ Այդ նշանակում է, որ պատմությունը նյութական արտադրության, հասարակական կյանքում հանդես եկած դասակարգերի պայքարի պատմությունն է։ «Պատմությունը այն ժամանակ դադարում է լինել հեքիաթ, հասարակ պատմվածք և դառնում է իսկական պատմություն, երբ նրա մեջ հայտնի անցքերի, դեպքերի, պատմական անձնավորությունների գործունեությունը ենթարկվում է լուրջ քննական լուսաբանության, երբ ցույց է տրվում անցքերի ու մարդկային գործողությունների պատճառական կապը և օրինաչափությունը» (Ստ. Շահումյան, Երկեր, հ. 2, էջ 200)։

Հասարակական զարգացման օրինաչափությունների ուսումնասիրությունը հնարավորություն ընձեռեց գիտա-մատերիալիստական տեսանկյունից լուսաբանել հայ ժողովրդի պատմությունը։ Սպանդարյանն այս կապակցությամբ նշել է. «...կիրառելով հասարակական փաստերի ուսումնասիրության օբյեկտիվ մեթոդը, որ հավասարապես անհրաժեշտ է բոլոր պայմաններում, կարողանանք հաշվի առնել նաև յուրաքանչյուր տվյալ ժողովրդի զարգացման պատմական առանձնահատկությունները» (Հոդվածներ, նամակներ, փաստաթղթեր, էջ 163)։

Բուրժուական սուբյեկտիվ սոցիոլոգիայի դեմ մղվող պայքարում Ստ. Շահումյանը, Ս. Սպանդարյանը, Բ. Կնունյանցը, Ա. Մյասնիկյանը, Ս. Կասյանը և ուրիշներ հայ իրականության մեջ հիմնադրեցին մարքս-լենինյան պատմագիտությունը։

Մեր իրականության մեջ առաջին անգամ հայ մարքսիստները բացահայտեցին և գիտականորեն հիմնավորեցին հասարակության զարգացման օրինաչափությունների օբյեկտիվ բնույթը։ Միայն այդ պայմանով էր հնարավոր հասարակության զարգացման ճիշտ իմացությունն ու մեկնաբանումը որպես օրինաչափ պրոցես։ Նրանք բազմակողմանի քննադատեցին սոցիալ-ֆատալիզմը՝ տարերայնության, պասիվության փիլիսոփայությունը և վոլյունտարիզմը՝ օբյեկտիվ օրինաչափությունների բացասումը, սուբյեկտիվիզմի, ավանտյուրիզմի փիլիսոփայությունը։

Հայ մարքսիստները միաժամանակ ընդգծել են, որ անհրաժեշտության, օրինաչափության գաղափարը չի ժխտում ազատությունը, մասսաների, անհատի դերը կամ հեղափոխական ուսմունքների նշանակությունը կյանքի վերափոխման գործում։ Ճանաչելով օբյեկտիվ օրենքները, մարդիկ կարող են տնօրինել դրանք, կարգավորել վերջիններիս գործողությունները, ճակատագրական «երկաթյա օրենքներից» դրանք դարձնել մարդկային նպատակներին հնազանդ ծառայող ուժեր։ Պատճառական անհրաժեշտության ընդունումը չի սահմանափակում մարդու ազատ կամքը և ակտիվ գործունեության դրսևորումը։

Հայ լենինյանները քաջ գիտակցում էին, որ դասակարգային հակասություններով բզկտվող հասարակության մեջ չի կարող լինել անկուսակցական փիլիսոփայություն։ Իդեալիզմի և սուբյեկտիվ սոցիոլոգիայի դեմ մղած պայքարում նրանք ելնում էին լենինյան այն դրույթից, որ էմպիրիոկրիտիցիզմի իմացաբանական սխոլաստիկայի ետևում, վերջին հաշվով, չի կարելի չտես-

նել թշնամական դասակարգի շահերն ու հետաքրքրությունները։ Հետադիմական, իդեալիստական բուրժուա-նացիոնալիստական հոսանքների և ուղղությունների դեմ իրենց պայքարում հայ մարքսիստները պաշտպանեցին գաղափարախոսության կուսակցականության վերաբերյալ լենինյան սկզբունքները։

Կանգնելով փիլիսոփայության կուսակցականության լենինյան դիրքերում, Ստ. Շահումյանը գրել է. «Առավել ուժեղ և կյանքում իշխող դասակարգը նյութական կյանքի արտադրական պրոցեսում վերածում է իր կոլեկտիվ կամքը, որը, ինչպես մենք գիտենք, թելադրվում է նրա տնտեսական դրությամբ ու տնտեսական շահերով և հակադիր է այլ դասակարգերի կոլեկտիվ կամքին,— նա իր այդ դասակարգային կամքը վերածում է հասարակական կամքի, մարմնացնում է հասարակական ու պետական հիմնարկությունների մեջ, որոնք նրա ձեռքին վերածվում են հետագա դասակարգային պայքարի գործիքների» (Երկեր, հ. 1, էջ 99)։

Փիլիսոփայության կուսակցականության լենինյան սկզբունքների կապակցությամբ Ս. Սպանդարյանը «Մեր խոսք» թերթում գրում էր. «Իզուր են մեր գիտնականները, գրողները, նկարիչները մեծ-մեծ խոսում իրենց «ազատության» մասին, իզուր են իրենց բարձր դասում «շուկայից»։ 1911 թվականին «Կուսակցականություն և անկուսակցականություն» հոդվածում նա նշում էր, որ եթե հասարակության հակադիր խավերի հակադիր շահերը անխուսափելիորեն առաջացնում են համոզմունքներ և հայացքներ, «ապա պարզ է, որ այդ հայացքները և այդ համոզմունքները ոմանց մոտ համակրանք կգտնեն, ոմանց մոտ էլ՝ դիմադրություն։

Համախոհները բնականաբար կհամախմբվեն տվյալ հասարակական գործչի շուրջը՝ նրա պլատֆորմը կենսագործելու համար, իսկ հակառակորդները՝ այդ պլատֆորմի իրականացման դեմ պայքարելու և իրենց պլատֆորմն իրագործելու համար (Երկեր, հ. 2, էջ 167)։ Այնուհետև Ս. Սպանդարյանը գրում է. «Չէ՞ որ յուրաքանչյուր հասարակական գործիչ պետք է ունենա գործունեության այս կամ այն ծրագիրը, այս կամ այն «հավատո հանգանակը», հասարակական գործերի և սրանց ուղղության տենդենցի այս կամ այն հասկացողությունը» (նույն տեղը, էջ 166)։ Ուստի եզրակացնում է նա, դասակարգային հասարակության պայմաններում կուսակցությունների պայքարից, քաղաքական բախումներից դուրս կանգնած քաղաքական գործիչներ չկան։ «Հասարակական գործիչն առանց սոցիալ-քաղաքական որոշ դեմքի,— դա, գերմանացիների արտահայտությամբ, մի դատարկ աղիք է, որը կարելի է լցնել ինչով ուզես, դա մի հողմացույց է, որ դառնում է քամու ուղղությամբ, դա մի ոչնչություն է, որի վրա կարող են ազդել բոլորն ու ամեն ինչ, վերջապես, դա ամենազզվելի օպորտունիստն է, որի ամբողջ քաղաքականությունը հանգում է մոմենտին հարմարվելուն և այն էլ՝ նվազագույն դիմադրության գծով» (նույն տեղը, էջ 166—167)։

Իդեալիզմը, մետաֆիզիկան և էկլեկտիկան միջոցներ են, որոնցով բուրժուական տեսաբաններն աշխատում են իրենց նեղ դասակարգային սկզբունքներն ու գծուծ շահերը ներկայացնել որպես համամարդկային, ուստի և առաջադիմական կատեգորիաներ։ Բոգդան Կնունյանցը ցույց է տալիս, որ իրականության այդ կարգի կեղծումը իդեալիստ մտածողներին, բուրժուական կուսակցություններին պետք է բանվորներին խաբելու համար։ Բուրժուական մտավորականները հիշյալ բոլոր հրաշալիքները հրամցնում են, գրել է նա, «համամարդկայինի» անվան տակ, «սակայն բավական է մի քիչ փորփրել այդ «համամարդկայնության» մեջ, և երևան կգա նրա աներկբայորեն դասակարգային մորթին»։

Հոդվածում նշվեցին հայ փիլիսոփայական և սոցիոլոգիական մտքի զարգացման լենինյան էտապի միայն մի քանի հարցեր։ Պարզ է, որ հայ մարքսիստները չսահմանափակվեցին նշված պրոբլեմներով։ Նրանց աշխատություններում, բոլշևիկյան մամուլում իրենց բազմակողմանի զարգացումը ստացան սոցիալիստական հեղափոխության, պրոլետարիատի դիկտատուրայի, սոցիալիստական պետության, դասակարգերի և դասակարգային պայքարի, ազգային հարցի, ինտերնացիոնալիզմի վերաբերյալ լենինյան տեսությունը։

Բնութագրելով հայ մարքսիստների, հատկապես Ստ. Շահումյանի և Ս. Սպանդարյանի դերը բուրժուական գաղափարախոսության դեմ մղված պայքարում և հայ իրականության մեջ մարքս-լենինյան աշխարհայացքի տարածման գործում՝ Արշավիր Մելիքյանը գրել է. «Ստեփան Շահումյանը և Սուրեն Սպանդարյանը մարմնացումն են այն մտավոր բեկման, որ տեղի ունեցավ մեր հասարակական կյանքի մեջ սրանից մոտ մեկ քառորդ դար առաջ։ Նրանց նշանակությունն ըմբռնելու և նրանց կատարած դերը հասկանալու համար անհրաժեշտ է մի հետադարձ հայացք ձգել մեր իրականության մեջ գոյություն ունեցած հասարակական ու քաղաքական հոսանքների վրա։ Վերջիններիս էության պարզաբանումը մեզ ցույց կտա, թե որքան կարևոր է եղել Սպանդարյանի և Շահումյանի կատարածը մեր հասարակական կյանքի մեջ, թե որքան մեծ է նրանց խաղացած դերի տեսակարար կշիռը մեր մտավոր ու քաղաքական գործունեության ասպարեզում»։ Եվ ապա՝ «Ստ. Շահումյանը և Ս. Սպանդարյանը և նրանց համախոհներն իրենց մատերիալիստական աշխարհայացքով, դավանած հեղափոխական մարքսիզմով, պրոլետարական դիկտատուրայի գաղափարով, անշեղ ու անաղարտ միջազգայնությամբ՝ հիրավի մի նոր դարաշրջան են կազմում մեր կյանքի զարգացման ընթացքում, հիրավի մի նոր դարագլուխ են բաց անում մեր իրականության մեջ։ Նրանց պատրաստակամությունը՝ կռվել հայրենի և օտար բուրժուազիայի դեմ, նրանց ռազմունակությունը՝ մանրբուրժուական ազգայնականության և կեղծ ու պատիր հեղափոխականության դեմ մղած պայքարի մեջ, նրանց ցանկությունը՝ վերջ տալ դարերի ընթացքում կուտակված ազգային նախապաշարմունքին և քարացած սնոտիապաշտություններին՝ կազմում է մի այնպիսի բացառիկ երևույթ, մի այնպիսի խոշոր պատմական անցք, որ նրանց հրապարակ գալը մեր կյանքի հասարակական ասպարեզում՝ արդարացիորեն կարելի է սեպել իբրև դարձ մեր մտավոր կյանքի զարգացման մեջ» (Ա. Մելիքյան, Բեկումն հայ հասարակական կյանքի ու մտքի զարգացման մեջ, «Նոր աշխարհ», 1922, № 2, էջ 46—49)։

Անցյալ դարի վերջին և այս դարեսկզբին հայ իրականության մեջ մարքսիզմը տարածվել և զարգացել է գաղափարական անհաշտ պայքարում։ Այդ ժամանակաշրջանի հայ հասարակական-քաղաքական և փիլիսոփայական մտքի պատմությունը բուրժուական և մանրբուրժուական գաղափարախոսության դեմ մղվող պայքարում մարքսիստական աշխարհայացքի հաղթանակի պատմությունն է, լենինյան էտապի հաստատումը։

# ՊԼԱՆԱՎՈՐՈՒՄԸ ԵՎ ՄԱԹԵՄԱՏԻԿԱԿԱՆ ՄԵԹՈԴՆԵՐԸ

Վ. Դ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը, հենվելով մեր երկրում սոցիալիստական շինարարության փորձի վրա, անընդհատ կատարելագործում և բարելավում են ժողովրդական տնտեսության կառավարումն ու պլանավորումը։

ՍՄԿԿ ծրագրում նշված է. «Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը պահանջում է մշտապես կատարելագործել տնտեսական ղեկավարումը և պլանավորումը։ Պլանավորման և տնտեսության ղեկավարման բոլոր օղակներում գլխավոր ուշադրությունը պետք է կենտրոնացվի նյութական, աշխատանքային ու ֆինանսական ռեսուրսների, բնական հարստությունների առավել ռացիոնալ ու արդյունավետ օգտագործման և ավելորդ ծախսերի ու կորուստների վերացման վրա։ Հանուն հասարակության շահերի առավելագույն արդյունքների հասնել նվազագույն ծախսերով՝ այս է տնտեսական շինարարության անվերապահ օրենքը» (ՍՄԿԿ XXII համագումարի նյութերը, Հայպետհրատ, 1962, էջ 507)։

Վերջին տարիներս կուսակցության կողմից անցկացվող տնտեսական միջոցառումները գլխավորապես ուղղված են հասարակական աշխատանքի նյութական խթանման ուժեղացման և կառավարման ու պլանավորման մեջ գիտական մեթոդների լայն ներդրման։

Տնտեսական երևույթները և պրոցեսները կառավարելու համար դրանց մասին ունեցած սոսկ պատկերացումը բավական չէ։ Անհրաժեշտ է ուսումնասիրել դրանց միջև գոյություն ունեցող փոխադարձ կապերն ու կախվածությունները, ինչպես այդ երևույթների և պրոցեսների որակական, այնպես էլ քանակական վերլուծության ճանապարհով, ընդ որում, որակական վերլուծությունը ո՛չ միայն պետք է նախորդի բազմակողմանի քանակական վերլուծությանը, այլև ուղեկցվի նրանով։

Դեռևս իր ժամանակին մարքսիզմ-լենինիզմի հիմնադիրները մեծ նշանակություն են տվել տնտեսագիտության մեջ քանակական մեթոդների՝ հատկապես, մաթեմատիկայի կիրառությանը։ Մարքսը տնտեսական երևույթների իր հետազոտությունների ժամանակ բազմիցս օգտվում էր մաթեմատիկայից ու մաթեմատիկական վերլուծություններից, դրանք դիտելով որպես բավականաչափ արժեքավոր օժանդակ միջոցներ։

Ընդգծելով մաթեմատիկայի դերը այլ գիտությունների բնագավառում և նրա ունեցած ազդեցությունը, Մարքսը նշել է. գիտությունն այն ժամանակ է հասնում կատարելության, երբ նրան հաջողվում է օգտվել մաթեմատիկայից։ Վ. Ի. Լենինը նույնպես բարձր է գնահատել մաթեմատիկայի դերը՝ որպես տնտեսական վերլուծության արդյունավետ օժանդակ միջոցի։



Տնտեսագիտության մեջ (ինչպես և այլ գիտություններում) մաթեմատիկական մեթոդների կիրառության հիմնական պայման է հանդիսանում ուսումնասիրվող տնտեսական երևույթների բնույթի նախնական որակական վերլուծությունը։ Մաթեմատիկան պահանջում է սկզբնական պայմանների և ուսումնասիրվող երևույթների հատկությունների ճշգրիտ ձևակերպում՝ որպես անհրաժեշտ նախադրյալներ հետագա տրամաբանական կառուցումների համար։

Մաթեմատիկական մեթոդների կիրառությունը էկոնոմիկայում հնարավորություն է ընձեռել կատարելագործելու և բարելավելու տնտեսական ու պլանային հաշվարկների մեթոդները։ Մաթեմատիկական մեթոդների լայն կիրառության հիման վրա հնարավոր է տնտեսական հետազոտություններում և պլանավորման մեջ ժամանակակից էլեկտրոնային հաշվողական մեքենաների օգտագործումը, քանի որ վերջիններս միայն մաթեմատիկական լեզվով ձևակերպված տվյալներ կարող են մշակել։

Ընդգծելով տնտեսական հետազոտություններում և պլանավորման մեջ մաթեմատիկական մեթոդների կիրառության կարևոր նշանակությունն ու անհրաժեշտությունը, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը 1963 թ. մայիսի 21-ի որոշմամբ պլանային, գիտահետազոտական, նախագծային բոլոր կազմակերպություններին հանձնարարեցին աշխատանքային պրակտիկայում լայնորեն գործադրել տնտեսական խնդիրների լուծման մաթեմատիկական մեթոդներն ու հաշվողական տեխնիկան։

Ներկայումս ՍՍՀՄ-ում և արտասահմանում ինտենսիվ մշակվում են հատուկ մաթեմատիկական մեթոդներ՝ տնտեսական հաշվարկների պրակտիկայում ծագող ամենաբազմազան խնդիրները լուծելու համար։ Այդ աշխատանքներն ունեն բացառիկ կարևոր նշանակություն, հատկապես պլանավորման մեջ էլեկտրոնային հաշվողական մեքենաների կիրառության կապակցությամբ։ Միաժամանակ ստեղծվում են էկոնոմիկա-մաթեմատիկական մոդելներ՝ հարմարեցված ինչպես ժողովրդատնտեսական և արտադրական պլանավորման կարիքներին, այնպես էլ պլանային հաշվարկների տեսությանը։

Ժողովրդատնտեսական մոդելները կառուցվում են մաթեմատիկական հավասարումների և անհավասարությունների սիստեմի օգնությամբ։ Վերջիններս բնութագրում են ժողովրդատնտեսության տարրերը և նրա առանձին ճյուղերի դինամիկան ու ստրուկտուրան արտացոլող մեծությունների քանակական կապերը։ Մոդելի կառուցման ժամանակ որոշվում են նաև տվյալ ժամանակաշրջանի համար սահմանափակող պայմաններն ու ժողովրդատնտեսական նպատակը։ Ճիշտ կառուցված տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելը հնարավորություն է ընձեռում կիրառելու համապատասխան մաթեմատիկական մեթոդները, մասնավորապես այդ ճանապարհով ընտրելու պլանի կամ ծրագրի օպտիմալ տարբերակը։ Օպտիմալ պլանավորման մաթեմատիկական մեթոդների կարևոր առանձնահատկությունն այն է, որ դրանք հնարավորություն են տալիս խուսափելու անմիջականորեն պլանի կամ ծրագրի բազմաթիվ տարբերակները դիտարկելուց և ապահովում են օպտիմալ տարբերակի ստացումը վերջավոր թվով հաջորդական քայլերից հետո։ Այդպիսի հաջորդական մոտավորությունների ժամանակ ելնում են օպտիմալության օբյեկտիվ հայտանիշներից, ընդ որում օպտիմալ տարբերակի ընտրությունը կատարվում է խիստ սահմանված կոնկրետ պայմանների հիման վրա՝ նախապես հաստատված տնտեսական արդյունքին հասնելու նպատակով։

Վերջին տասնամյակում տնտեսության պլանավորման և կառավարման գործում լայնորեն կիրառվում են մաթեմատիկական մեթոդներն ու էլեկտրոնային հաշվողական տեխնիկան։ Դա պայմանավորված է ժողովրդական տնտեսության առջև ծառացած կարևորագույն խնդիրների լուծման անհրաժեշտությամբ։ Ժամանակակից արտադրությունը բնութագրվում է աճի արագ տեմպերով, բարձր աստիճանի մասնագիտացմամբ ու կոոպերացմամբ, դրա առանձին օղակների միջև բարդ ու բազմազան տնտեսական փոխադարձ կապերի առկայությամբ։ Այս ամենն ավելի են բարդացնում ու դժվարացնում արտադրության պլանավորումն ու կառավարումը. վերջիններս դառնում են ոչ պակաս բարդ, քան արտադրությունը։

Ժողովրդական տնտեսության պլանավորումն ու ճիշտ կառավարումն ամբողջովին հանգում են հսկայական ծավալի տնտեսագիտական ինֆորմացիայի ստացմանը, մշակմանը և հաղորդմանը, որը նույնիսկ մեկ ձեռնարկության մասշտաբով հասնում է տասնյակ հազարավոր ցուցանիշների։ Արտադրության ծավալի, ձեռնարկությունների թվի, թողարկվող արտադրանքի տեսակների, տեխնոլոգիական եղանակների հետագա աճը, ինչպես նաև կառավարման օպերատիվության նկատմամբ պահանջների մեծացումը օրեցօր պայմանավորում են ինֆորմացիայի անընդհատ աճ և դրա մշակման ժամանակի կրճատման անհրաժեշտություն։ Պլանավորման և կառավարման ոլորտում շրջանառվող ինֆորմացիայի ծավալն աճում է նույնիսկ շատ ավելի արագ, քան արտադրությունը։ Միևնույն ժամանակ, այդ ոլորտում մեքենայացման և ավտոմատացման տեմպերը զգալիորեն ետ են մնում ինչպես ինֆորմացիայի ծավալի, այնպես էլ արտադրության աճի տեմպից։ Օրինակ, ՈՒՍՍՀ գիտությունների ակադեմիայի կիբեռնետիկայի ինստիտուտի գիտնականների կատարած ուսումնասիրությունները ցույց են տվել, որ արդյունաբերական արտադրության ծավալների ներկայիս աճը, որն ուղեկցվում է ձեռնարկությունների ներքին ու արտաքին կապերի անընդհատ բարդացմամբ, պայմանավորում է անհրաժեշտ ինֆորմացիայի աճ, գրեթե ըստ երկրաչափական պրոգրեսիայի։ Դա հիմք է տալիս եզրակացնելու, որ եթե միջոցառումներ չկիրառվեն պլանավորման, կառավարման և հաշվառման սիստեմի կատարելագործման ու ինֆորմացիայի մշակման նոր մեթոդների ու միջոցների ներդրման համար, ապա անհրաժեշտ կլինի արդեն 1980 թ. այդ ոլորտներում ընդգրկել երկրի ողջ չափահաս աշխատունակ բնակչությանը։ Ինֆորմացիայի մշակման մեջ աշխատանքի արտադրողականության և դրա ծավալի աճի տեմպերի միջև այդպիսի խզումը հնարավոր է վերացնել միայն ինֆորմացիայի մշակումը մեքենայացնելու և ավտոմատացնելու միջոցով՝ արագության զգալի մեծացման հաշվին։ Վերջինս իրագործելու ամենաարդյունավետ միջոցներն են՝ մաթեմատիկական մեթոդներն ու էլեկտրոնային հաշվողական տեխնիկան։ Ահա թե ինչու կուսակցությունը գիտության և տեխնիկայի կարևորագույն խնդիրն է համարում ինչպես այդ միջոցների ստեղծումն ու կատարելագործումը, այնպես էլ դրանց օգտագործումը պլանավորման, հաշվառման և կառավարման մեջ։

ՍՄԿԿ XXIII համագումարի նյութերում նշված է, որ մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի օգտագործումն իրոք հեղափոխում է ո՛չ միայն արտադրության տեխնոլոգիան, այլև էկոնոմիկան, պլանավորումն ու հաշվառումը, նախագծային-կոնստրուկտորական աշխատանքները, գիտական հետազոտությունները։ Կուսակցության ծրագրում ևս



ասված է, որ անհրաժեշտ է կազմակերպել կիբեռնետիկայի, էլեկտրոնային հաշվող-լուծող և կառավարող սարքերի լայն կիրառությունն արտադրության մեջ, գիտա-հետազոտական աշխատանքներում, նախագծային-կոնստրուկտորական պրակտիկայում, պլանային հաշվարկումներում, հաշվառման, վիճակագրության և կառավարման ոլորտներում։

Օպտիմալ պլանավորման մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի դերն ավելի է մեծանում ներկայումս՝ պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի պայմաններում։ Տնտեսական կազմակերպություններն այժմ ավելի են շահագրգռված կրճատելու արտադրության ծախսերը, բարձրացնելու շահութաբերությունը, մեծացնելու ֆոնդահատույցը և այլն։ Դրանով բարենպաստ հող է ստեղծվում տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվողական մեքենաների լայն կիրառության համար։

Ընդգծելով արտադրության զարգացման արդի էտապում արտադրության կառավարման ու պլանավորման աշխատանքներում մաթեմատիկական մեթոդների և մոդելների կիրառման անհրաժեշտությունը, ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումին տված իր զեկուցման մեջ Ա. Ն. Կոսիգինը նշեց. արդի պայմաններում պահանջվում է ավելի մեծ ճկունություն և օպերատիվություն արտադրության կառավարման ու պլանավորման գործում։ Չափազանց կարևոր է ժամանակին հաշվի առնել փոփոխվող տնտեսական իրադրությունը, մանևրել ռեսուրսների ասպարեզում... ձեռնարկության կոնկրետ պայմաններում գտնել տնտեսական խնդիրների լուծման լավագույն եղանակները։

Օպտիմալ պլանավորումը կարող է իրագործվել հասարակական արտադրության բոլոր էտապներում, սկսած ձեռնարկությունից և ճյուղից, վերջացրած ժողովրդատնտեսական պլանի մշակմամբ։ Պլանավորման խնդիրների առանձնահատկությունն իր արտահայտությունն է գտնում տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելների մեջ։ Չնայած այդ մոդելների բազմազանությանը, նրանց նպատակը մեկն է՝ գտնել պլանավորման խնդիրների լուծման ամենալավ տարբերակը։ Պլանավորման բոլոր խնդիրների մոդելները պայմանականորեն կարելի է բաժանել 3 տիպի՝ մասնակի, որը օգտագործվում է ձեռնարկության մասշտաբով պլանը մշակելիս (դետալների պարտիայի չափի, ձեռնարկության արտադրանքի ստրուկտուրայի, սարքավորումների օպտիմալ բեռնվածության որոշումը, ռեսուրսների օգտագործումը, արդյունաբերական նյութերի ձևումը, օրացուցային պլանավորումը, օպտիմալ տեխնոլոգիայի ընտրությունը և այլն), ընդհանուր, որը ծագում է ճյուղի և տնտեսական շրջանի համար պլանները մշակելիս (արդյունաբերության տեղաբաշխման, մասնագիտացման, կոոպերացման, տրանսպորտի հարցերը և այլն) և, վերջապես, ժողովրդատնտեսական խնդիրներ՝ կապված պլանների մշակման հետ (ազգային եկամտի ստրուկտուրայի, հասարակական արտադրության տեղի և ստրուկտուրայի, մեծ մասշտաբի տրանսպորտային հարցերը և այլն)։ Ներկայումս բավականաչափ փորձ է կուտակված տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդների կիրառման համար, որը համոզիչ կերպով ցույց է տալիս դրանց կիրառության արդյունավետությունը, հատկապես առանձին ճյուղերում և ձեռնարկություններում օպտիմալ պլանները որոշելիս։

Օպտիմալ պլանավորման խնդիրներն ընդհանուր գծերով կարելի է բնութագրել այսպես. ունենք պլանն իր բոլոր մանրամասնություններով բնութա-

գրող տնտեսական ցուցանիշների մի մասի մեծությունները, իսկ մյուսներինը
պետք է որոշել։ Հայտնի և անհայտ ցուցանիշների մեծությունների միջև փո-
խադարձ կապն արտահայտում ենք մաթեմատիկական հավասարումների
(անհավասարությունների) սիստեմի միջոցով, որի մեջ մտնում են նաև առ-
կա ռեսուրսների հետ կապված սահմանափակումները։ Այդ սիստեմի օգնու-
թյամբ որոշվում է թույլատրելի (իմաստ ունեցող) լուծումների (պլանների)
բազմությունը, ընտրվում օպտիմալության հայտանիշը, որի միջոցով համե-
մատվում են պլանների թույլատրելի տարբերակները՝ դրանցից լավագույնն
ընտրելու նպատակով։ Պլանավորման խնդիրների մեջ հատուկ տեղ են գրա-
վում գծային ծրագրավորումը։ Վերջիններս տարբերվում են պլանավորման ողջ
խնդիրներից նրանով, որ այնտեղ խնդրի պայմաններն ու օպտիմալության
հայտանիշը համապատասխանաբար արտահայտվում են գծային հավասա-
րումների (անհավասարությունների) սիստեմի և գծային ֆունկցիայի տեսքով։
Գծային ծրագրավորման խնդիրների մեջ այժմ առավելապես հետազոտ-
ված և պրակտիկայում հաճախ է հանդիպում, այսպես կոչված, տրանսպոր-
տային խնդիրը։ Այն հարկավ կապված է տրանսպորտի և փոխադրումների
օպտիմալ կազմակերպման հետ, սակայն միաժամանակ դրան կարելի է հան-
գեցնել նաև մի շարք տնտեսագիտական խնդիրներ, որոնք անմիջական առըն-
չություն չունեն տրանսպորտի և փոխադրումների հետ։
Տրանսպորտային խնդրի լուծումը թույլ է տալիս ընտրել արտադրան-
քի փոխադրման պլանի շատ տարբերակներից լավագույնը՝ ընտրված հայ-
տանիշին համապատասխան։ Տրանսպորտի աշխատանքի արդյունավետու-
թյունը պայմանավորված է ո՛չ միայն փոխադրումների ռացիոնալացմամբ և
օպտիմալացմամբ, այլև փոխադրումների համար անհրաժեշտ տրանսպորտի
տեսակների ընտրությամբ, բեռնաբարձման և բեռնաթափման աշխատանք-
ների կազմակերպմամբ, ավելորդ վագոնների կրճատմամբ և այլն։ Տրանսպոր-
տային խնդրի օպտիմալ եղանակով լուծումը հնարավորություն է տալիս մշա-
կելու սպառողներին մատակարարողներին ամրացնելու ամենահարմարավետ
սխեման։ Տրանսպորտային խնդիրը կիրառվում է փոխադրումների և նյութա-
տեխնիկական մատակարարման կենտրոնացված պլանավորման մեջ։
Այնուհետև տնտեսագիտական-մաթեմատիկական մեթոդներն սկսում են
մուտք գործել տրանսպորտի տնտեսական գործունեության պրակտիկան։ Այդ
մեթոդների օգտագործումը հնարավորություն է ընձեռում ճիշտ կազմա-
կերպելու ցեմենտի, անտառանյութերի, պարարտանյութերի, ածխի և այլնի
փոխադրումները։ Երկրի մի շարք հաշվողական կենտրոններում փոխադրում-
ների օպտիմալ պլանավորման խնդիրների լուծման շնորհիվ ստացվել է
10—15 տոկոս տնտեսում, առանձին դեպքերում նույնիսկ՝ 50—60։ Օրինակ,
ՍՍՀՄ ԳԱ կառավարող էլեկտրոնային մեքենաների գիտահետազոտական
ինստիտուտում 1957—1960 թվականների համար մշակված ածխի փոխա-
դրումների օպտիմալ սխեման (որն ընդգրկում է 30 արտադրող և 98 սպա-
ռող տնտեսական շրջաններ) փաստացի փոխադրումները լավացնում էր, հա-
մապատասխանաբար՝ 10,2 և 9,8 տոկոսով, որն առաջին դեպքում տնտեսում
է 100 մլն, երկրորդում՝ 80 մլն ռուբլի։
Գիտական պլանավորման մեթոդները հնարավորություն են ընձեռում
լուծելու նաև արտադրանքի մատակարարումը օպտիմալացնելու հարցերը՝
տրանսպորտի տարբեր տեսակներ օգտագործելու դեպքում։ Նման հաշվարկ-
ներ կատարվել են Ուկրաինայի կիբեռնետիկայի ինստիտուտում։ Բելոռու-



սիայի պետպլանի հաշվողական կենտրոնում համապատասխան հաշվարկնե-րից հետո մշակվել են մասսայական բեռների փոխադրումների օպտիմալ պլաններ՝ տրանսպորտի տարբեր տեսակներ օգտագործելիս։ Այդ պլաններն իրագործելիս հանրապետության ժողովրդական տնտեսությունը կարող է ստանալ տարեկան ավելի քան 10—15 մլն ռուբլու օգուտ։

Օպտիմալ պլանավորման մաթեմատիկական մեթոդները լայնորեն կիրառվում են արդյունաբերական արտադրության կազմակերպման և տեղաբաշխման մեջ։ Օպտիմալ տեղաբաշխման խնդրի լուծումը կարող է ասել, հուշել. որտե՞ղ տեղադրել այս կամ այն արդյունաբերական ձեռնարկությունը, ինչպիսի՞ն պետք է լինի նրա հզորությունը, արտադրանքի ի՞նչ տեսակների արտադրությամբ է նպատակահարմար մասնագիտացնել այն, ինչպիսի՞ն կլինի արտադրանքի նկատմամբ պահանջարկը և այլն։ Արտադրության տեղաբաշխման խնդրի լուծման համար առաջին անգամ մաթեմատիկական մեթոդները կիրառվեցին Նովոսիբիրսկի էկոնոմիկայի ինստիտուտում։ Այստեղ մշակվել է առանձին ճյուղերի արտադրության զարգացման և տեղաբաշխման ինքնատիպ պլանավորման մեթոդ. այդ մեթոդի գլխավոր առավելությունն այն է, որ վերլուծում է ճյուղի ներկայիս մակարդակն ու դրա զարգացման հեռանկարները՝ ընդգրկելով գործող, կառուցվող և ապագայում կառուցվելիք ձեռնարկությունները, ընդ որում, հաշվի է առնվում երկրում կամ հանրապետությունում տվյալ արտադրանքի նկատմամբ ապագա պահանջարկը։

Սիբիրի ցեմենտի գիտահետազոտական ինստիտուտում ԷՀՄ օգնությամբ մշակվել է Սիբիրում և Հեռավոր Արևելքում ցեմենտի գործարանների տեղաբաշխման և մասնագիտացման հեռանկարային պլանի օպտիմալ տարբերակը, որի իրացմամբ կտնտեսվի մոտ 20 մլն ռուբլի։

Օպտիմալ պլանավորման մեթոդները կիրառվում են նաև առանձին ձեռնարկությունների կամ ձեռնարկությունների խմբի արտադրական պլանները մշակելիս։ Օրինակ, ըստ ասորտիմենտի թողարկվող արտադրանքի օպտիմալ քանակը որոշելիս հաշվի են առնվում ինչպես դրանց նկատմամբ եղած պահանջարկը, այնպես էլ ձեռնարկության տնտեսական գործունեության որոշ ցուցանիշները։ Լուծվող խնդրի բնույթից ելնելով կարող են ընտրվել արտադրական պլանի օպտիմալության այս կամ այն հայտանիշը՝ սարքավորումների լավագույն օգտագործումն ըստ ժամանակի, առավելագույն շահույթի ապահովումը, արտադրանքի գումարային ինքնարժեքի իջեցումը, առավելագույն քանակությամբ ապահովումը, հումքի և նյութերի արդյունավետ ու խնայողական օգտագործումը և այլն։ Օրինակ, եթե ձեռնարկության մեջ արտադրության «նեղ տեղ» է հանդիսանում սարքավորումը, ապա նպատակահարմար է օպտիմալության հայտանիշ ընտրել դրա թերբեռնվածության մինիմալացումը կամ մաքսիմալ օգտագործումը. եթե թողարկվող արտադրանքի վրա հիմնականում ծախսվում են դեֆիցիտային նյութեր և հումք, ապա օպտիմալության հայտանիշ պետք է վերցնել հումքի և նյութերի խնայողական և արդյունավետ օգտագործումը, եթե արտադրանքի նկատմամբ պահանջարկը մեծ է, նպատակահարմար է օպտիմալության հայտանիշ ընտրել արտադրանքի մաքսիմալ քանակության ապահովումը և այլն։

Օպտիմալ պլանավորման սիստեմի մեջ կարևոր հարցերից մեկն էլ արտադրության մասնագիտացման ու արտադրանքի օպտիմալ ասորտիմենտի ընտրության խնդիրն է, որի գաղափարը կապված է արտադրության պլանային ստրուկտուրան որոշելու հետ։ Օպտիմալ ասորտիմենտի ընտրությունը

կարելի է հասնել ինչպես ժողովրդատնտեսության մեջ դրանց պահանջարկի ու օգտագործման տնտեսական արդյունավետության, այնպես էլ արտադրության հնարավորությունների և ծախքերի համապատասխան ցուցանիշները հաշվի առնելու միջոցով։

Նման պլանավորման մեթոդները կարող են հաջողությամբ կիրառվել ու կիրառվում են տարբեր խառնուրդների և համաձուլվածքների օպտիմալ բաղադրությունը, դրանց մեջ բաղադրամասերի քանակական հարաբերակցությունը որոշելիս, մասնավորապես, նավթամշակման, մետալուրգիական և սննդարդյունաբերության մեջ։

Մաթեմատիկական մեթոդների կիրառման հեռանկարային բնագավառներից մեկն է գյուղատնտեսությունը։ Այստեղ հնարավոր է ձևակերպել և լուծել տարբեր տիպի գյուղատնտեսական խնդիրներ. օրինակ, ցանքատարածությունների և մեքենա-տրակտորային պարկի օպտիմալ ստրուկտուրայի սահմանումը, աշխատանքների բաշխումը մեքենաների և ագրեգատների միջև, կերատեսակների խառնուրդի որոշելը, երկրի հողակլիմայական գոտիների մասնագիտացման պլանի մշակումը և այլն։

Տնտեսագիտության մեջ մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի օգտագործման կապակցությամբ վերջին տարիներին երևան եկավ պլանավորման և կառավարման մի նոր մեթոդ ևս, որը կոչվում է ցանցային։ Ցանցային պլանավորման և կառավարման էությունը հիմնականում հանգում է նոր տեխնիկայի բարդ կոմպլեքսների ստեղծման աշխատանքների ղեկավարման պրոցեսների մոդելավորմանը։ Որպես կանոն, այդպիսի կոմպլեքսների ստեղծումը կապված է բազմաթիվ փորձնական և նախագծային-կոնստրուկտորական աշխատանքների կատարման, ինչպես նաև մի շարք գիտա-հետազոտական պրոբլեմներ լուծելու հետ (գլխավոր նմուշի պատրաստումը, փորձարկումը և այլն)։ Մաթեմատիկական տրամաբանության յուրահատուկ լեզվով պատկերվում է կոմպլեքսի կառուցման աշխատանքների սխեման, որն ընդգրկում է բոլոր տեսակի անհրաժեշտ աշխատանքներն ու դրանց կատարման հաջորդականությունը։ Այդ սխեմայի մեջ աշխատանքները պատկերվում են գծերի (սլաքների) տեսքով, իսկ դրանց սկիզբն ու ծայրը, որոնց սովորաբար անվանում են երևույթ, ցույց են տալիս տվյալ գործն սկսելու և ավարտելու ժամկետները։ Ամեն մի երևույթ հանդիսանալով որևէ աշխատանքի սկիզբ, միաժամանակ նախորդ աշխատանքի (կամ աշխատանքների) վերջն է։

Համարակալելով ցանցի (սխեմայի) հանգույցները (երևույթները), դրանով ամբողջ աշխատանքների կոմպլեքսը պատկերվում է թվերի միջոցով։ Հաշվարկելով ցանցի աշխատանքների սկզբնական պլանի ցուցանիշները (օրինակ, կատարման ժամկետները կամ արժեքը, անհրաժեշտ ռեսուրսների քանակը) ինչպես առանձին մասերի, այնպես էլ ամբողջ կոմպլեքսի համար, գտնում ենք կոմպլեքսի միմյանց հետ կապված աշխատանքների ամենաերկար հաջորդականությունը՝ կրիտիկական ուղին, որով որոշվում է կոմպլեքսի կատարման ժամկետը, ինչպես նաև բոլոր ենթակրիտիկական ուղիները։ Կատարման ժամկետը կարելի է կրճատել կրիտիկական ուղու կրճատմամբ։ Հաշվի առնելով և գնահատելով ենթակրիտիկական ուղիների ու առանձին աշխատանքների կատարման ժամանակների և ռեսուրսների ռեզերվները, գտնում ենք կրիտիկական ուղին կարճացնելու հնարավորությունները՝ կատարելով ժամանակների և ռեսուրսների նոր, ավելի նպատակահարմար վերաբաշ-



խում։ Այսպիսով, գործարար եղանակով տեղեկություններ են ստացվում աշխատանքների կատարման փաստացի վիճակի մասին, որոնց հիման վրա կոնկրետ միջոցառումներ են կիրառվում ետ մնացող աշխատանքները ժամկետում կատարելու համար։

Պլանավորման և կառավարման ցանցային մեթոդների կիրառության տնտեսական օգուտը հիմնականում ստացվում է աշխատանքների կատարման ժամկետների կրճատմամբ։ Արտասահմանյան մամուլի տվյալների համաձայն, բարդ սիստեմների ստեղծման աշխատանքներում պլանավորման և կառավարման ցանցային մեթոդները կիրառելիս կատարման ժամկետները կրճատվում են մինչև 20—25, առանձին դեպքերում, նույնիսկ՝ 50 տոկոսով։

Ցանցային պլանավորման և կառավարման մեթոդները նույնպիսի արդյունավետությամբ կարող են կիրառվել շինարարության, արտադրանքի նոր տեսակների արտադրության տեխնոլոգիայի յուրացման մեջ և այլն, այսինքն՝ այնպիսի սիստեմներում, որոնց ստեղծման պրոցեսը հնարավոր է նկարագրել և ձևակերպել մաթեմատիկական տրամաբանության լեզվով։ Այդ մեթոդների կիրառության փորձը շինարարության, նավաշինության և ռադիոտեխնիկական արդյունաբերության մեջ ցույց է տալիս դրանց բարձր արդյունավետությունը։

ՍՍՀՄ-ում ցանցային պլանավորման և կառավարման սիստեմն առաջին անգամ ներդրվեց 1967 թ. Բուշտինսկի ջերմաէլեկտրակայանի և Լիսիչանսկի քիմիական կոմբինատի (Ուկր. ՍՍՀ) շինարարության աշխատանքներում։ Նույն թվականին այդ սիստեմը ներդրվեց Չելյաբինսկի մետալուրգիական գործարանում՝ Բլյումինիգ-ավտոմատը կառուցելիս։ Ներկայումս ցանցային պլանավորման և կառավարման սիստեմը կիրառվում է երկրի մի շարք մեքենաշինական գործարաններում՝ նոր արտադրանքի արտադրության յուրացման աշխատանքները պլանավորելու և կառավարելու համար։ Առայժմ ամենից լայն այն կիրառվում է շինարարության սիստեմում։ Կիևում Դնեպրի վրա մետրոյի կամրջի կառուցման համար գործադրվել է այս մեթոդը, որի շնորհիվ այն շահագործման հանձնվեց ժամկետից շուտ։ Այստեղ շինարարական-մոնտաժային աշխատանքների կատարման ժամկետների կրճատմամբ վերադիր ծախսերը պակասեցին մոտ 50 հազ. ռուբլով, իսկ այդ սիստեմի ներդրման ընդհանուր տնտեսական արդյունավետությունը կազմեց 175 հազար ռուբլի։ Այժմ այդ սիստեմը կիրառվում է տնտեսական փոխօգնության երկրների շենքերի համալիրի շինարարության մեջ և երկրի բազմաթիվ այլ կառույցներում։

Մեր երկրում դեռևս ցանցային պլանավորման և կառավարման սիստեմների ստեղծման և ներդրման աշխատանքների վաղ էտապում պետությունը միջոցառումներ է գործադրել այդ սիստեմներն ունիֆիկացնելու նպատակով։

1965 թ. ՍՍՀՄ գիտահետազոտական աշխատանքների կոորդինացման պետական կոմիտեն հաստատել է ցանցային պլանավորման և կառավարման սիստեմներ մշակելու և ներդնելու հիմնական պահանջները, որոնցում մասնավորապես տրվում են ցանցային մոդելների կառուցման մեթոդիկայի հարցերը, ցանցային պլանավորման ֆունկցիաներն ու կառուցվածքը և այլն։

Օպտիմալ պլանավորումը չի սահմանափակվում միայն պլանավորման այս կամ այն խնդրի ձևակերպումով և լուծումով. այն պետք է իրենից ներկայացնի մի ավարտուն սիստեմ, որի մեջ որոշված լինեն յուրաքանչյուր առանձին պլանային-տնտեսագիտական խնդրի լուծման տեղը, ֆունկցիաները, նշանակությունը։ Այդ սիստեմը պետք է օրգանապես կապված լինի ժո-

ղովրդական տնտեսության կառավարման, տնտեսագիտական ինֆորմացիայի հաղորդման ու մշակման սիստեմի հետ։ Ժողովրդատնտեսության պլանավորման և կառավարման միասնական լիակատար մի սիստեմ դեռևս չի ստեղծված. դա կապված է տնտեսագիտական, մաթեմատիկական, վիճակագրական և կազմակերպական բազմապիսի բարդ պրոբլեմների լուծման հետ։ Առաջին հերթին, անհրաժեշտ է հաշվի առնել օպտիմալ պլանավորման համար անհրաժեշտ վիճակագրական և տնտեսագիտական ինֆորմացիայի ստացման ռեալ հնարավորությունները։ Պետք է նկատի ունենալ, որ ինֆորմացիայի հավաքման, մշակման և հաղորդման գործող սիստեմը, առանց արմատական փոփոխությունների չի կարող բավարարել օպտիմալ պլանավորման կարիքները։ Օպտիմալ պլանավորման խնդիրներում պատահական ինֆորմացիայի օգտագործումը կարող է ի չիք դարձնել դրա առավելությունները պլանավորման սովորական մեթոդների նկատմամբ։ Այդ սիստեմում արտադրական և տնտեսական գործունեության մասին ժամանակին ինֆորմացիա ստանալն առաջնակարգ նշանակություն ունի։ Ընդգծելով սկզբնական ինֆորմացիայի կարևորությունը, Վ. Ի. Լենինը նշել է, որ սոցիալիզմի տնտեսական շինարարության բնագավառում առաջին պլան է մղվում արտադրության ընթացքի վերստուգման և հաշվառման կազմակերպումն ու մթերքների բաշխումը, առանց որի հնարավոր չէ կառավարել արտադրությունը և ապահովել ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ռիթմիկ աշխատանքը։

Հաշվառման միջոցներն ու մեթոդները պետք է համապատասխանեն օպտիմալ պլանավորման պահանջներին։ ԷՀՄ ոչ մի դեպքում օգուտ չեն տա, եթե դրանց տրվող սկզբնական ինֆորմացիան լինի անբավարար։ Միայն ժամանակին ստացված ճշգրիտ տվյալները կարող են հիմք ծառայել օպտիմալ պլանավորման գործառնությունների համար, որպեսզի պլանի տարրերի մեջ մուծվեն համապատասխան ուղղումներ, կարգավորվի նյութա-տեխնիկական մատակարարումը և այլն։

Էկոնոմիկայի մեջ մաթեմատիկական մեթոդների ու էլեկտրոնային հաշվողական տեխնիկայի ներդրման նպատակով որոշ առաջընթաց է նկատվում նաև մեր հանրապետությունում։ Մաթեմատիկական մեթոդների և էլեկտրոնային հաշվիչ մեքենաների օգնությամբ մշակվել է կոշիկի «Մասիս» միավորման տեխարդֆինպլանի տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելը, որը կիրառվել է այդ միավորման № 3 ֆաբրիկայի տեխարդֆինպլանը կազմելու համար։ Օպտիմալ արտադրական պլան որոշելու խնդիրները լուծվել են կոշիկի № 1 ֆաբրիկայի և ավտոպահեստամասերի գործարանի առանձին արտադրամասերի համար։ Այս գործարանի երրորդ արտադրամասի օպտիմալ պլանը որոշելու խնդիրը լուծվել է «Հրազդան—2» մեքենայի վրա 15 րոպե մեքենայական ժամանակում. ընդ որում, այդ ընթացքում հաշվիչ մեքենան հետազոտել է պլանի 56 թույլատրելի տարբերակներ՝ լավագույնն ընտրելու նպատակով։ Համեմատության համար նշենք, որ այդ նույն աշխատանքը մեկ մարդ կարող է կատարել երեք տարում, այն էլ ամենալավագույն դեպքում։

Մշակվել է կոշտ կաշվի օպտիմալ պահանջարկի քանակությունն ըստ կատեգորիաների և տեսակների որոշելու խնդրի տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելը, որը հնարավորություն է ընձեռում ոչ միայն անհրաժեշտ կաշվենյութերի պահանջարկի գիտականորեն հիմնավորված, օբյեկտիվ, խնայողական պլան մշակել, այլև մեքենայացնել բոլոր հաշվարկային աշխատանքները։



Նուրբ բրդյա գործվածքների-մահուդի կոմբինատի բրդեղենի արտադրամասերի համար դրված օպտիմալ խառնուրդների ընտրության խնդիրը լուծվել է «Հրազդան—3» հաշվիչ մեքենայի օգնությամբ, որը հնարավոր 156 տեսակի խառնուրդներից հետազոտել ու ընտրել է 18 լավագույնները, որոնց օգտագործմամբ կխնայվի 431 ռուբլի։ Այս խնդրի լուծման արդյունքները վկայում են մանարանների համար օպտիմալ խառնուրդների ընտրության մեջ մշակված մաթեմատիկական մոդելն օգտագործելու հնարավորության և նպատակահարմարության մասին։

ՀՍՍՀ ԳԱ տնտեսագիտության ինստիտուտի էկոնոմիկա-մաթեմատիկական բաժինը մշակել է ՀՍՍՀ մեքենաշինության և հաստոցաշինության հիմնական ֆոնդերի օպտիմալ օգտագործման փորձնական տնտեսագիտական-մաթեմատիկական մոդելը։ Էլեկտրոնային հաշվող մեքենայի հաշվարկումներով հայտաբերվել են 1,8 մլն ռուբլու չօգտագործվող հաստոցներ։ Վերոհիշյալ ինստիտուտում այժմ մաթեմատիկական մեթոդներով մշակում են Հայաստանի ժողտնտեսության միջճյուղային կապերի բալանսը, ինչպես նաև հեռանկարային պլանավորման հարցերը։

Մաթեմատիկական մոդելավորման միջոցով պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում գտնված են մոնովինիլացետիլենի ստացման ամենաօպտիմալ տեխնոլոգիական ռեժիմի պարամետրերը, որը մոտ 13 տոկոս խնայողություն է տալիս։

Իհարկե, այստեղ հնարավոր չէ նշել այն բոլոր աշխատանքների մասին, որոնք կատարվել ու կատարվում են մաթեմատիկական մեթոդներն ու ԷՀՄ պլանավորման և կառավարման մեջ կիրառելու նպատակով։ Այսուամենայնիվ, նշվածներն էլ վկայում են, որ մեր հանրապետությունում այդ բնագավառում առաջընթացը զգալի է։ Չկա արտադրության հետ շատ թե քիչ կապված գիտահետազոտական ինստիտուտ կամ լաբորատորիա, որն իր կառուցվածքում կիրառական մաթեմատիկայի բջիջներ չունենա։ Համալսարանի տնտեսագիտական ֆակուլտետում ստեղծված է տնտեսագիտական կիբեռնետիկայի ամբիոն։ Մի շարք գիտահետազոտական ինստիտուտներ ու գործարաններ արդեն ձեռք են բերել էլեկտրոնային հաշվիչ և անալիտիկ մեքենաներ, որոնց բազայի վրա անցնում են պլանային-հաշվային աշխատանքների մեքենայացմանը։

Որոշ հաջողություններով հանդերձ, պլանավորման և կառավարման մեջ մաթեմատիկական մեթոդների ու ԷՀՄ օգտագործումը, ընդհանուր առմամբ, ետ է մնում դրանց նկատմամբ եղած պահանջարկից ինչպես ամբողջ երկրում, այնպես էլ մեր հանրապետությունում։ Դա մասամբ բացատրվում է նրանով, որ դեռևս քիչ են արտադրվում հաշվող միջոցները, եղածներն էլ լրիվ կարողությամբ չեն օգտագործվում, ինֆորմացիայի հավաքման հաղորդման և մշակման սիստեմը կատարյալ չէ և այլն։ Բացի դրանից, զգացվում է համապատասխան կադրերի խիստ պակաս, չնայած արդեն շրջանավարտներ է տալիս համալսարանի տնտեսագիտական կիբեռնետիկայի բաժինը։ Կադրերի աճող պահանջը լրացնելու համար անհրաժեշտ է միջոցներ ձեռնարկել ինչպես մաթեմատիկոսների տնտեսագիտական, այնպես էլ տնտեսագետների մաթեմատիկական պատրաստականությունը բարձրացնելու համար։ Միայն նրանց համատեղ աշխատանքով կարելի է հասնել ցանկալի արդյունքի։

# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ՀԵՂԻՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

*Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է Հայաստանի վերածննդի կեսդարյա տարելիցին կատարել հնգամյա պլանը, այս տարի առաջադրանքից դուրս իրացնել 1,7 միլիոն ռուբլու արտադրանք, ստանալ կես միլիոն ռուբլու արտապլանային շահույթ, նախորդ տարվա համեմատությամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 6 տոկոսով, տնտեսել 720 հազար կվտ/ժամ էլեկտրաէներգիա, բարելավել թողարկվող արտադրանքի որակը։ Այս լուրջ ու պատվավոր խնդիրների լուծումը մեծ ջանքեր է պահանջում նաև կոմբինատի կուսկազմակերպությունից, բոլոր կոմունիստներից։ Պլան-պարտավորությունների կատարումը նրանք համարում են իրենց հարազատ գործը։*

*Կուսկոմիտեն և արտադրամասային կուսկազմակերպությունները կազմակերպական-քաղաքական արդյունավետ աշխատանք են ծավալում՝ ձեռնարկության առջև ծառացած խնդիրները լուծելու համար։ Այդ գործում կարևոր տեղ ենք հատկացնում կուսակցական ժողովներին, ուր պարբերաբար քննարկում ենք արտադրության առաջընթացին, կատարելագործմանն ու արդյունավետության բարձրացմանը, աշխատանքի գիտական կազմակերպմանը, խնայողության ռեժիմի կիրառմանը, արտադրական ծրագրի կատարմանը վերաբերող, կոմունիստներին ու կոլեկտիվին հուզող այլևայլ հարցեր։*

*Որպես կազմակերպության բարձրագույն օրգան՝ կուսժողովը հնարավորություն է ընձեռում առավել ճիշտ արտահայտել կոմունիստների կոլեկտիվ միտքն ու կամքը, քննադատության ու ինքնաքննադատության միջոցով բացահայտել աշխատանքի թերություններն ու բացերը, մշակել ձեռնարկության շահերից բխող միջոցառումներ, դրանք ուղղել տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծմանը։ Այդ գործում մեզ համար ուղեցույց է ՍՄԿԿ Կենտկոմի՝ «Յարոսլավլի քաղաքային կուսակցական կազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» որոշումը։*

*Կուսակցական ժողովը կոլեկտիվ մտքի արտահայտման և կոմունիստների քաղաքական դաստիարակության դպրոցի իր դերը կարող է պատշաճ ձևով կատարել, եթե պլանավորվում է խելացիորեն, նախապատրաստվում բազմակողմանիորեն, անցկացվում քաղաքական բարձր մակարդակով, կոմունիստների ակտիվ մասնակցությամբ։ Մեր կուսկոմիտեն և կուսբյուրոները առանձնահատուկ նշանակություն են տալիս այդ հարցերին։*

*Քաջարանի կոմբինատի 427 կուսանդամ-թեկնածուները հաշվառման մեջ են արտադրամասային 11 կուսկազմակերպություններում։ Հետևաբար, կուս-*



*ժողովներ անցկացնելու տեսակետից մեզ մոտ կան ուրույն պայմաններ։ Խստորեն ղեկավարվելով ՍՄԿԿ կանոնադրությամբ՝ կոմբինատի կուսկազմակերպության ժողովներն անցկացնում ենք առնվազն երկու ամիսը մեկ, իսկ արտադրամասային կուսկազմակերպություններինը՝ ամսական մեկ անգամ։ Վերջին մեկ տարում հրավիրել ենք համակոմբինատային 6, արտադրամասային 132 կուսժողով, որտեղ ելույթ են ունեցել 570 կոմունիստ։ Ընդ որում, ժողովները հրավիրում ենք նախապես մշակված և կոմիտեի ու բյուրոների նիստերում հաստատված պլանի համաձայն։*

*Քննարկվելիք հարցի ընտրությունը և ուսումնասիրությունը կազմակերպում ենք այնպես, որ այն չկրի ձևական բնույթ, այլ հուզի և սրտամոտ լինի բոլորին։ Ինչպես համակոմբինատային, այնպես էլ արտադրամասային կուսկազմակերպությունների ժողովների քննարկմանը ներկայացված հարցերի նախապատրաստումը հանձնարարում ենք ոչ միայն կոմիտեի ու բյուրոների անդամներին, այլև գործին գիտակ մասնագետներին, արտադրության առաջավոր շարքային կոմունիստներին։*

*Մեզ համար շատ կարևոր է նաև զեկուցողի ճիշտ ընտրությունը։ Անառարկելի է, որ վերջինս տոն է տալիս ժողովին։ Մեզ մոտ սովորաբար զեկուցողի քննադատությունը լինում է պատճառաբանված ու հասցեագրված։ Դա ակտիվություն է առաջացնում ժողովականների շրջանում, նրանք հետաքրքրություն են հանդես բերում քննարկվող հարցի նկատմամբ, խորացնում զեկուցողի միտքը, լրացնում նրան, օգնում թերությունների համակողմանի բացահայտմանը, անում խելացի, գործին օգնող առաջարկություններ, հանդես գալիս որպես լավ գործերի նախաձեռնող։ Դրա շնորհիվ մեզ մոտ կուսժողովներն անցնում են բարձր մակարդակով, դառնում թերությունները կանխելու և աշխատանքը բարելավելու կարևոր միջոց։ Այսպես, անցած տարի կոմբինատի կուսկազմակերպության ընդհանուր ժողովը քննարկեց «Տեխնիկական պրոգրեսի իրականացման և արտադրողականության բարձրացման համար կատարվող աշխատանքի դրվածքը կոմբինատի արտադրամասերում» հարցը։ Դրա նախապատրաստմանը, կուսկոմիտեի անդամներից զատ, ներգրավվեցին հանքի գլխավոր ինժեներ Բ. Մկրտչյանը, հարստացուցիչ ֆաբրիկայի գլխավոր ինժեներ Վ. Շմիլյովը, էքսկավատորավար Ա. Պետրոսյանը, ֆլոտատոր Գ. Հարությունյանը և ուրիշներ։*

*Կոմբինատի գլխավոր ինժեներ Հ. Ոսկանյանի զեկուցումից հետո ծավալվեց մտքերի փոխանակություն, որին մասնակցեցին տարբեր մասնագիտությունների ու զբաղմունքի մարդիկ։ Նրանցից յուրաքանչյուրը, խոսելով իր տեղամասում աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում ձեռք բերված հաջողությունների մասին, միաժամանակ բացահայտեց լուրջ թերություններ։ Օրինակ, էքսկավատորավար Ե. Առաքելյանը նշեց, որ բաց հանքում ոչ-բոլոր էքսկավատորներն են աշխատում լրիվ ծանրաբեռնվածությամբ, դեռևս շատ են պարապուրդները։ Տեխնոլոգիական ավտոպարկում ավտոմեքենաների մի մասը, պահեստամասերի պակասի և նորոգումները վատ կազմակերպելու պատճառով, դուրս չի գալիս աշխատանքի, հաճախ խախտվում է լեռնային աշխատանքի գրաֆիկը։ Հորատման ու պայթեցման աշխատանքի թերությունները բացասաբար են անդրադառնում բացման և հանքաքարի արդյունահանման պլանների կատարման վրա։ Դրանց պատճառը Ե. Առաքելյանը բացատրեց նրանով, որ հորատող հաստոցները հին են և ունեն ցածր արտադրողականություն, իսկ նորերի ներդրումը ձգձգվում է։*

Հետագայում կուսկոմիտեն հատուկ քննարկման հարց դարձրեց Ե. Առաքելյանի վերջին դիտողությունը։ Պարզվեց, որ մոնտաժված հաստոցները չեն գործում՝ գնդիկավոր փորիչները գործարանից չստացվելու պատճառով։ Կուսկոմիտեի հանձնարարությամբ կոմբինատի դիրեկցիան շուտով կարգավորեց այդ գործը։ ՍԲՇ—250 մակնիշի հաստոցների ներդրմամբ հաղթահարվեց հորապայթեցման աշխատանքի ետ մնալը։ Այսպիսով, կուսակցական ընդհանուր ժողովում շարքային կոմունիստի բարձրացրած հարցի լուծումը մեծ չափով նպաստեց տեխնիկական առաջընթացին, աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և աշխատանքային պայմանների բարելավմանը։

Լեռնային արտադրամասի կոմունիստներին և կոլեկտիվի անդամներին անհանգստացնում էր բացման աշխատանքի պլանների թերակատարումը։ Պահանջվում էին գործնական քայլեր։ Շուտով հարցը նախապատրաստվեց ու քննարկվեց նախ՝ կուսկոմիտեի նիստում, ապա՝ այդ արտադրամասի կուսակցական կազմակերպության դռնբաց ժողովում։ Հրավիրվեցին նաև կոմբինատի ղեկավարները։ Ժողովը պարզեց, որ պլանների թերակատարման հիմնական պատճառն աշխատանքի անբավարար կազմակերպումն է, գրաֆիկի կոպիտ խախտումը, պայթեցումների նվազ արդյունավետությունը։ Կոմունիստներն իրավացի քննադատեցին տեխնոլոգիական ավտոպարկի ղեկավարությանն այն բանի համար, որ նախատեսվածից քիչ մեքենաներ են տրամադրվում արտադրամասին, վատ է կազմակերպվում մեքենաների շահագործումը, նորոգումները կատարվում են ցածրորակ, ընկած է աշխատանքային կարգապահությունը։ Կուսակցական ժողովը որոշեց արտադրամասի էլեկտրածառայությունը համալրել բարձրորակ կադրերով։ Հաջորդ օրն արդեն օժանդակ արտադրամասերում աշխատող երիտասարդ էլեկտրաինժեներ Լ. Արզումանյանը, Ա. Համբարձումյանը և Մ. Առաքելյանը ուղարկվեցին բաց հանք՝ մշտական աշխատանքի։ Ժողովից հետո նորոգվեցին ամիսներով անգործ կանգնած ինքնաթափ ավտոմեքենաները, կարգ ու կանոն մտցվեց արտադրամասում, նրա կոլեկտիվն անցած ամիսների պլանը կատարեց 100,2 տոկոսով։

Շատ արդյունավետ է, երբ անկուսակցական ակտիվիստները հրավիրվում են դռնբաց կուսժողովներին, մասնակցում հարցերի քննարկմանը։ Մենք կարևոր նշանակություն ենք տալիս դրան։ Բանն այն է, որ անկուսակցական առաջավոր բանվորներից շատերն ունեն աշխատանքի հարուստ փորձ, քաջածանոթ են արտադրությանը։ Նրանք մասնակցում են քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը, ժողովներում ունեցած իրենց ելույթներով և արած խելացի առաջարկություններով օգնում կուսկազմակերպությանը՝ հաջողությամբ լուծելու տնտեսական խնդիրները։ Ժողովներին նրանց մասնակցությունը երբեմն բախտորոշ նշանակություն է ունենում։ Այսպես, վերջերս կենտրոնական մեխանիկական արտադրամասի կուսկազմակերպության ժողովը քննարկեց արտադրամասի պետ Գ. Խաչատրյանի զեկուցումը՝ «Արտադրական պլանների թերակատարման պատճառների մասին»։ Զեկուցման մեջ բացակայում էր անվանական քննադատությունը, առաջ չքաշվեցին արտադրամասի կոնկրետ խնդիրները։ Հարցը հապճեպ նախապատրաստելու հետևանքով ժողովն անցնում էր տաղտկալի։ Կուսկազմակերպության քարտուղար Ա. Ղուկասյանը ժողովի մասին վաղօրոք չէր պայմանավորվել բյուրոյի անդամների, կոմունիստների հետ, չէր նախապատրաստել որոշման նախագիծը։ Զեկուցումից հետո ոչ մեկը ցանկություն չհայտնեց ելույթ ունենալ, կարծես թե



պլանների թերակատարումը չէր անհանգստացնում նրանց։ Թերևս այդպես էլ վերջանար ժողովը, եթե ելույթի համար ձայն չխնդրեր անկուսակցական առաջավոր խառատ Ռ. Մարգարյանը։ Նա նշեց, որ արտադրամասում բացակայում է գործարար սոցիալիստական մրցությունը, ցածր է աշխատանքային կարգապահությունը, մեծ է կադրերի հոսունությունը, մեխանիկական և տեխնիկական մատակարարման բաժինները ժամանակին չեն ապահովվում անհրաժեշտ հումքով։ Կարծես ժողովը նոր էր սկսվել, ծավալվեց մտքերի աշխույժ փոխանակություն։ Կոմբինատի գլխավոր մեխանիկ Ա. Գևորգյանը և մատակարարման բաժնի վարիչ Վ. Հովհաննիսյանը ժողովականների պահանջով բացատրություն տվեցին և խոստացան կոնկրետ ժամկետներում կարգավորել նյութերի մատակարարումը։ Հետագայում արտադրամասում բարելավվեց գործերի վիճակը։

Խիստ կարևոր է նաև բաժինների պետերի և մյուս ղեկավար աշխատողների մասնակցությունն արտադրամասերի կուսկազմակերպությունների ժողովներին։ Դա պրակտիկա է դարձել մեզ համար։ Նախ՝ այստեղ նրանք ավելի մոտիկից են ծանոթանում արտադրության մարդկանց հոգսերին, անձամբ լսում իրենց հասցեին ասված քննադատական խոսքը, երկրորդ՝ նրանցից յուրաքանչյուրը ձգտում է լուծել իր բաժնին վերաբերող հարցերը, ավելի մեծ պատասխանատվություն է հանդես բերում այս կամ այն արտադրամասի գործերի վիճակի համար։

Կուսակցական ժողովների նախապատրաստման ու անցկացման ուսանելի փորձ է կուտակել հարստացուցիչ ֆաբրիկայի կուսկազմակերպությունը (բյուրոյի քարտուղար՝ Գ. Արզումանյան)։ Այն ուշադրության արժանացավ ու քննարկվեց սկզբնական կուսկազմակերպությունների քարտուղարների շրջանային սեմինար-խորհրդակցությունում։ Վերջին 10 ամսում ֆաբրիկայի կուսկազմակերպությունը քննարկել է անհապաղ լուծում պահանջող՝ տեխնիկական առաջընթացի մեքենայացման ու ավտոմատացման տեխնոլոգիական պրոցեսների կատարելագործման և քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հարցերը։

Կուսբյուրոն հաճախ օրակարգի հարց է դարձնում կուսխմբերի կամ առանձին կոմունիստների առաջարկները։ Այսպես, միջին ջարդող տեղամասի կուսխմբի (ղեկավար՝ փականագործ Ա. Առաքելյան) առաջարկով ուսումնասիրվեց հերթափոխություններում աշխատանքի կազմակերպման դրվածքը և քննարկվեց կուսժողովում։ Դա մեծ չափով օգնեց գործին. ետ մնացող երկու հերթափոխությունները դուրս եկան առաջավորների շարքը և անցած ամիսներին կատարեցին իրենց պլանները։ Մի ուրիշ անգամ էլեկտրաեռակցող Շ. Սարգսյանի առաջարկով նույն արտադրամասի կուսժողովը քննարկեց ֆաբրիկայի գլխավոր մասնաշենք մուտք գործող կոնցենտրատի չորացման տեղամասում կուտակվող ծխի ու գազերի վնասազերծման հարցը և իր նկատառումները ներկայացրեց կուսկոմիտեին ու դիրեկցիային։ Վերջիններս համապատասխան մասնագետներից կազմեցին հանձնաժողով՝ ուսումնասիրելու այդ հարցը։ Այժմ աշխատանքներ են կատարվում՝ ընթացիկ տարում ծխազերծման և գազազերծման սարքավորումները ֆաբրիկայից դուրս տեղադրելու համար։

Նշանակալից է նաև կոմունիստների ակտիվության բարձրացումը։ Հարստացուցիչ ֆաբրիկայում վերացվել է այն սխալ պրակտիկան, երբ բոլոր ժողովներում ելույթ են ունենում միևնույն մարդիկ։ Վերջին շրջանում մտքերի

փոխանակությանը ակտիվորեն են մասնակցում նաև նախկինում պատասխանատվություն հանդես բերող կոմունիստ բանվորներ՝ Ա. Աթոյանը, Հ. Ստեփանյանը, Լ. Ղազարյանը, Մ. Գրիգորյանը, Ա. Մարտիրոսյանը, Ի. Սարգսյանը, Գ. Հարությունյանը, Գ. Մովսիսյանը և շատ ուրիշներ: Դրան հասանք նախ՝ այն բանի շնորհիվ, որ կուսբյուրոն նրանց մասնակից դարձրեց քննարկվելիք հարցերի նախապատրաստմանը, ապա՝ հետևեց, որ ուսումնասիրությունը կատարվի բազմակողմանիորեն, իսկ զեկուցողը խորությամբ վերլուծի գործերի վիճակը, սկզբունքորեն բացահայտի թերությունները, անաչառ քննադատի թերացողներին:

Կուսակցական ժողովի հեղինակությունը հիմնավորված որոշումների և դրանց հետևողականորեն կենսագործելու մեջ է: Կոմբինատի և արտադրամասերի կուսկազմակերպությունների ժողովներում որոշումներն ընդունվում են հարցերը բազմակողմանիորեն ուսումնասիրելուց, վերլուծելուց և քննարկելուց հետո: Ընդ որում, որոշման կետերը ընդհանուր, վերացական բնույթ չեն կրում: Նշում ենք այս կամ այն խնդիրը լուծելու կոնկրետ ժամկետը, որոշակի մարդկանց պատասխանատու դարձնում որոշումները կատարելու համար:

Կուսկոմիտեն և կուսբյուրոները հետևում են, որպեսզի մինչև վերջ իրականացվեն կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, ժողովների որոշումները: Համակոմբինատային ու արտադրամասային կուսժողովներում կոմունիստներին հաշիվ ենք տալիս դրանց կատարման ընթացքի մասին, պարզաբանում չկատարելու պատճառները: Ընդունած որոշումների կատարմանը պատշաճ հետևելու շնորհիվ հարստացուցիչ ֆաբրիկայում ավտոմատացվել են տեխնոլոգիական մի շարք պրոցեսներ, մեքենայացվել են կրալուծույթի պատրաստումը, քիմիական նյութերի մանրացումը, ջարդող տեղամասում ու ֆլոտացման բաժնում տեղակայվել են բարձր արտադրողականությամբ նոր մակնիշի մեքենաներ ու հզոր պոմպեր: Պատահական չէ, որ ֆաբրիկայի կոմունիստներն ու անկուսակցական բանվորները հավատով են լցված իրենց կազմակերպության և նրա ընդունած որոշումների նկատմամբ: Այստեղ կուսժողովները պրակտիկ նշանակություն են ստանում կոմունիստների դաստիարակության համար:

Ի դեպ, կուսժողովների դաստիարակիչ դերի մասին: Կուսակցական ժողովներում կոմունիստների հաշվետվությունների պարբերաբար քննարկումը, նրանց գործունեության ճիշտ վերլուծությունը, հասցեագրված ու ճշմարտացի քննադատությունը, հարցերի սկզբունքային լուծումը բարձրացնում են կուսժողովի դերը՝ որպես դաստիարակության իսկական դպրոցի: Մեզ մոտ կուսժողովները կոմունիստներին դաստիարակում են պարտաճանաչության, հանձնարարված գործի նկատմամբ բարձր պատասխանատվության, թերությունների նկատմամբ անհաշտվողականության, կոմունիստական համակեցության կանոններին անշեղորեն հետևելու ոգով: Օրինակ, հարստացուցիչ ֆաբրիկայի՝ Ա. Աթոյանի ղեկավարած հերթափոխության կուսակցական խմբի 1969 թ. նոյեմբերին կայացած նիստում քննարկվեց ավագ ֆլոտատոր Մելիք Օհանյանի հարցը՝ ցածրորակ արտադրանք թողարկելու համար: Հերթափոխի աշխատողների մեծ մասը ելույթ ունեցավ և խիստ քննադատեց Մ. Օհանյանին այն բանի համար, որ նա չի հետևում տեխնոլոգիական պրոցեսին, խախտում է հակազդիչների համամասնությունը և տեղիք տալիս ցածրորակ արտադրանքի: Սակայն վերջինս չընդունեց ընկերների դիտողությունները և արտադրանքի ցածրորակության պատճառը բացատրեց վերամշակող հանքաքարի մեջ



հիմնական հումքի սակավությամբ: Մինչդեռ այդ նույն հանքաքարը վերամշակվում էր մյուս հերթափոխություններում և ստացվում էր լավ արդյունք: Ֆաբրիկայի կուսբյուրոն մանրակրկիտ ուսումնասիրեց այդ հարցը և, իր նիստում քննարկելուց հետո, տեղափոխեց կուսակցական ժողով: Այստեղ կոմունիստները դատապարտեցին Մ. Օհանյանի վարքագիծը և նշեցին, որ նա չարաշահում է իր մասին նախկինում արված գովեստները, մեծամտացել է և ընկերական դիտողություններն ընդունում է հիվանդագին:

Ժողովը կուսակցական տույժի ենթարկեց Մ. Օհանյանին և զգուշացրեց, որ եթե նա չվերակառուցի իր աշխատանքը, ապա նրան այլ տեղամաս կփոխադրեն: Քանի որ Օհանյանը մեր անվանի հարստացնողներից է, նրա հետ լուրջ խոսակցություն ունեցանք նաև կուսկոմիտեում: Պետք է խոստովանել, որ նշված միջոցառումները լուրջ ազդեցություն ունեցան: Նա սկսեց խստորեն կիրառել տեխնոլոգիական ռեժիմը, դրա սխեմայի կատարելագործման միջոցով վերացրեց նախկինում թույլ տված սխալները: Երբ ամփոփվեցին հոբելյանական տարվա առաջին եռամսյակի արդյունքները, բարձրորակ կոնցենտրատ թողարկելու համար ծավալված մրցությունում Օհանյանը գրավեց առաջին տեղը:

Համանման օրինակ է նաև լեռնային արտադրամասի էքսկավատորավար Վ. Խաչատրյանի հետ տեղի ունեցածը: Որպես առաջավոր՝ նա միշտ խրախուսվում էր, նրա ուսանելի փորձի մասին հատուկ թերթիկներ էին հրապարակվում: Բայց մի օր էլ, երբ հանքի ղեկավարությունը, արտադրության շահերից ելնելով, որոշեց նրա էքսկավատորը տեղափոխել մեկ ուրիշ հանքախորշ, Վ. Խաչատրյանը հրաժարվեց կատարել այդ հանձնարարությունը և հեռացավ աշխատանքից: Հետագայում նա հրաժարվեց առհասարակ մեքենավար աշխատելուց. Խաչատրյանի հետ ունեցած զրույցները քիչ արդյունք տվին: Ստիպված նրան ժամանակավորապես նշանակեցին փականագործ:

Անցած տարվա չորրորդ եռամսյակում լեռնային արտադրամասը թերակատարում էր բացման աշխատանքների պլանը. կարիք զգացվեց ավելացնել էքսկավատորների քանակը: Այդ հարցը քննարկվեց արտադրամասի կուսակցական ժողովում: Մի քանի մեխանիզատորների շարքում կոմունիստները քննադատեցին նաև Վ. Խաչատրյանին, որը դժվարին պահին մի կողմ էր քաշվել: Վ. Խաչատրյանը ճիշտ եզրակացություն հանեց ընկերների քննադատական դիտողություններից և նորից սկսեց աշխատել էքսկավատորի վրա: Նրա և մյուս մեխանիզատորների շնորհիվ արտադրամասը ժամկետից 10 օր շուտ կատարեց ընթացիկ տարվա առաջին եռամսյակի պլանը:

Կուսկազմակերպությունների ժողովների օրակարգը չի սահմանափակվում արտադրական հարցերով: Կյանքն ինքն է առաջադրում նոր խնդիրներ ու նոր հարցեր, որոնք բխում են կուսակցական-կազմակերպական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի բարելավման շահերից: Կոմբինատի, հարստացուցիչ ֆաբրիկայի, ճոպանուղու, լեռնային արտադրամասի կազմակերպությունները քննարկում են նաև կոմունիստների քաղաքական ուսուցման, ագիտացիոն-մասսայական աշխատանքի, հասարակական կազմակերպություններին օգնություն ցույց տալու հարցերը և այլն:

Մեր կոմբինատում կուսժողովները դարձել են արտադրական խնդիրները լուծելու, մարդկանց դաստիարակելու կարևոր միջոց: Հետևողականորեն իրականացնելով վերադաս օրգանների և կուսժողովների որոշումները՝ կոմբինատի կոլեկտիվը նախընթաց ժամանակամիջոցում ձեռք է բերել որոշակի հա-

ջողությունները։ Հնգամյակի անցած 4 տարիներին հանքաքարի վերամշակման ծավալը մեծացել է 18,3 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 21 տոկոսով։ Կոմբինատը 13 տոկոսով գերազանցել է իր նախագծային կարողությունը։ Անցած տարվա չորրորդ եռամսյակի բարձր արդյունքների համար կոլեկտիվը նվաճեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը և դրամական առաջին կարգի մրցանակը։ Մեր ջանքերի բարձր գնահատականն է նաև ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Գերագույն սովետի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի՝ լենինյան հոբելյանական պատվոգիրը, որին կոմբինատն արժանացավ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ծավալված սոցիալիստական մրցությունից պատվով դուրս գալու համար։

Պետք է ասել, որ մեր արտադրամասային 11 կուսկազմակերպություննների քարտուղարներն էլ կարող ուժեր են, ունեն բարձրագույն և միջնակարգ-մասնագիտական կրթություն և ի վիճակի են բարելավելու ներկուսակցական աշխատանքը, գտնել կուսժողովներ անցկացնելու արդյունավետ ձևեր։

Կ. Ա. ՄՈՎՍԻՍՅԱՆ
Քաջարանի Լենինի շքանշանակիր պղնձամոլիբդենային
կոմբինատի կուսկոմիտեի քարտուղար

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲԱՐԵԼԱՎՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՄԻՋՈՑ

ՀԿԿ Դիլիջանի քաղաքային կոմիտեն իր գործունեության ընթացքում ղեկավարվել և ղեկավարվում է ՍՄԿԿ XXIII համագումարի և մեծ առաջնորդի հիմնադիր դրույթներով։ Քննադատության և ինքնաքննադատության ծավալման շնորհիվ բարձրացել է մեր կոմունիստների գիտակցական, կուսակցական ու պետական կարգապահությունը, ստեղծագործական ակտիվությունը, ուժեղացել է նրանց պայքարը հակահասարակական, թափթփվածության, անտընտեսվարության երևույթների դեմ։ Իսկ այս ամենը նպաստել է մեր ընդհանուր աշխատանքի բարելավմանը, աշխատավորների ուժերի մոբիլիզացմանը՝ քաղաքի առջև դրված խնդիրները ճիշտ լուծելու գործում։

Գաղտնիք չէ, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունն ավելի շատ ծավալվում են կուսակցական ժողովներում։ Այստեղ է, որ կոմունիստները հանդես են գալիս դիտողություններով, առաջարկություններով, աշխատանքում տեղ գտած թերությունների բացահայտմամբ։ Հաշվի առնելով այս հանգամանքը, ՀԿԿ Դիլիջանի քաղկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները առանձնակի ուշադրություն են նվիրում ժողովների նախապատրաստությանն ու անցկացմանը, դրանցում առաջ քաշված հարցերին, կոմունիստների քննադատական դիտողություններին և, առաջադրված խնդիրներն ու հարցերը լուծելու համար, մշակում կոնկրետ միջոցառումներ։ Օրինակ, մինչև 1967 թ. քաղաքի «Իմպուլս» գործարանում թույլ հիմքերի վրա էր դրված պետական և աշխատանքային կարգապահությունը, սիստեմատիկաբար թերակատարվում էին պլանային առաջադրանքները, ցածր էր հանձնարարված գործի նկատմամբ պատասխանատվության զգացումը, կատարվում էին մեծ չափերի հասնող հավելագրումներ ու վատնումներ։ Նման վիճակը չէր կարող չանհանգստացնել ինչպես գործարանի կուսկազմակերպությանը, այնպես էլ քաղաքային կոմիտեին։ «Պետական և աշխատանքային կարգապահության



վիճակը գործարանում և կոմունիստների խնդիրները» հարցը սկզբում քննարկվեց կուսկազմակերպության ժողովում, ապա քաղկոմի բյուրոյում։

Կազմակերպության ժողովում ելույթ ունեցան 12 կոմունիստ։ Նրանք անաչառությամբ քննադատեցին աշխատանքում տեղ գտած աղաղակող թերությունները և այդ գործում մեղավորներին։ ՀԿԿ քաղաքային կոմիտեի բյուրոն մշակեց մի շարք գործնական միջոցառումներ՝ ստեղծված իրավիճակը շտկելու, պետական առաջադրանքները հաջողությամբ կատարելու համար։ Միաժամանակ դիմեցինք կազմակերպական միջոցառումների։ Կարճ ժամանակամիջոցում, նոր ղեկավարության օրոք, դրությունն ամբողջովին փոխվեց։ Բավական է ասել, որ 1967 թ. համեմատությամբ, 1969 թ. գործարանի արտադրության ծավալը կրկնապատկվեց, պլանային առաջադրանքը կատարվեց 104,5 տոկոսով, և այդ ամենը՝ մեքենայական կարողությունների և բանվորական ձեռքի գրեթե նույն պայմաններում։ Իսկ հոբելյանական տարվա առաջին եռամսյակի առաջադրանքները կոլեկտիվը կատարեց ժամկետից 10 օր շուտ։

Կամ մի այլ օրինակ նույն գործարանից։ Այստեղ մի ժամանակ պատշաճ ուշադրություն չէր նվիրվում նորարարական առաջարկությունների արմատավորմանը։ Արտադրամասերից կոմունիստներն ահազանգեցին այդ մասին։ Հարցը քննարկվեց գործարանի կուսբյուրոյում։ Մտքերի փոխանակությանը մասնակցեցին 9 կոմունիստ։ Նրանք խիստ նախատեցին նորարարական առաջարկությունների արմատավորման հարցով զբաղվող գործարանի գլխավոր ինժեներ Բ. Կայկովին՝ անտարբեր վերաբերմունքի համար։ Բյուրոն գործարանի ղեկավարությանը հանձնարարեց հիմնովին բարելավել նորարարական առաջարկությունների արմատավորման գործը։ Անցավ երեք ամիս։ Գործարանի կուսբյուրոն նորից անդրադարձավ այդ հարցին, ստուգեց նախկինում ընդունած որոշման կենսագործման ընթացքը։ Արդյունքները գոհացուցիչ էին։ Արտադրության մեջ արմատավորվել էր նորարարական 60 առաջարկություն, որոնք գործարանին բերել էին մոտ 52 հազար ռուբլու պայմանական օգուտ, նախորդ տարվա 13,5 հազարի փոխարեն։

Քաղաքի սկզբնական կուսկազմակերպությունների կյանքում սովորական է դարձել ժողովներում լսել կոմունիստ ղեկավարների հաշվետվությունները, որոնք նպաստում են ղեկավար կադրերի պատասխանատվության բարձրացմանը, առաջադրանքների հաջող կատարմանը, խթանում քննադատության ու ինքնաքննադատության ծավալմանը։ Օրինակ, քաղաքի կաթի գործարանում խիստ անբավարար էր սանիտարական վիճակը, ցածր էր թողարկվող կաթնամթերքների որակը, աշխատատար մի քանի պրոցեսներ, որոնք հնարավոր էին մեքենայացնել, կատարվում էին ձեռքով։ Կոմունիստներն այդ կապակցությամբ դիմեցին իրենց կուսկազմակերպության բյուրոյին։ Վերջինս հանձնարարեց գործարանի դիրեկտոր Խ. Սաֆարյանին՝ ժողովում զեկուցումով հանդես գալ այդ հարցի առթիվ։ Մեկ շաբաթ անց հրավիրվեց կուսակցական ռնբաց ժողով, որին մասնակցում էին նաև անկուսակցական ակտիվիստները։ Դիրեկտորի զեկուցումից հետո կոմունիստները հանդես եկան դիտողություններով և առաջարկություններով։ Վերջում ժողովն ընդունեց համապատասխան որոշում, որն ուղարկվեց նաև ՀՍՍՀ կաթնեղենի և մսեղենի արդյունաբերության մինիստրություն։ Ծանոթանալով կուսկազմակերպության որոշմանը՝ մինիստրությունը բավարարեց գործարանի պահանջները։ Ձեռնարկությունն ստացավ նոր մեքենաներ, մեքենայացրեց աշխատատար մի

շարք պրոցեսներ։ Այդ մեքենաների տեղադրմամբ աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 80 տոկոսով, բարելավվեց արտադրանքի որակը։

Քննադատությունը մեծապես օգնում է գործին, եթե այն կրում է գործնական բնույթ և բովանդակազուրկ չէ, քննադատություն չէ հանում քննադատության, ինչպես իր ժամանակին նկատում էր Վ. Ի. Լենինը (տե՛ս ПСС, т. 42, стр. 50)։ Ահա այդպիսի անարդյունավետ քննադատության տիպիկ օրինակ։ Անցած տարվա առաջին ամիսներին կահույքի ֆաբրիկայում գործերի վիճակը բարվոք չէր։ Աշխատանքային կարգապահությունը ցածր լինելու, նյութերի մատակարարումը ժամանակին չապահովելու պատճառով բանվորները հաճախ բացակայում էին աշխատանքից, օրերով և շաբաթներով պարապուրդ տալիս։ Ֆաբրիկայի կուսկազմակերպությունը մի քանի անգամ իր ժողովներում և բյուրոյի նիստերում անդրադարձել էր այդ հարցերին, ընդունել համապատասխան որոշումներ։ Բայց, ինչպես ասում են, սայլը տեղից չէր շարժվում։ Բանն այն է, որ ֆաբրիկայի ղեկավարությունն իր սեփական թերությունները չէր նկատում և քննադատում էր մեկ մինիստրությանը, մեկ մատակարարող կամ այլ կազմակերպությունների։ Բնականաբար, նման բովանդակազուրկ քննադատությունը գործին օգնել չէր կարող։

1969 թվականի հունիսի 17-ին քաղկոմի բյուրոն լսեց «Սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքը կահույքի ֆաբրիկայում» հարցը։ Այլ թերությունների հետ մեկտեղ, պարզվեց նաև, որ ֆաբրիկայի դիրեկտոր Հ. Բեգլարյանը, կորցնելով կոմունիստի ազնվությունը, զբաղվում է աչքակապությամբ։ Մայիս ամսին պլանների կատարման վերաբերյալ հաշվետվության մեջ նա կատարել էր 2373 աթոռի հավելագրում։ Պարզ է, որ ժողովներում Հ. Բեգլարյանի քննադատական «կրակոտ» ելույթներն առարկայազուրկ էին, քննադատություն էին հանում քննադատության։ Քաղաքային կոմիտեի բյուրոն այս անգամ էլ հարկադրված էր, այլ միջոցառումների հետ միասին, ձեռնարկությունն ամրապնդել կազմակերպչորեն։ Ֆաբրիկայի կուսկազմակերպությունը, բոլոր կոմունիստներն անհրաժեշտ եզրակացություն հանեցին բյուրոյի որոշումից։ Դա իր կոնկրետ արտահայտությունը գտավ արտադրական և տեխնիկա-տնտեսական ցուցանիշներում։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում արտադրվեց 34.275 աթոռ, անցած տարվա նույն ժամանակամիջոցի 25.850-ի դիմաց։ Իսկ մեկ բանվորի աշխատանքի միջին արտադրողականությունը բարձրացավ 39 տոկոսով։

Կուսկազմակերպությունը ճկուն և մարտունակ է այն դեպքում, երբ ժամանակին ունկնդրում է ներքևից եկող քննադատությանը, հաշվի առնում կոմունիստների և անկուսակցականների կարծիքը և ոչ թե բռնում քննադատությունը ճնշելու ուղին, հաշվեհարդար տեսնում քննադատող ընկերների հետ։ Քննադատության զենքից պետք է օգտվել լենինաբար։ Ինչպես սովորեցնում էր Վ. Ի. Լենինը, քննադատությունը պետք է լինի ընկերական, շիտակ, դիպլոմատությունից, մանր հաշիվներից զերծ։

Առաջնորդը մեր կուսակցության հաջողություններից մեկը համարում էր քննադատության պատշաճ ծավալումը, նրանից խելացի օգտվելը։

Ցավոք, դեռևս նկատվում են փաստեր, երբ առանձին ղեկավար ընկերներ այդպես չեն օգտվում կուսակցության փորձված զենքից՝ քննադատությունից։ Նման դեպքերում նրանք կորցնում են իրենց հեղինակությունը, աշխատանքի ընթացքում կատարում ավելի լուրջ սխալներ, ընկղմվում զանցանքների ու հանցանքների մեջ, կանգնում տխուր փաստի առաջ։



Կենցաղային սպասարկման կոմբինատի կոմունիստները տարբեր ժամանակներում և տարբեր առիթներով հաճախ էին ահազանգում առանձին արտադրամասերում տեղ գտած օրինախախտումների ու թերությունների մասին։ Կոմբինատի ղեկավարները ժամանակին չէին ունկնդրում ներքևից եկող այդ ահազանգերին, երբեմն էլ անտեսում էին ճշմարտացի ու տեղին դիտողությունները, խլացնում քննադատությունը։ Կոմունիստները հարկադրված դիմեցին քաղաքային կոմիտեին։ Ուսումնասիրությունները ցույց տվեցին, որ կոմբինատի առանձին ղեկավարներ, չարաշահելով իրենց պաշտոնական դիրքը, շատ հեռուն են գնացել։ Կոմբինատում տիրող տնավարության և թափթփվածության հետևանքով վատնվել ու յուրացվել էին մոտ 36 հազար ռուբլու արժեքներ։ Քաղկոմի բյուրոն անցած տարվա հոկտեմբերի 23-ին քննարկեց այդ հարցը և կուսակցությունից ու աշխատանքից հեռացրեց կոմբինատի դիրեկտոր Պ. Ղուկասյանին, արտադրության բաժնի պետ Վ. Պապյանին, գլխավոր հաշվապահ Վ. Մուսայելյանին։ Շուտով նրանք կկանգնեն սովետական դատարանի առջև։

Քննադատությունը և ինքնաքննադատությունն առաջին հերթին կոչված են ուղղելու մարդկանց սխալները՝ նպատակ ունենալով ճիշտ ճանապարհի բերել նրանց։ Սակայն, երբ այդ մարդիկ հաշվի չեն առնում իրենց ընկերների կարծիքը, չեն ընդունում քննադատությունը, անհրաժեշտ եզրակացություն չեն հանում և չեն ուղղվում, հարկ է լինում պատասխանատվության կանչել նրանց, դիմել վարչական ու կազմակերպական միջոցների։

Քննադատության և ինքնաքննադատության ծավալման կարևոր միջոցներից է աշխատավորների, կոմունիստների դիմում-բողոքներին ժամանակին և ճիշտ ընթացք տալը։ Հայտնի է, թե ՍՄԿԿ Կենտկոմը ինչպիսի կարևոր նշանակություն է տալիս այս գործին։ «Նամակները քննելու և աշխատավորների ընդունելությունը կազմակերպելու ուղղությամբ աշխատանքի բարելավման մասին» իր որոշման մեջ ՍՄԿԿ Կենտկոմն ընդգծում է, որ նամակների առթիվ տարվող աշխատանքներն այժմ կուսկազմակերպությունների խոր, վերլուծական մոտեցում են պահանջում։ Այդ նամակներում հաճախ աշխատավորները բարձրացնում են այնպիսի հարցեր, որոնց լուծումը մեծապես նպաստում է թերությունների ու բացերի վերացմանը, մեր աշխատանքի բարելավմանը։

Քաղաքային կոմիտեն հաճախ աշխատավորներից ահազանգեր է ստանում առանձին կազմակերպություններում եղած թերությունների մասին։ Նման ահազանգեր են ստացվել հանքային ջրերի գործարանի, կենցաղային սպասարկման կոմբինատի, կահույքի ֆաբրիկայի, Կույբիշևի, Վ. Ի. Լենինի անվան քաղաքամերձ սովխոզների և այլ կազմակերպությունների ու ձեռնարկությունների վերաբերյալ։ Այդ նամակներում կոմունիստները և մյուս աշխատավորները գրում էին աշխատանքային կարգապահության խախտումների, սանիտարական ոչ-բավարար վիճակի, մեքենաների ու սարքավորումների վատ օգտագործման, անվտանգության տեխնիկայի կանոնների խախտման, անասունների խնամքի ու պահպանման և այլ երևույթների մասին։ Բարձրացված հարցերը, անշուշտ, խիստ կարևոր էին և արժանանում էին պատշաճ ուշադրության։ Այդ նամակներից շատերը դարձել են քաղկոմի բյուրոյի քննարկման առարկա, որոնցից մի քանիսի մասին արդեն խոսվեց վերը։

ՀԿԿ քաղաքային կոմիտեն, սակայն, չի սահմանափակվում միայն իր հասցեով ուղարկված դիմում-բողոքներին ընթացք տալով։ Նա միաժամանակ իր ուշադրության կենտրոնում է պահում այն հարցը, թե քաղաքի մյուս հիմ-

նարկությունների ու ձեռնարկությունների ղեկավարներն ինչպես են արձագանքում աշխատավորների ահազանգերին, ինչպիսի ընթացք են տալիս նրանց դիմում-բողոքներին։ Օրինակ, 1969 թ. նոյեմբերի 18-ին քաղկոմի բյուրոն լսեց «Աշխատավորների դիմում-բողոքներին ընթացք տալու վիճակը քաղաքային, Կույբիշևի և Գոշի գյուղական սովետների գործկոմներում» հարցը։ Այսպիսի հարցեր ենք քննարկել նաև կենցաղային սպասարկման կոմբինատից, կապի հանգույցից և մի քանի այլ կազմակերպություններից։ Քաղկոմի բյուրոն, կատարված դրական աշխատանքի հետ միասին, լուրջ թերություններ է բացահայտել աշխատավորների դիմում-բողոքներին ընթացք տալու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հայտնի որոշումների կատարման գործում և միջոցառումներ մշակել դրանք վերացնելու համար։

Աշխատավորների, կոմունիստների համար վաղուց քննադատության և ինքնաքննադատության տրիբունա է դարձել մամուլը։ Նրանք քաղաքային «Դիլիջան» թերթի էջերում, հիմնարկության կամ ձեռնարկության պատի թերթերում հանդես են գալիս քննադատական դիտողություններով, առաջարկություններով, ցույց տալիս արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և մյուս ճյուղերի ձեռք բերած նվաճումները, ինչպես նաև նրանց աշխատանքում տեղ գտած թերությունները և ուղիներ նշում՝ վերացնելու մեր առաջընթացը խանգարող խոչընդոտները։ Այդ նամակների, հոդվածների ու թղթակցությունների մեծ մասը քննարկվում է կոլեկտիվներում և ստանում անհրաժեշտ լուծում։ Այդպիսի օրինակներ կարելի է բերել «Իմպուլս» գործարանից, պետարդելոցից, կոմունալ-սպասարկման ու բարեկարգման գրասենյակից, շինվարչությունից և այլ կազմակերպություններից։

Անցած տարի «Դիլիջան» քաղաքային թերթում տպագրվեց շինվարչության բանվոր, հյուսն Հ. Ուլիխանյանի թղթակցությունը։ Հեղինակը քննադատել էր շինվարչության ղեկավարությանը՝ շինարարներին արտահագուստներով ու շինանյութերով ժամանակին չապահովելու, մեքենաներն արդյունավետ չօգտագործելու և մի շարք այլ պակասությունների համար։ Թերթի լույս ընծայումից անմիջապես հետո շինվարչության կուսկազմակերպության բյուրոն քննարկեց այդ թղթակցությունը։ Ելույթ ունեցան բյուրոյի գրեթե բոլոր անդամները։ Նրանք կոմունիստորեն մոտեցան գործին, լիովին ընդունեցին քննադատությունը և միջոցառումներ մշակեցին՝ թղթակցությունում առաջ քաշված հարցերը լուծելու համար։ Կարճ ժամանակում վերացվեցին թերությունները։ Այս և տարբեր առիթներով ծավալված քննադատությունն ու ինքնաքննադատությունը, իրոք, օգնեցին մեր շինարարներին՝ վճռական բեկում մտցնելու իրենց աշխատանքում։

Մեր երկրի և կուսակցության առջև տնտեսական ու քաղաքական կարևորագույն խնդիրներ են ծառացած։ Դրանց հաջող լուծման գործում իր վճռական դերն ու նշանակությունն ունի քննադատության և ինքնաքննադատության պատշաճ ծավալումը։ Դաստիարակության այդ հզոր միջոցը մեծապես օգնում է մեզ՝ հաղթահարելու մեր առաջընթացը խանգարող դժվարությունները։

Քաղաքային կոմիտեն, սկզբնական կուսկազմակերպությունները վերջին տարիներս ավելի լուրջ ուշադրություն են նվիրում կուսակցական-կազմակերպական և կադրերի հետ տարվող դաստիարակչական աշխատանքների ձևերի ու մեթոդների կատարելագործմանը, քննադատության և ինքնաքննադատության ծավալմանը։ Քաղկոմի պլենումներում ու ակտիվի ժողովներում պար-



բերաբար քննարկվում են արտադրության մեջ կոմունիստների ավանգարդային դերի ապահովման, կոմունիստների կողմից ՍՄԿԿ կանոնադրության պահանջների կատարման, սոցիալիստական օրինականության ամրապնդման, երիտասարդության կոմունիստական դաստիարակության հետ կապված բազմաթիվ այլ հարցեր։ Վերջերս քաղաքի կուսկազմակերպություններում լայնորեն քննարկվեց «Յարոսլավլի քաղաքային կուսկազմակերպությունում կուսակցական ժողովների անցկացման պրակտիկայի մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը։ Այն լայն արձագանք գտավ կոմունիստների շրջանում։ Նրանք քննադատեցին իրենց ժողովների նախապատրաստման ու անցկացման պրակտիկայում տեղ գտած թերությունները, լուրջ խնդիրներ առաջ քաշեցին՝ քննադատության և ինքնաքննադատության հետագա ծավալման ու զարգացման, ժողովներում հարցերի գործարար քննարկման, ընդունած որոշումների հետևողական կենսագործման և այլ հարցերի վերաբերյալ։

Կուսակցությունը, ինչպես նշում է Վ. Ի. Լենինը, իր ամբողջ գործունեության ընթացքում վճռականապես արմատախիլ է անում բյուրոկրատիզմը, անկազմակերպվածությունը, թափթփվածությունը, քաշքշուկը, անփութությունը, կենդանի գործը շաղակրատանքով փոխարինելու հակումը։ Մեր քաղաքի կուսկազմակերպություններն իրենց գործունեության համար ուղեցույց են ընդունել լենինյան այդ դրույթը և պայքարում են այն մինչև վերջ կենսագործելու համար։ Պայքարի արդյունքը մեծ է. քաղաքի աշխատավորական կոլեկտիվները հաջողությամբ են կատարում ստանձնած սոցիալիստական պարտավորությունները, իրենց արժանի ավանդն են ներդնում մեր երկրում կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման գործում։ Հնգամյակի չորրորդ տարում նրանք լուրջ հաջողությունների հասան տնտեսության գրեթե բոլոր ճյուղերում։ Քաղաքի արդյունաբերական ձեռնարկությունները, ամբողջությամբ վերցրած, իրենց առաջադրանքները կատարեցին 103,1 տոկոսով։ Նախորդ տարվա համեմատությամբ, արտադրանքի ծավալն աճեց 15, աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ 13 տոկոսով։ Լայն ծավալ ստացավ շինարարությունը, վերելք ապրեցին քաղաքամերձ սովխոզները։

Արտադրության մարդկանց աշխատանքային խանդավառությունը կրկնապատկվել է հատկապես ընթացիկ՝ հոբելյանական տարում։ Առաջին եռամսյակի պլանների կատարման բարձր արդյունքները հաստատումն են այն բանի, որ նրանք ոչ մի ջանք չեն խնայում իրենց խոստումը գործի վերածելու համար։

Մեծ խնդիրների կենսագործումը դեռ առջևում է։ Կոմունիստները սովոր չեն հանգստանալ ձեռք բերածով։ Նրանք իրենց պարտքն են համարում քննադատությամբ և ինքնաքննադատությամբ վերացնել մեր առաջընթացը խոչընդոտող թերությունները, մոբիլիզացնել աշխատավորների բոլոր ուժերը՝ հնգամյակի խնդիրները հաջողությամբ լուծելու, Հայաստանի վերածննդի 50-ամյա հոբելյանն արժանավայել գործերով նշանավորելու համար։

Խ. Մ. ՎԱԹԻՆՅԱՆ

ՀԿԿ Դիլիջանի քաղկոմի առաջին քարտուղար



# ԿԵՆՍԱՀԱՍՏԱՏ ՈՒԺԸ

Սովետական իշխանության ստեղծման առաջին իսկ օրերից Վ. Ի. Լենինը մեծ ուշադրություն էր նվիրում սոցիալիստական մրցության կազմակերպմանը՝ այն դիտելով որպես աշխատանքի արտադրողականության բարձրացման, կարգապահության ամրապնդման վճռական միջոց։ Նա տեսավ մրցության և աշխատավորների ձեռներեցության ու նախաձեռնության առաջմղիչ, հզոր ուժը սովետական կարգերի սոցիալ-տնտեսական զարգացման գործում։

Առաջնորդը խորհուրդ էր տալիս ուշի-ուշով ուսումնասիրել ու պաշտպանել նորի ծիլերը, որոնցից կյանքը կվերցնի ամենից կենսունակները։ Նա ուսուցանում էր, որ կապիտալիզմին հաղթելու համար պիտի ունենալ բավականաչափ համառություն, փորձել պայքարի հարյուրավոր ու հազարավոր նոր հնարքներ, եղանակներ, միջոցներ և նրանցից վերցնել ամենապետքականնե-րը։ Ամենապետքականը և ամենակենսունակը Վ. Ի. Լենինը համարում էր սոցիալիստական մրցության կազմակերպումը։

Սոցիալիստական մրցությունը ենթադրում է աշխատավորների ձեռներեցության զարգացում, որը նրանց մղում է հաջողությամբ իրականացնելու ամենադժվարին խնդիրները, գործելու աշխատանքային մասսայական հերոսություններ։ «Սոցիալիզմը,— գրում է Վ. Ի. Լենինը,— ոչ միայն չի մարում մրցությունը, այլ, ընդհակառակը, առաջինն է հնարավորություն ստեղծում իրոք լայնորեն կիրառելու այն, իրոք մասսայական չափով, իրոք աշխատավորների մեծամասնությանը ներգրավելու այնպիսի աշխատանքի ասպարեզը, որտեղ նրանք կարող են երևան բերել իրենց, ծավալել իրենց ընդունակությունները, դրսևորել տաղանդներ, որոնք ժողովրդի մեջ անսպառ աղբյուր են և որոնց կապիտալիզմը ճմլել, ճնշել, խեղդել է հազարներով ու միլիոններով։ Այժմ, երբ իշխանության գլուխ է անցել սոցիալիստական կառավարությունը, մեր խնդիրն է կազմակերպել մրցությունը» (Երկեր, հ. 26, էջ 493—494)։

Կոմունիստական կուսակցությունը, կենսագործելով լենինյան ցուցումը, ամեն կերպ աջակցում է սոցիալիստական մրցությանը։ Ավելի քան հիսնամյա պատմության հարուստ փորձը հաստատում է, որ այն խոշոր դեր է խաղացել մեր հասարակարգի զարգացման գործում, հանդիսացել կոմունիզմի ուղիով մեր երկրի տնտեսական ու կուլտուրական վերելքի հզոր արագացուցիչը։

Վերջին տարիներս սոցիալիստական մրցությունն ընդունեց ավելի լայն, համաժողովրդական բնույթ։ Այն իր համար ճանապարհ հարթեց նաև մեր շրջանում։ Արևիկի կոլտնտեսությունը հանրապետությունում հանրային տնտեսությունների մեջ առաջինն արժանացավ կոմունիստականի բարձր կոչմանը։ Դա մեր գյուղի մարդկանց պայքարի ու ջանքերի արդյունքն է։

Սոցիալիստական մրցության վերաբերյալ լենինյան գաղափարները խոր արմատներ են ձգել նաև Ախուրյանի շրջանում։ Կենսագործելով այդ գաղափարները և կուսակցության պահանջները՝ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները ծավալել ու ծավալում են գործարար սոցիալիստական մրցություն և նոր նվաճումներ ձեռք բերում գյուղատնտեսության զարգացման ասպարեզում։ Կուսակցական և կոմերիտական կազմակերպությունները հանդես են գալիս որպես մրցության կազմակերպիչներ ու ոգեշնչողներ, կոմունիստներն ու կոմերիտականներն ամենուրեք քայլում են մրցության ավանգարդում, աշխատավորական մասսաներին տանում իրենց նաևից։



Մրցության հետ կապված ոչ մի հարց չի վրիպում շրջանի կուսկազմակերպությունների ուշադրությունից։ Երբ աշխատավորական կոլեկտիվները քննարկեցին ՍՄԿԿ Կենտկոմի, ՍՍՀՄ Մինիստրների սովետի, ՀԱՄԽ-ի և ՀամԼԿԵՄ Կենտկոմի նամակը՝ «Արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմն ուժեղացնելու մասին», կուսկազմակերպություններն իրենց առաջնահերթ խնդիրը համարեցին գլխավորել նրանց սոցիալիստական մրցությունը, նրա մասնակիցների ուշադրությունը կենտրոնացնել արտադրության ռեզերվների օգտագործումը բարելավելու և խնայողության ռեժիմ կիրառելու համար պայքարն ուժեղացնելու վրա։

Սոցիալիստական գործարար մրցության կազմակերպումն ու ծավալումը շրջանի կուսկազմակերպությունների կազմակերպական-քաղաքական աշխատանքի հիմնական հարցերից է։ Կուսկազմակերպություններն առավել հոգածություն են ցուցաբերում մրցության կազմակերպման նկատմամբ, այդ գործը համարում տնտեսական շինարարության հաջողությունների, աշխատավորության ուժերը մոբիլիզացնելու կարևոր պայման։ Որպես կանոն միմյանց հետ մրցում են օղակները, բրիգադաները, ֆերմաները, կոլտնտեսություններն ու սովխոզները։ Կուսկազմակերպություններն առանձնահատուկ ուշադրություն են նվիրում նաև անհատական մրցությանը։ Մրցման մեջ ընդգրկվում են դաշտավարները, անասնապահներն ու մեխանիզատորները։ Շրջանը ավանդույթային մրցության մեջ է հարևան Սպիտակի և Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանների հետ։

Պայմանագրերի կնքումը, սակայն, դեռ գործարար մրցություն չի նշանակում, դրանով չի վերջանում ամեն ինչ։ Մրցությանը գործարար բնույթ տալը և պարտավորությունների կատարումը կուսկազմակերպությունները համարում են գլխավորը։ Նրանք, արհմիութենական կազմակերպությունների մասնակցությամբ, պարբերաբար ամփոփում են ստանձնած պարտավորությունների կատարման արդյունքները, ի հայտ բերում մրցության առաջավորներին, խրախուսում նրանց և օգնում ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու և աշխատանքում ընդհանուր վերելք ստեղծելու համար։

Վ. Ի. Լենինը սոցիալիստական մրցության կազմակերպման գործում կարևոր տեղ էր հատկացնում մրցության արդյունքների մասսայականացմանը, հաղթողներին խրախուսելուն։ Առաջնորդը պահանջում էր գործը կազմակերպել այնպես, «...որպեսզի առանձին կոմունաների տնտեսության գործարար հանրագումարների համեմատությունը ընդհանուր հետաքրքրության և ուսումնասիրության առարկա դառնա, որպեսզի աչքի ընկնող կոմունաներն անհապաղ պարգևատրվեն...» (Երկեր, հ. 27, էջ 312)։

Մեր շրջանում ամեն անգամ, մրցության արդյունքներն ամփոփելուց հետո, հրավիրվում են արտադրական խորհրդակցություններ, կոլեկտիվի ժողովներ, ուր հրապարակվում են մրցության արդյունքները և հանդիսավոր պայմաններում հաղթողներին հանձնվում փոխանցիկ դրոշը, հուշադրոշները, նյութական խրախուսանքները։ Այսպիսով, աշխատանքի արդյունքների հրապարակայնությանը զուգակցվում են նաև առաջավորների փորձի մասին կենդանի զրույցները։

Սոցիալիստական մրցությունը շատ դեպքերում դառնում է փոխադարձ օգնության և առաջավոր փորձի ուսումնասիրման միջոց։ Ուշադրության է արժանի այն փաստը, որ մրցակից տնտեսությունները դարձել են իսկական

*բարեկամներ, օգնում են պարտավորությունները հաջողությամբ կատարելու գործում։ Շատ փաստեր կան, երբ կոլտնտեսություններից մեկնումեկը որևէ բանի կարիք է զգացել (արտադրության միջոցներ, նյութեր և այլն), առաջին հերթին դիմել է իր մրցակցին և ժամանակին անհրաժեշտ օգնություն ստացել։*

*Սոցիալիստական մրցության արդյունավետությունն ապահովելու նպատակով կուսշրջկոմը, կուսակցական ու արհմիութենական կազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները և սովխոզների դիրեկցիաները մշակել և իրագործում են բարոյական ու նյութական խրախուսման զանազան միջոցառումներ։ Ինչպես տնտեսություններում, այնպես էլ շրջկոմում սահմանված է աշխատանքային պատվոգիրք։*

*Մրցության առաջավորների բարոյական խրախուսումից բացի, շրջանի տնտեսություններում կիրառվում են նյութական խրախուսման բազմազան միջոցներ։ Առաջավորները, հիմնական վարձատրությունից բացի, առաջադրանքները գերակատարելու համար, ստանում են նաև պարգևներ։*

*Բարոյական ու նյութական խրախուսանքի միջոցներ է սահմանել շրջանային «Շիրակ» թերթի խմբագրությունը։ «Առաջավոր տրակտորիստի ամբիոն», «Առաջավոր կոմբայնավարի ամբիոն», «Առաջավոր հովվի ամբիոն» խորագրերի տակ հրապարակվում են հաղթողների անունները, իսկ հացահատիկային կուլտուրաների բերքահավաքի ժամանակ խմբագրությունն ավանդույթային կարգով սահմանում է նյութական մրցանակներ՝ առավել բարձր ցուցանիշների հասնող կոմբայնավարների համար։*

*Սոցիալիստական մրցության ծավալմանը մեծապես նպաստում և նոր թափ են հաղորդում հանրապետական պատվոգրքում առաջավորների անունների գրանցումը և ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի դիպլոմներով, մեդալներով և դրամական մրցանակներով պարգևատրելը։ Վերջին երկու-երեք տարում հանրապետական պատվոգրքում գրանցվել են մեր շրջանի առաջավոր 8 կոլտնտեսականների անուններ։ Միայն 1968 թ. բարձր ցուցանիշների համար 28 առաջավորներ արժանացան ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի ոսկե, արծաթե, բրոնզե մեդալների, դիպլոմների և դրամական պարգևների։*

*Սոցիալիստական մրցության կազմակերպումն անխզելիորեն կապված է գիտության նվաճումների և առաջավոր փորձի պրոպագանդման ու արմատավորման հետ։ Կուսշրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, կոլտնտեսությունների վարչությունները և սովխոզների դիրեկցիաները լուրջ ուշադրություն են նվիրում այդ կարևոր խնդրին։ Շրջանում գործում է գյուղատնտեսական գիտելիքների և առաջավոր փորձի ուսումնասիրման համալսարան, որը, ակտիվ գործունեության և իր առջև դրված խնդիրները հաջողությամբ լուծելու համար, վերջերս պարգևատրվեց հանրապետության գյուղատնտեսության մինիստրության և գիտա-տեխնիկական ընկերության պատվոգրով և 200 ռուբլի դրամական մրցանակով։ Պարբերաբար հրապարակվում են գյուղատնտեսության առաջավորների բյուլետեններ, ուր նրանք պատմում են իրենց ուսանելի փորձի մասին։*

*Աշխատանքի հարուստ և ուսանելի փորձ ունի Հայկավանի կոլտնտեսության կոմբայնավար, Սոցիալիստական աշխատանքի հերոս Ք. Քերոբյանը, որի անունը վաղուց դուրս է եկել շրջանի սահմաններից։ Նրա փորձը, որն արտահայտվում է կոմբայնային ագրեգատի բարձր արտադրողական, երկհերթ և անխափան աշխատանքն ապահովելու, հացահատիկն անկորուստ հա-*



*վաքելու և վառելիքի ու պահեստամասերի խնայողություն տալու մեջ, վաղուց դարձել է շրջանի մյուս կոմբայնավարների սեփականությունը։ Նրա արժանի հետևորդները շատ են։*

*Առաջավոր փորձը լայնորեն տարածելու և արմատավորելու նպատակով կուսշրջկոմը տնտեսությունների ղեկավարների, մասնագետների և կուսկազմակերպությունների քարտուղարների սեմինար-խորհրդակցությունները, գյուղատնտեսական համալսարանների պարապմունքները հաճախ անցկացնում է առաջավոր տնտեսություններում։ Դրանց մասնակիցները մոտիկից ծանոթանում են աշխատանքի կազմակերպման առաջավոր մեթոդներին, սոցիալիստական մրցության գործի դրվածքին, ձեռք բերած հաջողություններին և իրենց հետ շատ ուսանելի բան են տանում։*

*Մրցության արդյունքները, առաջավոր փորձի արմատավորման հարցերը պարբերաբար քննարկվում են սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, կոլեկտիվների արտադրական խորհրդակցություններում և կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, իսկ երբեմն նաև՝ շրջկոմի պլենումում։ Ժողովներում էլ որոշվում են առաջավորները, մրցության հաղթողները, նշվում նրանց խրախուսելու միջոցները։*

*Մրցության շնորհիվ շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները քայլում են վերելքի ճանապարհով, բազմապատկում հանրային հարստությունը։ Գյուղի մարդկանց հերոսական աշխատանքը բարձր է գնահատվում։ Սոցիալիստական պարտավորությունները բարձր ցուցանիշներով կատարելու համար 1968 թ. շրջանը նվաճեց ՍՍՀՄ Մինիստրների սովետի ու ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը և 10 հազար ռուբլի դրամական առաջին մրցանակը։*

*1969 թ. բացառիկ անբարենպաստ տարի էր գյուղատնտեսության համար, սակայն Շիրակի աշխատավորները ջանք չխնայեցին հաղթահարելու դժվարությունները, պատվով կատարելու ստանձնած պարտավորությունները։ Պետությանը առաջադրանքից դուրս հանձնվեցին մեծ քանակությամբ հացահատիկ, բանջարեղեն, միս, կաթ, ձու և գյուղատնտեսական այլ մթերքներ։*

*Առանձին տնտեսություններ 1969 թ. առավել բարձր ցուցանիշների հասան։ Օրինակ, Հովունիի կոլտնտեսությունում վերջին տարիներին կրկնապատկվել և եռապատկվել է գյուղատնտեսական մթերքների արտադրությունը։ Գերակատարվել են նաև պետությանը գյուղատնտեսական մթերքներ վաճառելու պարտավորությունները։ Կոլտնտեսությունը հաջողությամբ է կատարել նաև ընթացիկ տարվա առաջին եռամսյակի սոցպարտավորությունները։ Այն հաճախ է շահում շրջկոմի և շրջսովետի փոխանցիկ դրոշը։ Վերջերս կոլտընտեսությանը հանձնվեց ՀԿԿ Կենտկոմի, հանրապետության Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվոգիրը։ Այստեղ հաջողությունները կայուն են։ Դրանք բացատրվում են սոցիալիստական մրցության խելացի կազմակերպմամբ, բարոյական ու նյութական խրախուսանքի միջոցների ճիշտ կիրառմամբ։ Կոլտնտեսությունում ստեղծագործ սոցիալիստական մրցության մեջ ընդգրկված են բոլորը, մրցությունը կրում է գործարար բնույթ, ժամանակին ամփոփվում են արդյունքները, խրախուսվում առաջավորները։*

*Հացիկի սովխոզը երրորդ անգամ անընդմեջ շահում է ՍՍՀՄ գյուղատընտեսության մինիստրության և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը։ 1969 թ. բարձր ցուցանիշների և սոցիալիստական պարտավորությունների կատարման համար տնտեսությունն արժանացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի լենինյան հոբելյանական պատվո-*

գրին։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում նույնպես սովխոզը հասել է բարձր ցուցանիշների։ 1969 թ. առաջին եռամսյակի համեմատությամբ, զգալիորեն ավելացել է կաթի, մսի ու ձվի արտադրությունը։ Պետությանը մսի հանձնման առաջին եռամսյակի պարտավորությունը կատարվել է 330, կաթինը՝ 131,4, ձվինը՝ 485 տոկոսով։

Սոցիալիստական պարտավորությունները հաջողությամբ են կատարում նաև Մարմաշենի, Արևիկի, Ղարիբջանյանի, Շիրակի, Վահրամաբերդի, Կառնուտի կոլտնտեսությունները, Ջրառատի սովխոզը։

Տարիներ առաջ Ախուրյանը համարվում էր զուտ գյուղատնտեսական շրջան։ Այժմ իրենց համբավով հանրապետությունում հայտնի են գյուղական շինարարության մինիստրության № 4, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության № 2 տրեստները և № 6 ճանապարհաշինական վարչությունը։ Շինարարական այս կազմակերպություններում լավ գործերը շատ են։ Նրանք 1969 թ. տարեկան և 1970 թ. առաջին եռամսյակի սոցիալիստական պարտավորությունները պատվով կատարեցին։ Բավական է նշել, որ № 6 շինվարչության կոլեկտիվը 6 անգամ նվաճել է ՀՍՍՀ Մինիստրների սովետի խճուղային ճանապարհների գլխավոր վարչության և ճյուղային արհմիության Կենտկոմի փոխանցիկ դրոշը և առաջին կարգի դրամական մրցանակը, իսկ ընթացիկ տարում արժանացել ՀԿԿ Կենտկոմի, Հայաստանի Գերագույն սովետի նախագահության և ՀԱՄԿԽ-ի՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ պատվոգրի և «Աշխատանքի կուլտուրայի» համար ՀՍՍՀ Մինիստրների սովետի դիպլոմին։

Շրջանային կոմիտեն այսուհետև էլ առանձնահատուկ ուշադրություն կնվիրի աշխատավորների շրջանում ծավալված սոցիալիստական մրցությանը, դրան կհաղորդի գործարար բնույթ։ Այդ նպատակով նախատեսել ենք կիրառել բարոյական ու նյութական խրախուսման նոր միջոցներ, է՛լ ավելի բարելավել մրցության արդյունքների հրապարակայնությունը, առաջավոր փորձի և գիտության նվաճումների պրոպագանդումն ու արմատավորումը։

Ի տարբերություն նախորդ տարիների, մրցության արդյունքները որոշելիս, հաշվի կառնվեն հասարակական կարգ ու կանոնի և սոցիալիստական սեփականության պահպանության հարցերը։ Նախատեսվում է ուժեղացնել կապը և փոխայցելությունները Ռոստովի մարզի Մյասնիկյանի շրջանի հետ, որը, փորձի փոխանակումից, նորն ու առաջավորն ընդօրինակելուց բացի, կնպաստի հայ և ռուս ժողովուրդների ինտերնացիոնալ կապերի ամրապնդմանը։

Հայ ժողովուրդը նախապատրաստվում է նշելու իր վերածննդի կես դարը։ Կրկնակի հոբելյանական տարին մեզ պարտավորեցնում է՝ նոր ուժով բորբոքել լենինյան գաղափարներով ծնունդ առած սոցիալիստական մրցությունը և աշխատանքային ու քաղաքական խանդավառության պայմաններում ժամկետից շուտ նվաճել հնգամյակի բնագծերը։

Հ. Հ. ՏՈՆՈՅԱՆ
ՀԿԿ Ախուրյանի շրջկոմի քարտուղար



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆԸ ՀԱՄԸՆԹԱՑ

Ս. Լ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

Երևանի Կիրովի անվան քիմիական կոմբինատի
դիրեկտոր, տեխնիկական գիտությունների թեկնածու

Սովետական Հայաստանի արդյունաբերության զարգացման գործում բացառիկ դեր է խաղացել ու խաղում է Երևանի Ս. Մ. Կիրովի անվան քիմիական կոմբինատը։ Այն կառուցվել է առաջին հնգամյակում և հետագա տարիներին լայնորեն ընդարձակվել ու դարձել է ո՛չ միայն հանրապետության, այլև Սովետական Միության խոշոր ձեռնարկություններից մեկը։ Արտադրության ելքի հետ մեկտեղ այստեղ պատրաստվել են տարբեր մասնագիտությունների որակյալ կադրեր։

Արտադրության նշանակալից ընդլայնումը քիմկոմբինատում, որ մեծ տեսակարար կշիռ ունի էլեկտրաէներգիայի, ջերմության ու բնական գազի սպառման տեսակետից, նպաստեց հանրապետության էներգետիկայի արագ զարգացմանը և նոր մագիստրալային գազամուղների կառուցմանը։

Նաիրիտի, կաուստիկ սոդայի և այլ նյութերի արտադրության եռապատկման հետ մեկտեղ ստեղծված են նոր կարողություններ, որոնք բավարարում են քիմիական ձեռնարկությունների՝ ացետիլենի և իներտ գազի, սննդի ու մսի-կաթի ձեռնարկությունների՝ ածխաթթու գազի և չոր սառույցի, շին-մոնտաժային կազմակերպությունների՝ թթվածնի աճող պահանջները։

Լատեքսների արտադրության ծավալի մեծացման և ասորտիմենտի ընդլայնման շնորհիվ հնարավոր դարձավ առավել չափով բարելավել լցվածքների, թաղանթակազմիչների ու սոսինձների պահանջը՝ կաշվի-կոշկեղենի արդյունաբերության մեջ։ Դա նպաստեց կաշվի մշակման արտադրական պրոցեսների և կոշկեղենի արտադրության մեքենայացմանը, արտադրանքի որակի բարելավմանը և ինքնարժեքի իջեցմանը։ Բացի այդ, նոր ջրատարների կառուցումը հնարավորություն ընձեռեց արդյունաբերության կարիքներն ապահովել խմելու համար ոչ պիտանի ջրով, իսկ ազատված մաքուր ջուրը տրամադրել Երևանի բնակչությանը։ Այժմ մայրաքաղաքում ջրի պահանջմունքի կեսից ավելին բավարարվում է քիմիական արդյունաբերությունում նախկինում օգտագործվող ջրի հաշվին։

Հանրապետության բազմաճյուղ արդյունաբերության արագ զարգացման բոլոր էտապներում Երևանի քիմկոմբինատը պահպանում է իր առաջավոր դիրքերը։ Դա աշխատանքի չթուլացող թափի, ներքին ռեզերվների օգտագործ-

ման և տեխնիկական առաջադիմության համար մղվող պայքարի արգասիք է։

Կոմբինատը հատկապես կերպարանափոխվեց իր վերակառուցման ու ընդլայնման շրջանում, պայթման առումով վտանգավոր արտադրությունների դժվարին պայմաններում։ Վերակառուցման նախագծերում տեխնիկական լուծումների հիմքում դրվեցին մշակված ու փորձարկված ավելի բարձր արտադրողական սարքավորումներ ու տեխնոլոգիական սխեմաներ, որոնք ապահովում են արտադրության տեխնիկական ու տնտեսական մակարդակի հետագա բարձրացումը։ Միայն վերջին տասնամյակում քիմկոմբինատի ընդլայնմանն ու վերակառուցմանը հատկացվել է 110 միլիոն ռուբլի։

Նաիրիտի նկատմամբ ժողովրդական տնտեսության հարաճուն պահանջը արդյունք է ավելի քան 15 տիպի յուրատեսակ էմուլսիական կաուչուկների ու լատեքսների մշակման ու արդյունաբերական յուրացման, որոնք հաջողությամբ կիրառվեցին ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և խիստ կարևոր են մի շարք իրերի արտադրության համար։ Զարգացած կապիտալիստական երկրներում ևս նկատվում է քլորոպրենային կաուչուկի արտադրության ընդլայնման և դրա սպառողների պահանջմունքներին համապատասխան նոր մակնիշների ստեղծման տենդենց։ Եթե մինչև վերջին տասնամյակն արտասահմանում քլորոպրենային կաուչուկ-նեոպրեն էր թողարկվում միայն ԱՄՆ-ում, ապա այժմ այն արտադրվում է նաև ԳՖՀ-ում, Ճապոնիայում, Անգլիայում ու Ֆրանսիայում։ Նեոպրենի որոշ տեսակներ ունեն շատ արժեքավոր որակական ցուցանիշներ։ Հաղորդագրությունների համաձայն, նոր ձեռնարկություններ կառուցելիս էական փոփոխություններ են մտցվել պրոցեսների ապարատուրային ձևավորման մեջ, փոխվել է և հումքային բազան։ Այսպես. Ֆրանսիայում և ԱՄՆ-ում քլորոպրենային կաուչուկի համար ացետիլենի փոխարեն հումք է ծառայում բուտադիենը։

Այդ ամենը մեր, հատկապես պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի կոլեկտիվի առջև հրամայական խնդիր է դնում՝ բարձրացնել գիտական ուսումնասիրությունների մակարդակը և ավելի նպատակասլաց աշխատանք կատարել քլորոպրենի նոր պոլիմերների և հարապոլիմերների ռեցեպտուրաների ստեղծման բնագավառում, բավարարելու համար ժողովրդական տնտեսության ռետինա-տեխնիկական, կաբելային, կաշվի-կոշկեղենի և այլ ճյուղերի աճած պահանջմունքները։

Տեխնիկական առաջադիմության տեսակետից կոմբինատի կոլեկտիվի համար չափազանց բեղմնավոր էին ընթացիկ հնգամյակի անցած չորս տարիները։ Նաիրիտի, կաուստիկ սոդայի, հերբիցիդի, քիմիապես մաքուր աղաթթվի արտադրական կարողությունների հաջող յուրացման, արտադրական պրոցեսների ավտոմատացման, քացախաթթվի, պրոպինաթթվի և մրջնաթթվի արտադրամասերի մեծ կոմպլեքսի կառուցման տարիներ էին դրանք։ Նախատեսված է հնգամյակի ընթացքում ապրանքային արտադրանքն ավելացնել 1,9 անգամ. միայն 1967 թ. նաիրիտի արտադրությունը, 1966 թ. համեմատությամբ, ավելացավ այնքան, որքան արտադրվել էր ամբողջ 1950 թ. ընթացքում։ Բարձր պարտավորությունների կատարման համար վճռական գործոն հանդիսացավ ացետիլենի արտադրությունը բնական գազից՝ ջերմաթթթվային պիրոլիզի մեթոդով։ Կոմբինատի կոլեկտիվն առաջին անգամ այդպիսի ացետիլեն ստացավ հայրենական սխեմայով և հայրենական սարքավորումներով։ Միանգամայն ակներև է, որ նաիրիտի արտադրության կառուցվող կարողությունները կարող էին օգտագործվել միայն անհրաժեշտ հումքային բազայի ստեղծման դեպքում։



Ողջ կոմբինատի գործունեությունն ի սպաս էր դրված պիրոլիզային ացետիլենի արդյունաբերական արտադրության իրագործմանը, որի համար անհրաժեշտ էր լուծել այդ պրոցեսի տեխնոլոգիական ու կոնստրուկտիվ ձևավորման հետ կապված (խտացված ացետիլենի անջատումը և դրա օգտագործումը նաիրիտի արտադրության մեջ) մի շարք բարդ հարցեր։ Հարյուրավոր ինժեներներ, տեխնիկներ ու որակյալ բանվորներ անդուլ ուսումնասիրում էին այդ բարդ պրոցեսի նրբությունները, փոփոխում ապարատների կառուցվածքը, ավտոմատ կառավարման սխեմաները։

Ացետիլենի հայրենական արտադրություն ստեղծելու ժողովրդատնտեսական կարևոր խնդիրը մեր կոլեկտիվը լուծեց ազոտային արդյունաբերության պետական ինստիտուտի, օրգանական քիմիայի ու տեխնոլոգիայի պետական միութենական գիտահետազոտական ինստիտուտի՝ Բորիսլավի մասնաճյուղի մասնագետների հետ միասին։

Բնական գազի մեջ ծանր ու դյուրավառ ածխաջրածինների առկայության պայմաններում արդյունավետ ու անվտանգ աշխատանքն ապահովելու գործում վճռական դեր խաղաց բնական գազի կազմությունը կայունացնելու նպատակով տաքացնելուց առաջ նրա մեջ թթվածին ներարկելու վերաբերյալ կոմբինատի մի խումբ ինժեներների առաջարկության իրագործումը (1968 թ.)։ Դրա շնորհիվ հեշտ բռնկվող ածխաջրածինները հասցվեցին կայուն միացությունների, 2—2,5 անգամ ավելացավ ացետիլենի արտադրությունը, 2 անգամ իջավ դրա ինքնարժեքը։

Ացետիլենի արտադրության առաջին երեք ագրեգատների վերակառուցման ժամանակ ընդունված առանձին տեխնիկական լուծումների ընդհանրացման շնորհիվ կոմբինատում մշակվեց նոր նախագիծ, որի համաձայն կառուցվեցին հաջորդ ագրեգատները։ Կոնստրուկտիվ նոր լուծումների և ապարատների ավելի լավ հարադասման միջոցով այս ագրեգատների արտադրողականությունն առաջին երեքի համեմատությամբ բարձրացավ 30 տոկոսով, զգալիորեն բարելավվեցին սպասարկող անձնակազմի աշխատանքի պայմանները, կրճատվեցին արտորբենտի, բնական գազի և թթվածնի տեսակարար ծախսումները։ Այդ նոր նախագծի հիման վրա ներկայումս վերակառուցվում են նաև առաջին երեք ագրեգատները։

Երբ բարդ պրոցեսի յուրացման հետ կապված հիմնական դժվարությունները արդեն հետևում են, կիրովցիները չեն թուլացնում ագրեգատների արտադրողականության, տեխնիկա-տնտեսական ցուցանիշների հետագա բարձրացման համար ծավալվող աշխատանքը։ Վերջին տարիներին տեխնիկայի կատարելագործման ու աշխատանքի արդյունավետության բարձրացման մասին են վկայում հետևյալ ցուցանիշները։ 1968 թ., 1967 թ. համեմատությամբ, պիրոլիզային ացետիլենի արտադրությունն ավելացել է 72, իսկ 1969 թ., 1968 թ. համեմատությամբ՝ 31 տոկոսով, ընդ որում, զգալիորեն իջել են բնական գազի և էներգետիկ ծախսումների տեսակարար նորմաները։ Միայն պիրոլիզային ացետիլենի ինքնարժեքի իջեցման հաշվին արտադրանքի արտադրության վրա կատարված ծախսերը կոմբինատում 1969 թ, 1968 թ. համեմատությամբ, պակասել են 2 միլիոն 327 հազար ռուբլով։

Նախատեսված կազմակերպա-տեխնիկական միջոցառումների շնորհիվ բնական գազից ստացվող ացետիլենի արտադրությունը 1970 թ. կավելանա

31 տոկոսով, իսկ դրա արտադրության վրա կատարվող ծախսերի հետագա կրճատման շնորհիվ կտնտեսվի մոտ 5 միլիոն ռուբլի։

Ացետիլենի արտադրության մեջ տեղի ունեցած տեխնիկական առաջադիմության կարևոր արդյունքներից է և այն, որ արտադրական պրոցեսների հեռուստավարումն ապահովող նորագույն ավտոմատ սարքերով հագեցած այդ արտադրությունը անձնակազմն ազատում է կալցիումի կարբիդից ացետիլենի ստացման հետ կապված ծանր ու լարված ֆիզիկական աշխատանքից։

Բնական գազից ստացվող ացետիլենի արտադրության սիստեմատիկ ավելացումն արդեն այս տարի հասցրեց կալցիումի կարբիդի արտադրության կրճատման և հնարավորություն կընձեռի առաջիկա տարիներին դադարեցնելու այն. դրանով իսկ Երևանի բնակիչները կազատվեն կարբիդի վառարանների ծխից ու փոշուց։ Նոր պրոցեսների յուրացմամբ և դրանց տեխնոլոգիական կատարելագործմամբ կիրովցիները համակողմանի նպաստում են քլորոպրենային կաուչուկի ու պիրոլիզային ացետիլենի արտադրության զարգացմանը մեր երկրում և սոցիալիստական համագործակցության երկրներում։ Կոմբինատի մասնագետների ակտիվ մասնակցությամբ աշխատանքներ են կատարվում՝ Չեխոսլովակիայում ստեղծելու քլորոպրենային կաուչուկի արտադրություն։ 1969 թ. քլորոպրենային կաուչուկ սկսեց արտադրվել Ուսոլի (Իրկուտսկի մարզ) քիմկոմբինատում, որը կառուցվել է Երևանի քիմկոմբինատի բազմամյա փորձի հիման վրա։ Քիմկոմբինատի ինժեներա-տեխնիկական տասնյակ որակյալ աշխատողներ ու ապարատավարներ մասնակցեցին այդ արտադրության գործարկմանը։ Ուսոլի քիմիագործները ղեկավարման բարդ պրոցեսներին տիրապետել են նույնպես մեզ մոտ։

Նույն թվականին Նևինոմիսկի քիմիական կոմբինատում հաջողությամբ շահագործման հանձնվեց պիրոլիզային ացետիլենի արտադրությունը, որի նախագծի հիմքում նույնպես դրված էին այդ պրոցեսի յուրացման ժամանակ մեզ մոտ ընդունված տեխնիկական լուծումները։

Ձեռնարկության տեխնիկա-տնտեսական ցուցանիշների բարելավման գործում մեծ ավանդ են ներդրել կոմբինատի գյուտարարներն ու ռացիոնալիզատորները։ Հնգամյակի չորս տարիներում ներդրված առաջարկություններից ստացվել է 4 միլիոն 256 հազար ռուբլի տնտեսական օգուտ։

Արտադրության կատարելագործման բնագավառում բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ցուցաբերած հարաճուն ակտիվության մասին է վկայում ներդրած նրանց առաջարկներից ստացված տնտեսական օգուտի սիստեմատիկ աճը։ Եթե հնգամյակի առաջին երկու տարում ռացիոնալիզացիայից ստացված խնայողությունը կազմեց 1 միլիոն 633 հազար ռուբլի, ապա հաջորդ երկու տարում այն հասավ 2 միլիոն 623 հազարի։ Դրա գլխավոր աղբյուրն էին բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների մեծ կոլեկտիվի ձեռք բերած խոր գիտելիքների և բարդ պրոցեսների կառավարման նորույթներին տիրապետելը։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման, թողարկվող արտադրանքի որակի բարելավման ու անվտանգ արտադրապրոցեսների ապահովման համար լուրջ ուշադրություն է նվիրվում արտադրության անալիտիկ վերահսկողության կատարելագործմանն ու ավտոմատացմանը։ Կենտրոնական լաբորատորիան և վերահսկող չափիչ սարքերի արտադրամասը վերջին տարիներս այդ բնագավառում որոշակի աշխատանք են կատարել։ Արմատավորված են քրոմատոգրաֆիական տարրալուծման եղանակներ՝ քլորոպրենի մեջ



վինիլացետատի, հեղուկ թթվածնի, ազոտի մեջ և օդում՝ ածխաջրածինների միկրոխառնուրդները որոշելու, քլորի ավտոմատ տարրալուծման համար և այլն։ Այդ աշխատանքներն առանձին պարամետրերի գրանցումից դրանց ավտոմատ կառավարմանն անցնելու առաջին քայլերն են, որոնք կհանգեցնեն անալիտիկ վերահսկողությամբ զբաղված անձնակազմի և ապարատավարների զգալի կրճատման, իսկ ամենագլխավորը՝ արտադրության լավագույն ռեժիմների հաստատուն պահպանման։

Արդյունաբերության և, հատկապես, քիմիական արդյունաբերության տեխնիկական առաջադիմության գործում բացառիկ նշանակություն ունի արտադրական պարբերական պրոցեսներից անընդհատին անցնելը, որը պայմաններ է ստեղծում արտադրության ավտոմատացման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման համար։

Քլորոպրենային կաուչուկի արտադրության համաշխարհային պրակտիկայի գլխավոր պրոցեսներից մեկը՝ քլորոպրենի պոլիմերացումը, մինչև վերջին ժամանակներս կատարվում էր պարբերական գործողության ապարատներում, ապա պոլիմերը լցվում էր հատուկ տարողությունների մեջ՝ միատարր կաուչուկ ստանալու համար։

Անընդհատ պրոցեսի անցնելու գլխավոր խոչընդոտն այն էր, որ քլորոպրենն իր պոլիմերացման պրոցեսում առաջացնում է խողովակաշարերի և ապարատուրայի խցանում։ Երբ զանգվածում տեղի ունեցող պոլիմերացման պրոցեսը փոխարինվեց ավելի առաջադիմական-էմուլսիոն պրոցեսով (որի տեխնոլոգիան մշակվել է կոմբինատի կենտրոնական լաբորատորիայում), տեխնիկական հնարավորություններ ստեղծվեցին պոլիմերացման պրոցեսն անընդհատ եղանակի փոխադրելու համար։ Կոմբինատի պոլիմերացման արտադրամասի և կենտրոնական լաբորատորիայի կոլեկտիվի՝ հատկապես այդ նպատակով ստեղծված փորձա-արդյունաբերական սարքավորմամբ կատարած փորձերը հուսալի արդյունք տվեցին։ Ապարատուրայի անցուրդի տևողությունը հասավ 6—8 օրվա։

Հետագայում պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտում կատարվեցին գիտահետազոտական ու փորձնական աշխատանքներ և պոլիմերացման ռեցեպտուրայում արվեցին այնպիսի փոփոխություններ, որոնք ապահովում են տեխնոլոգիական գծի ավելի քան մեկամսյա անընդհատ ու կայուն շահագործումը։ Պոլիմերների համամիութենական գիտահետազոտական ինստիտուտի մշակած տեխնոլոգիայի հիման վրա 1969 թ. վերակառուցվեց քլորոպրենի պոլիմերացման արտադրամասը և ավտոմատացվեցին այդ պրոցեսները։ Ամբողջ արտադրությունն անընդհատ պոլիմերացման սխեմայի փոխադրելու շնորհիվ զգալի չափով բարելավվեց նաև արտադրամասի մթնոլորտը։ Պոլիմերացման պարբերական եղանակի դեպքում (4—12 ժամ տևող պրոցես) ապարատուրայի բեռնավորման, բեռնաթափման և մաքրման ժամանակ հնարավոր չէր կանխել քլորոպրենի գոլորշիների արտամղումը արտադրամասի շենքը։ Քլորոպրենի պոլիմերացման անընդհատ պրոցեսի կենսագործումը տեխնիկական առաջադիմության նոր բնագիծ է քլորոպրենային կաուչուկի՝ նաիրիտի արտադրության մեջ։

Տեխնիկական հեղափոխության մեր դարում ոչ մի ձեռնարկություն չի կարող համաքայլ ընթանալ ժամանակի հետ, եթե նրա կադրերը սիստեմատիկաբար չբարձրացնեն իրենց գիտելիքների մակարդակը, չօգտագործեն գի-

տության ու տեխնիկայի նվաճումները, աշխատանքի կազմակերպման առաջավոր փորձը և համանման ձեռնարկություններում ընդունված առաջադիմական տեխնիկական լուծումները։ Ուստի, կադրերի պատրաստման ու նրանց որակավորումը բարձրացնելու նպատակով ձեռնարկվող միջոցները՝ դասախոսությունների, սեմինարների հետ մեկտեղ, կոմբինատի մասնագետները բրիգադայով կամ անհատական կարգով գործուղվել են Սովետական Միության, Լեհաստանի, Չեխոսլովակիայի, Անգլիայի, մի շարք ձեռնարկություններ՝ արտադրական պրոցեսների կատարելագործման ու ավտոմատացման, վերանորոգման աշխատանքների կազմակերպման և մեզ հետաքրքրող այլ հարցերի բնագավառում եղած դրական փորձն ուսումնասիրելու համար։ Տեղեկատու գրականության տվյալների և փորձի փոխանակման հիման վրա միայն 1969 թ. կոմբինատում արմատավորվել են ավելի քան 150 կազմակերպա-տեխնիկական միջոցառում։

Կոմբինատի տեխնիկա-տնտեսական ցուցանիշների վրա չափազանց բարերար ներգործություն ունեցավ սարքերի ու սարքավորումների, ավտոմատացման սխեմաների այն նոր կոնստրուկտիվ լուծումների օգտագործումը, որ կիրառված են Նևինոմիսկի և Լիսիչանսկի քիմկոմբինատներում՝ ացետիլենի արտադրության մեջ։ Փորձի փոխանակման մի շարք միջոցառումներ են նախատեսված 1970 թ. նոր տեխնիկայի պլանով (աղաջրի կարբոնացման տեխնոլոգիական սխեմայի փոփոխումը, ավտոցիստեռններով ածխաթթվի փոխադրումը և այլն)։

Կոմբինատի արագ զարգացումն ապահովելու գործում մեծ դեր խաղաց տնտեսական ռեֆորմը։ 1967 թ. պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու կապակցությամբ, պահանջվում էր առավելագույն չափով օգտագործել արտադրության վերակառուցման շրջանում ավելացած հիմնական ֆոնդերը, իջեցնել հումքի, նյութերի, աշխատանքային և այլ ծախսումների տեսակարար կշիռը, մի բան, որ ապահովում էր արտադրության եկամտաբերության բարձրացումը և հնարավորություն ընձեռում կոմբինատի աշխատավորների նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների իրագործման և նրանց համար բնակարանների կառուցման ֆոնդ ստեղծելու։

Արտադրության համակողմանի զարգացման, հիմնական ու շրջանառու միջոցների առավել ռացիոնալ օգտագործման ասպարեզում կոլեկտիվի շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով մշակված միջոցառումները կարճ ժամանակամիջոցում դրական արդյունք տվին։ 1967 թ. համեմատությամբ, 1969 թ. մեկ ռուբլու ապրանքային արտադրանքի ծախսերը պակասեցին 4 կոպեկով, իսկ շահույթը կրկնապատկվեց։ Արտադրության եկամտաբերության բարձրացման շնորհիվ հնարավոր դարձավ գրեթե երեք անգամ ավելացնել ձեռնարկության կոլեկտիվի նյութական խրախուսման, արտադրության զարգացման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության համար նախատեսված ֆոնդերը։

Նշված միջոցառումների հաջող կենսագործումն արդյունք էր այն բանի, որ դրանց մշակմանն ու իրականացմանն ակտիվ մասնակցեցին կոմբինատի բոլոր արտադրամասերի ու ծառայությունների ինժեներա-տեխնիկական անձնակազմը և բանվորները. նրանց աշխատանքային վերելքը խթանում էին նոր ռեֆորմի նյութական ու բարոյական ազդակները։

Չհանգստանալով ձեռք բերած հաջողություններով և խորացնելով տեխ-



նիկական առաջադիմության պրոցեսը, կոմբինատի կոլեկտիվը պարտավորվել է ընթացիկ տարում, 1969 թ. համեմատությամբ, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի նոր տեսակների յուրացման հաշվին ապրանքային արտադրանքն ավելացնել 16, իսկ շահույթը՝ 19 տոկոսով։

Հնգամյա պլանը հաջողությամբ կատարելու համար կարևոր է պլանով նախատեսված չափով քացախաթթվի արտադրության ապահովումը։ Ապրիլին հիմնականում ավարտվեցին այդ արտադրության շինմոնտաժային աշխատանքները։ Ժողովրդա-տնտեսական մեծ նշանակություն ունեցող արտադրանքի շուտափույթ արտադրությունն ապահովելու նպատակով շահագործող անձնակազմը (որոնց զգալի մասը կոմբինատի որակյալ մասնագետներ են), առանց սպասելու բոլոր աշխատանքների ավարտին, արդեն ձեռնամուխ է եղել գործարկման-կարգավորման աշխատանքներին։

Քացախաթթուն, մրջնաթթուն և պրոպինաթթուն, որ Սովետական Միությունում առաջին անգամ արտադրվում են բենզինների թթվեցմամբ, զգալիորեն ավելի ցածր ինքնարժեք կունենան, քան ացետիլենից և մյուս ջրածիններից ստացվող թթուները։

«Պոլիվինիլացետատ» գործարանը ացետիլցելյուլոզ արտադրելու համար հեռավոր տնտեսական շրջաններից բերվող քացախաթթվի փոխարեն, այն կստանա մեր կոմբինատից։ Դրա օգտագործմամբ զգալիորեն կբարելավվեն այդ ձեռնարկության, ինչպես և Կիրովականի ացետատային մետաքսի գործարանի տեխնիկա-տնտեսական ցուցանիշները. վերջինիս արտադրության հիմնական հումքն է ացետիլցելյուլոզը։

Պրոպինաթթուն, մրջնաթթուն, ինչպես և քացախաթթուն, որոնց կարիքը երկրում շատ մեծ է, կօգտագործվեն արդյունաբերության քիմիական, դեղագործական, սննդի և այլ ճյուղերում, ինչպես նաև գյուղատնտեսական արտադրության մեջ՝ երկար ժամանակ հացահատիկն անվնաս պահելու համար։

Կենսագործելով ՍՄԿԿ Կենտկոմի դեկտեմբերյան պլենումի (1968 թ.) որոշումները, կոմբինատի կոլեկտիվը նախապատրաստական աշխատանք է կատարում գործող արտադրությունների ընդլայնման ու վերափոխման և նորերի ստեղծման համար։ Կառուցվում է մեթանոլի, ամինոպլաստի, ֆորմալինի և այլ արժեքավոր նյութերի արտադրության կոմպլեքսը՝ պլաստմասսաներ արտադրելու, պոլիմերային և այլ նոր նյութեր սինթեզելու համար։ Այդ արտադրությունների ստեղծման հումքային բազան պիրոլիզային ացետիլենի արտադրության պրոցեսում ստացվող սինթեզ-գազն է։ Ներկայումս այդ արժեքավոր քիմիական հումքը Երևանի ջերմաէլեկտրակայանն օգտագործում է որպես վառելանյութ։ Ելնելով տնտեսական նպատակահարմարությունից, վերադաս օրգանների կողմից որոշված է Մասիսի պլաստմասսաների քիմիական կոմբինատը ներառնել Երևանի քիմկոմբինատի կազմի մեջ։ Այդ նույն որոշմամբ նախատեսվում է նաիրիտի արտադրության կարողությունն ավելացնել 30 տոկոսով, հաշվի առնելով ժողովրդական տնտեսության մեջ դրա զգալի կարիքը, եղած կարողությունների ավելի ռացիոնալ օգտագործման հնարավորությունը և մեր կադրերի գիտական ու արտադրական պատրաստականությունը։ Նախատեսվում է քլորոպրենի պոլիմերացման ու կաուչուկի անջատման նոր արտադրամասեր կառուցել նաև № 2 հրապարակում (Մասիսի պլաստմասսաների նախկին կոմբինատ)։

Նաիրիտի արտադրությունը կընդլայնվի առավել առաջադիմական տեխնոլոգիայով, որը կապահովի քլորոպրենային կաուչուկի նոր, կայուն տեսակ-

ների մեծ ասորտիմենտի ստացումը, կընդարձակի դրանց կիրառման ոլորտը և կբարելավի դրանց հիման վրա թողարկվող արտադրանքի որակը։ Նոր արտադրամասերում նախատեսվում է չպոլիմերացված քլորոպրենի ապագազացում, որի շնորհիվ ավելի ռացիոնալ կօգտագործվի հումքը, կբարելավվեն աշխատանքային պայմանները։ Նոր կոմպլեքսը շահագործման հանձնելու նպատակով կատարվելիք աշխատանքների ծավալը պարզ պատկերացնելու համար բավական է ասել, որ դրա նախագծային արժեքը գերազանցում է Երևանի քիմկոմբինատի այժմյան հիմնական ֆոնդերի արժեքը։

Ինչպես ժամանակին «ՍԿ Սովպրեն» կոմբինատի կառուցմանը հետևեց կիրովցիների ավանի ստեղծումը, որը դարձավ Երևանի բարեկարգ շրջաններից մեկը, այնպես էլ Մասիսի կոմպլեքսի կառուցմանը զուգահեռ վեր կխոյանան քիմիկոսների ժամանակակից շենքերը։

Բարդ խնդիրների հաջող լուծման համար անհրաժեշտ է ավելի բարձրացնել կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի պատասխանատվությունը, նրանց տեխնիկական պատրաստության մակարդակը, ամրապնդել կարգապահությունն արտադրական բոլոր օղակներում։

---

## ԵՐԿՐԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԲԱՐՁՐ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ՀԱՄԱՐ

Հաղթահարելով կլիմայական անբարենպաստ պայմանների հետևանքով առաջացած դժվարությունները, Թալինի շրջանի գյուղատնտեսության աշխատողները վերջին երեք տարում (1967—1969 թթ.) բարձրացրին (չնայած աննշան չափով) գյուղատնտեսության կուլտուրաների բերքատվությունը։ Այսպես, հացահատիկի միջին բերքատվությունն աճեց 0,2, ծխախոտինը՝ 0,5, խաղողինը՝ 1,6, պտղինը՝ 17,5, բազմամյա խոտինը՝ 1,3 ցենտներով։ Շրջանի այգեգործական 4 սովխոզներում խաղողի բերքը 1969 թ. հասավ 7040 տոննայի, պտղինը՝ 1839, որը 2 և ավելի անգամ շատ է, քան 1966 թ.։

Այդ ժամանակամիջոցում շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում որոշ չափով աճեց անասնապահական մթերքների արտադրությունը։ Այսպես, մսի արտադրությունը վերջին երեք տարում ավելացավ 515, կաթինը՝ 115, բրդինը՝ 13 տոննայով։

Գյուղատնտեսական մթերքների որոշ աճը, դրանց իրացումը, ինչպես նաև վերջին տարիներին հացահատիկի, մսի, կաթի ու խաղողի պետական գնման գների բարձրացումը զգալիորեն նպաստեցին կոլտնտեսությունների ու սովխոզների դրամական եկամուտների ավելացմանը։ Միայն մթերման գների բարձրացումից շրջանի տնտեսությունների եկամուտներն 1967 թ. ավելացան 659 հազար ռուբլով, իսկ անցյալ տարի՝ 940 հազարով։

Տարեցտարի մեծանում է Արագածի, Արտենիի, Քարակերտի, Օրջոնիկիձեի անվան այգեգործական սովխոզների համախառն արտադրանքի տեսակարար կշիռը շրջանի համախառն արտադրության մեջ։ Օրինակ, եթե այդ սովխոզների դրամական եկամուտները 1965 թ. 1,3 մլն ռուբլի էր, ապա 1969-ին այն հասավ 3,5 մլն-ի։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ Թալինի շրջանի կուսակցական, տնտեսական ղեկավարները, գյուղատնտեսության մասնագետները բոլոր հնարա-



վորությունները ու ռեզերվները չեն օգտագործել երկրագործության կուլտուրան բարձրացնելու համար։ ՀԿԿ շրջկոմը, աշխատավորների դեպուտատների շրջսովետի գործկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները, տնտեսությունների ղեկավարները և գյուղատնտեսության մասնագետները չեն խորանում յուրաքանչյուր տնտեսության էկոնոմիկայի մեջ, չեն բացահայտում մի շարք կոլտնտեսությունների և սովխոզների ետ մնալու պատճառները, չեն հայտաբերում գյուղատնտեսական մթերքների բարձր ինքնարժեքը, տնտեսությունների ու ճյուղերի անշահութաբերության, ոռոգելի հողատարածությունների ցածր բերքատվության պատճառները։

Պետությունը վերջին երկու տասնամյակում շրջանի այգեգործական 4 սովխոզների ջրաշինարարական աշխատանքների, այգետնկումների ու կապիտալ շինարարության համար ներդրել է ավելի քան 38,8 մլն ռուբլի։ Շահագործման է հանձնվել Թալինի ջրանցքի առաջին հերթը, որը ոռոգում է շրջանի 10 հազար հեկտար հողատարածություն, իսկ երկրորդ հերթի կառուցմամբ կոռոգվի ևս 10 հազար հեկտար։ Ոռոգելի հողերի բազայի վրա կազմակերպվել են Արագածի, Արտենիի, Քարակերտի ու Օրջոնիկիձեի սովխոզները. այստեղ հիմնվել են 2330 հեկտար խաղողի և 1700 հեկտար պտղատու այգիներ։ Շրջանի մի շարք տնտեսություններում կառուցվել են 3 միլիոն 36 հազար խմ տարողությամբ 19 ջրամբար, որոնց շնորհիվ ջրարբիացվել են 25 հազար հեկտար արոտավայր։ Փաստորեն շրջանի կոլտնտեսությունները և սովխոզներն այժմ ունեն 21600 հեկտար կանոնավոր ու սեզոնային ջրով ապահովված ոռոգման ցանց ունեցող հողատարածություններ։ Սակայն չի կարելի ասել, թե դրանց արդյունավետ օգտագործման ուղղությամբ ամեն ինչ արված է։ Շրջանի կոլտնտեսություններում ու սովխոզներում դեռ ցածր է գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը։ Հացահատիկային կուլտուրաների բերքատվության վերջին 10 տարիների կորագիծը տատանվում է 2—14 ցենտների, բանջարբոստանային կուլտուրաներինը՝ 23—97, ծխախոտինը՝ 4—12, եգիպտացորենի կանաչ մասսայինը՝ 24—68, կերի արմատապտուղներինը՝ 10—166, բազմամյա խոտերինը՝ 13—27, իսկ միամյա խոտերինը՝ 4—58 ցենտների սահմաններում։ Միանգամայն աններելի է, երբ ոռոգելի ջրով ապահովված այգեգործական սովխոզներում ցածր է խաղողի ու պտղի բերքատվությունը։ Հնգամյակի չորս տարում այդ սովխոզներում խաղողի տարեկան միջին բերքը կազմել է 18,8, իսկ պտղինը՝ 23,2 ցենտներ։

Թալինի կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրական-տնտեսա-
կան գործունեության վերլուծությունը ցույց է տալիս, որ շրջանը ետ է մնում
գյուղատնտեսության զարգացման հնգամյա պլանի առաջադրանքներից։ Նր-
րանք չեն ապահովել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվու-
թյան, համախառն արտադրանքի, անասնապահության գլխաքանակի ու մթե-
րատվության 4 տարվա պլանային առաջադրանքների ցուցանիշները։ Դա,
ամենից առաջ, բացատրվում է նրանով, որ սկզբնական կուսկազմակերպու-
թյունները, կուսակցության շրջկոմը, գյուղատնտեսական օրգաններն անհրա-
ժեշտ աշխատանք չեն տարել երկրագործության կուլտուրան ըստ ամենայնի
բարձրացնելու համար։

Ինչպես հայտնի է, հողագործության կուլտուրան իր մեջ ընդգրկում է մի ամբողջ կոմպլեքս ագրոտեխնիկական ու կազմակերպական միջոցառումներ՝ ճիշտ ցանքաշրջանառության կիրառում, հացահատիկի ու տեխնիկական կուլտուրաների բարձր բերքատու սերմերի, գիտության նվաճումների ու առաջա-

վոր փորձի ներդրում, հանքային ու տեղական պարարտանյութերի ճիշտ օգտագործում, հողի բերրիության բարձրացում, նոր ռեզերվների ու հնարավորությունների հայտաբերում ու գործադրում, աշխատանքի կազմակերպման, տեխնիկայի արդյունավետ օգտագործման, նյութական ու բարոյական շահագրգռվածության խթանների կիրառում և այլն։

Շրջանի կոլտնտեսություններն ու սովխոզները մշակում են 10500 հեկտար հացահատիկային կուլտուրաներ. սակայն այդ տարածության մոտ 50 տոկոսում չի ցանվում բարձր բերքատու և էլիտային այնպիսի սորտեր, ինչպիսիք են՝ «Անքիստ—1», «Միրոնովսկայա—808», «Ուկրաինկա» և այլն։ Ն. Արթիկ, Ցամաքասար, Զարինջա, Սուսեր, Սաբունչի, Արեգ և այլ տնտեսություններ ստանում են 10—24 ցենտներ բերք կամ մեկուկես, երկու անգամ ավելի, քան շրջանի միջին բերքատվությունն է։ Այս կոլտնտեսություններն օգտագործում են «Անքիստ—1» և «Ուկրաինկա» բարձր բերքատու սերմեր և կիրառում են լրիվ ցանքաշրջանառություն։

Թալինի շրջանի տնտեսությունները գրեթե ոչ մի տարի չեն կատարել տեղական պարարտանյութերի դաշտ տեղափոխման առաջադրանքները։ Օրինակ՝ վերջին 3 տարիներին նախատեսված էր դաշտ փոխադրել տարեկան 32—34 հազար տոննա օրգանական պարարտանյութ, սակայն փոխադրվել է միայն դրա 65—70 տոկոսը։ Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման վրա խիստ ազդում է ցանքի, մշակության, բերքահավաքի, վնասատուների դեմ մղվող պայքարի, ոռոգման և այլ աշխատանքների ժամկետների խախտումն ու անորակ կատարումը։

Կուսակցության շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները բավարար ուշադրություն չեն դարձնում արտադրության առաջավորների փորձի, գիտության նվաճումների, աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ու մեթոդների պրոպագանդմանը և արմատավորմանը։ Այսպես, մի քանի տասնամյակ նրբագեղմ ու կիսանրբագեղմ ոչխարաբուծության զարգացման գործում համբավ էր ձեռք բերել Թալինի շրջանի Ալագյազի ոչխարաբուծական սովխոզը։ Այդ օրինակելի տնտեսությունը բարձր բրդատու և մսատու մատղաշներ մատակարարող խոշոր տոհմաբուծական փորձնական բազա էր հանրապետության գրեթե բոլոր ոչխարաբուծական տնտեսությունների համար։ Սակայն ձեռք բերած այդ նվաճումները արագածյան ցեղախմբի ոչխարաբուծության զարգացման ասպարեզում չդարձան նույնիսկ հարևան տնտեսությունների սեփականությունը։ Ավելին, վերջին տարիներին Ալագյազի սովխոզում մեկ ոչխարի բրդատվությունը չի անցնում 2,2 կիլոգրամից, այդ այն դեպքում, երբ Թալինի ոչ տոհմային 9—11 տնտեսություններ տարեկան մեկ ոչխարից ավելի շատ բուրդ ու միս են ստանում, քան Ալագյազի ոչխարաբուծական սովխոզը։ Արդեն մեկուկես տարի է, ինչ այն հանձնված է անասնաբուժական ու անասնաբուժական գիտահետազոտական ինստիտուտի տնօրինությանը։ Հուսանք, որ Ալագյազի սովխոզի փառքն ու համբավը կվերականգնվի։

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումում Լ. Ի. Բրեժնևն ասաց «Հարկավոր է ավելի շատ շահագրգռել կոլտնտեսություններին ու սովխոզներին բարձրորակ գյուղատնտեսական մթերքների վաճառքի գործում»։ Սակայն թալինցիներն այս ասպարեզում էապես ետ են մնում։ Բերենք մի քանի օրինակներ։ Վերջին երեք տարիներին Թալինի շրջանի տնտեսություններն ամեն տարի պետությանը վաճառել են 33 տոկոս միջակից ցածր ու հյուծված խոշոր եղջերավոր անասուններ և 32 տոկոս ոչխարի միս։ Հաշվարկները ցույց են տալիս, եթե հանձնված միսը լիներ գոնե միջակ գիրության, ապա կոլտնտեսություններն ու սովխոզները կտնտեսեին 500 գլուխ խոշոր և 5200 գլուխ մանր եղջերավոր անասուն և կստանային մոտ 400 հազար ռուբլու լրացուցիչ դրամական եկամուտ։



Կամ՝ Թալինի 14 կոլտնտեսություն տարեկան մշակում են 210—246 հեկտար ծխախոտ և պետությանն են հանձնում 230—266 տոննա հումք։ Սակայն անտնտեսվարության պատճառով տարեցտարի իջնում է ծխախոտի որակը։ Այսպես, 1964—1965 թթ. կոլտնտեսությունները պետությանը վաճառել են II և III (բաց) տեսակի (33—49 հազար կգ ծխախոտ) ի դեպ II տեսակի ծխախոտի վաճառքի գինը 4 ռ. 13 կ. է, III (բաց)-ինը՝ 2 ռ. 63 կ., իսկ 1967—1968 թթ. II տեսակի ամենևին չեն վաճառել, III (բաց) տեսակի ծխախոտ վաճառել են ընդամենը 8,5—17,7 հազար կգ։ Այդ նշանակում է, որ 1964—1965 թթ. համեմատությամբ, կոլտնտեսությունները վերջին երկու տարվա ընթացքում ստացել են 74—204 հազար ռուբլու պակաս եկամուտ։ Ծխախոտից ստացվող եկամուտները Շղարշիկ գյուղի կոլտնտեսությունում կրճատվել են 4, Կարմրաշենում՝ 2, Վ. Սասնաշենում՝ 2,5 անգամ, Իրինդում՝ 26,6, հազար ռուբլով, Դավիթաշենում՝ 19 հազարով, Ն. Սասնաշենում՝ 22 հազարով և այլն։

Պետությանը բաղխայինից (3,7 տոկոս յուղայնության) ցածր կաթ հանձնելու հետևանքով շրջանի տնտեսությունները վերջին 3 տարում կորցրել են 22,5 հազար ռուբլու լրացուցիչ եկամուտ։

Գյուղատնտեսական կուլտուրաների ցածր բերքատվության, անասունների պակաս մթերատվության պատճառով տարեցտարի բարձրանում է գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը։ Դեռևս մեծ է աշխատանքային ու նյութական միջոցների ծախսումը մեկ միավոր արտադրանքի վրա։ Ընդ սմին, Թալինի շրջանում գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքը շատ ավելի բարձր է, քան հանրապետությունում։

Գյուղատնտեսական մթերքների բարձր ինքնարժեքը պայմանավորված է կոլտնտեսություններում ու սովխոզներում մեքենայացման ցածր աստիճանով, անտնտեսվարության, մեծաքանակ կորուստների, ագրոտեխնիկական անբավարար միջոցառումների կիրառման, տնտեսագիտական աշխատանքի ցածր մակարդակով և այլն։ Օրինակ, չի կարելի հաշտվել այն դրության հետ, երբ անասունների անկումները և հարկադիր մորթը տարեցտարի աճում են։ Եթե 1967 թ. այդ կարգի ելքը շրջանում կազմել է 571 գլուխ խոշոր և 14998 գլուխ մանր եղջերավոր անասուն, ապա 1969 թ. այն համապատասխանաբար եղել է 727 և 16985 գլուխ։ Առանձին տնտեսություններում (Մաստարա, Իրինդ, Աշնակ, Վ. Թալին և այլն) անկումները և հարկադիր մորթը կազմել է հանրային հոտի 10—35 տոկոսը, որը բացատրվում է զոոանասնաբուժական սպասարկման, անասունների կերակրման ու խնամքի վատ դրվածքով։

Թալինի կուսակցական ու գյուղատնտեսական օրգանները պատշաճ չափով հոգ չեն տանում հանրային անասնապահության կայուն կերի բազայի ստեղծման համար։ Կոլտնտեսություններն ու սովխոզները տարեկան գնում են 500 հազար ռուբլու խտացրած կեր, խոտ ու ծղոտ։ Բավական է նշել, որ շրջանի տնտեսությունները տարեկան ծախսում են 16500 կերի միավոր, որից 7300 տոննա (կամ 45,1 տոկոսը) գնովի են։

Անասնապահական մթերքների բարձր ինքնարժեքը, որպես կանոն, հետևանք է անհրաժեշտ կերի պակասի, և դրա ցածր որակի, որի բաժինը բավական մեծ է ինքնարժեքի կազմում։ Մեր կարծիքով, անհրաժեշտ է խտաց-

*րած կեր արտադրող ձեռնարկությունների ու այն սպառող տնտեսությունների միջև ստեղծել այնպիսի կարգ, որ ոչ լիարժեք կերի վաճառքի դեպքում տնտեսությանը որոշ տոկոս հատուցի կեր արտադրող ձեռնարկությունը։ Նման կարգը կբարձրացնի վերջիններիս պատասխանատվությունը և կշահի ոչ միայն գյուղատնտեսությունը, այլև ամբողջ ժողովրդական տնտեսությունը։*

*Անհրաժեշտ է նաև գյուղատնտեսական մթերք արտադրողի վարձատրությունը կախման մեջ դնել ո՛չ միայն արտադրանքի քանակից, այլև որակից, որը հիմնովին կնպաստի արտադրողների նյութական շահագրգռվածության և գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացմանը։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության վրա կատարված մեծ ծախսերը, անշուշտ, բացասաբար են անդրադարձել կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի բարելավման, դրանց ֆինանսատնտեսական գործունեության բարձրացման վրա։ Այդ է պատճառը, որ շրջանի 25 կոլտնտեսություններ վարկառու են (մոտ 5 միլիոն ռուբլի)։ Այդ ամենն արդյունք է այն բանի, որ կուսակցության շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները կազմակերպական լուրջ միջոցներ չեն ձեռնարկել հողագործության կուլտուրան բարձրացնելու համար։*

*Կուսակցական, սովետական օրգանները պետք է լայն շարժում ծավալեն հողագործության բարձր կուլտուրայի համար, կազմակերպական-քաղաքական աշխատանքով ապահովեն գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացումը, շրջանի էկոնոմիկայի վերելքը։*

Զ. Ս. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի տեսուչ

---

# ՇԱՀՈՒԹԱԲԵՐ ԿՈՒԼՏՈՒՐԱ

*Սովետական Միությունում մշակվող 36 եթերայուղատու կուլտուրաներից վարդաբույր խորդենին գրավում է առաջնակարգ տեղերից մեկը, որի մշակությամբ ներկայումս զբաղվում են մեր հանրապետության Հոկտեմբերյանի և Էջմիածնի շրջանները։ Խորդենու կանաչ զանգվածը թորելիս ստանում են արժեքավոր եթերայուղ, որը լայն չափով օգտագործվում է օծանելիքների, բժշկության, քիմիայի և ժողովրդական տնտեսության այլ ճյուղերում։*

*Հայկական խորդենու յուղն իր որակով հավասարը չունի Սովետական Միության մեջ և գերազանցում է աֆրիկական, ֆրանսիական ու իսպանական հայտնի խորդենու յուղերին։ Այն լայնորեն օգտագործում են Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի և երկրի այլ քաղաքների օծանելիքներ արտադրող գործարանները։ Խորդենու յուղը միջազգային շուկայում մեծ պահանջարկ ունի։ Մեր հանրապետությունը տարեկան 3000 կգ արտահանում է Անգլիա։*

*Խորդենին արտադրական նպատակով Հայաստանում մշակվում է 1937 թվականից։ Ներկայումս դրա պլանտացիաները կազմում են ավելի քան 1000 հեկտար. 1968 թ. արտադրվել է 20,8 հազար տոննա խորդենու հումք, որից ստացվել է 15,4 հազար կգ եթերայուղ։*

*Խորդենին որպես գյուղատնտեսական առավել արդյունավետ կուլտուրա, լայն հեռանկարներ ունի։ 1975—1980 թթ. դրա հումքի արտադրությունը հանրապետությունում կհասնի 40—50 հազար տոննայի, իսկ եթերայուղինը՝ մոտ 50 հազար կգ։ Խորդենու մշակման հետագա ընդարձակումը նախատեսված է կատարել Արարատյան դաշտավայրի շրջաններում, ուր դրա համար կան նպաստավոր պայմաններ։ Այսպիսով, մոտակա ժամանակներում զգալիորեն կմեծանա մեր հանրապետության տեսակարար կշիռը միութենական եթերայուղերի արտադրության մեջ, որը տնտեսական կարևոր նշանակություն ունի։*

*Ուրախությամբ պետք է նշել, որ 1967 թ. խորդենու յուղի արտադրությամբ Հայաստանը Սովետական Միությունում գրավեց առաջին տեղը և այժմ տալիս է նման յուղերի միութենական արտադրանքի 45—50 տոկոսը։*

*Այդ արժեքավոր կուլտուրայի մշակության ասպարեզում հարուստ փորձ են կուտակել Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները, որոնք վերջին տարիներին բարձր բերք են ստացել։ Իրենց լավ աշխատանքով աչքի են ընկել Շենավանի, Ջանֆիդայի, Բերքաշատի և Նոր Ամասիայի կոլտնտեսականները. նրանք 1965—1969 թթ. յուրաքանչյուր հեկտարից ստացել են 300—400 ցենտներ խորդենու կանաչ զանգվածի միջին բերք կամ 5,1—6,8 հազար ռուբլի դրամական եկամուտ։ Առանձին բրիգադներ և օղակներ, որոնք ժամանակին ու որակով են կատարել խորդենու մշակությունը, ստացել են ավելի բարձր բերք։ Ելենա Հովհաննիսյանի օղակը (Տանձուտ) և Սանդրո Պողոսյանի բրիգադան (Ջանֆիդա) իրենց մշակած 4—6,5 հեկտար խորդենու տարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 650—656 ցենտներ կանաչ զանգված կամ 11—11,1 հազար ռուբլի դրամական եկամուտ։*

*Խորդենու հումքի և եթերայուղի արտադրության բնագավառում հանրապետության ձեռք բերած հաջողություններն ակնառու են։ Խորդենու կանաչ զանգվածի արտադրության ավելացման շնորհիվ մեծ չափով բարձրացել է կոլտնտեսությունների եկամտաբերությունը։ Այդ կուլտուրայի պլանտացիաների ընդարձակմանը զուգընթաց հարկավոր էր կառուցել կանաչ զանգվածի վերամշակման արդյունաբերական ձեռնարկություններ։ Դրա առաջնեկը հանդիսացավ Հոկտեմբերյանի գործարանը, որի տարեկան կարողությունը հինգ հազար տոննա էր։ Հետագայում, երբ ընդարձակվեցին այդ կուլտուրայի պլանտացիաները, հարկ եղավ վերակառուցել և ընդարձակել գործարանը, միաժամանակ եթերայուղատու գործարան կառուցել Նոր Կեսարիայում, որի առաջին հերթն արդեն շահագործման է հանձնված։ Այդ ձեռնարկություններում տեղակայվել են անհրաժեշտ սարքավորումներ, որոնք տարեկան կարող են վերամշակել մոտ 40 հազար տոննա խորդենու զանգված։ 1969 թ. շահագործման հանձնվեց նաև եթերայուղատու կուլտուրաների գիտահետազոտական ինստիտուտի հայկական փորձակայանի գործարանը, որը տարեկան կմշակի 3 հազար տոննա խորդենի։ Նախատեսված է վերամշակման ձեռնարկություն կառուցել և ջերմատնային տնտեսություն ստեղծել նաև Էջմիածնի շրջանում։*

*Չնայած այդ ամենին, հարկ է նշել, որ դեռևս անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում խորդենու պլանտացիաների մշակմանն ու կանաչ զանգվածի վերամշակմանը։ Ավելին, վերջին տարիներս աչքաթող է արվել խորդենու կանաչ զանգվածում եթերայուղի բարձր պարունակության ապահովումը։ Այսպես, եթե 1950 թ. խորդենու միավոր հումքի մեջ եթերայուղի ելունքը կազմել է 0,100, 1965-ին՝ 0,95, ապա 1969 թ. 0,075 տոկոս։ Դաշտերն ագոտական պարարտանյութերով միակողմանիորեն սնելու, բերքահավաքի ժամկետները խախտելու և հավաքված հումքը դաշտում երկար թողնելու պատճառով ընկնում է խորդենու հումքի որակը։*

Կոլտնտեսություններում արտադրված խորդենու ցածրորակ հումքը ո՛չ միայն ազդում է եթերայուղատու գործարանների տնտեսական, այլև կոլտնտեսությունների արտադրա-ֆինանսական ցուցանիշների վրա։ Օրինակ, 1968 թ. Գետաշենի և Նալբանդյանի կոլտնտեսությունները մշակում էին համապատասխանաբար՝ 26 և 60 հեկտար խորդենու պլանտացիա, որտեղ մեկ հեկտարի բերքատվությունը կազմեց (ֆիզիկական կշիռը) 310 և 300, իսկ հաշվարկայինը՝ 293,2 և 284 ցենտներ, որի հետևանքով գործարանը մեկ հեկտարի հաշվով պակաս վճարեց 292,4 և 272 ռ. կամ ընդհանուր տարածությունից՝ 7,6—16,3 հազար ռուբլի։

Խորդենու ցածրորակ հումք հանձնելու հետևանքով Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունները և եթերայուղատու գործարանները տարեկան կորցնում են 100—150 հազար ռուբլի։ Հետևաբար, կոլտնտեսությունների ղեկավարներն ամեն ինչ պետք է անեն, որպեսզի բարձրացնեն խորդենու հումքի որակը, որը եկամտաբերության բարձրացման կարևոր ռեզերվ է։ Հումքի որակի համար պատասխանատու են նաև եթերայուղատու գործարանների ղեկավարները, որոնք արդյունավետ չեն օգտագործում եթերայուղ արտադրող ձեռնարկությունների արտադրական կարողություններն ու հնարավորությունները։ Այսպես, եթե 1965 թ. մեկ կգ եթերայուղից Նոր Կեսարիայի գործարանը ստացել է 4 ռուբլի զուտ եկամուտ, ապա վերջին չորս տարիներում այն վնասով է աշխատում։ Վիճակը գրեթե նույնն է Հոկտեմբերյանի գործարանում։

Եթերայուղի արտադրության պրոցեսում կարևորը հումքի վերամշակումն է։ Կարելի է աճեցնել լավ հումք՝ եթերայուղի բարձր պարունակությամբ, սակայն վերամշակման ցածր տեխնոլոգիայի պատճառով ստանալ, համեմատաբար, քիչ քանակությամբ եթերայուղ։ Դրա համար անհրաժեշտ է կատարելագործել եթերայուղի արտադրության տեխնոլոգիական պրոցեսները։ Մեր կատարած ուսումնասիրությունները ցույց են տվել, որ խորդենու հումքի վերամշակման գործարաններում աշխատանքի արտադրողականության բարձրացումը հիմնականում կապված է հումքի վերամշակման ապարատները և հերթափոխային կամ ժամային արտադրողականության սարքավորումները լրիվ կարողությամբ օգտագործելու հետ։

Այժմ եթերայուղի արտադրության թույլ օղակը մեծ չափերի հասնող ձեռքի ցածր արտադրողական աշխատանքն է։ Դեռևս լրիվին մեքենայացված չեն հումքի բեռնման, բեռնաթափման և այն ապարատներին մոտեցնելու աշխատանքները։ Ուսումնասիրությունները և մեր կատարած փորձերը ցույց են տվել, որ եթերայուղի արտադրության բնագավառում համեմատաբար արդյունավետ են ՆՏԴ—3 մակնիշի թորման ապարատները, որոնք արտադրությանը ավելի շատ օգուտ են տալիս, քան ՊԱՆ—9-ը։ Փորձերով հաստատվել է, որ ՆԴՏ—3 ապարատների արտադրողականությունը 24 ժամվա ընթացքում կազմել է 48, իսկ ՊԱՆ—9-ինը՝ մոտ 32 տոննա։ Առաջինի եթերայուղի ելունքը 4,1 տոկոսով բարձր է, քան երկրորդինը։

Այսպիսով, ՊԱՆ—9 ապարատների փոխարինումն ավելի արտադրողաբար գործող ՆԴՏ—3 մակնիշի ապարատներով տեխնիկա-տնտեսական տեսակետից անհրաժեշտություն են և մեր պայմաններում ապահովում են եթերայուղի առավել ելունք, աշխատում են բարձր արտադրողականությամբ և կրճատում աշխատանքային ծախսումները։ Այս բոլորն աշխատանքի արտադրողականության հետագա աճի և եթերայուղատու գործարանների ցուցանիշների բարձրացման կարևոր գործոն է։



Եկամտաբերության բարձրացման հաջորդ գործոնը եթերայուղի ինքնարժեքի իջեցումն է։ Ինքնարժեքի կառուցվածքի վերլուծությունը ցույց է տալիս, որ մեկ կգ եթերայուղի արտադրության վրա կատարված ծախսումների մեջ մեծ բաժինն ընկնում է հումքին։ Այսպես, եթե 1967—68 թթ. մեկ կգ եթերայուղի ստացման գործարանային ծախսերը Նոր Կեսարիայի և Հոկտեմբերյանի գործարաններում կազմել են 22 և 26 ռուբլի, ապա մեկ տոննա հումքի արժեքը սահմանված 170 ռ. փոխարեն (եթերայուղի ցածր ելունքի հետևանքով) կազմել է համապատասխանաբար՝ 235,5 և 221,5 ռ. դրա հետևանքով մեկ կգ եթերայուղի ինքնարժեքը Նոր Կեսարիայում կազմեց 257,6, իսկ Հոկտեմբերյանում՝ 247,6 ռուբլի, որն իրացման գնից բարձր է։

Արտադրանքի ինքնարժեքը մեծ չափով բարձրացել է հումքի որակն ընկնելու հետևանքով (եթերայուղի ցածր պարունակությունը հումքի մեջ, աղբոտվածություն և այլն)։ Բացի այդ, եթերայուղատու գործարաններում պարապուրդների պատճառով խորդենու հումքը մշակվում է ուշացումներով. ցածր է վերամշակման տեխնոլոգիան, զգալի չափերի են հասնում կորուստները։

Եթերայուղի ցածր եկամտաբերության պատճառներից մեկն էլ խորդենու գնահատման գոյություն ունեցող կարգն է, որը չի նպաստում դրա մեջ եթերայուղի հետագա ավելացմանը և եկամտաբերության բարձրացմանը։

Անհրաժեշտ է նշել, որ Բուլղարիայում եթերայուղատու հումքի դիմաց վճարումը կատարվում է հումքի մեջ եթերայուղի պարունակության համեմատ, իսկ մեզ մոտ՝ կանաչ զանգվածի կշռին համապատասխան։ Մեր վճարման կարգը կատարյալ չէ, և մենք պետք է ընդօրինակենք մեր բարեկամներին։

Եթերայուղատու գործարանների եկամտաբերության բարձրացման և կուտակումների ավելացման կարևոր աղբյուր է եթերայուղի համախառն արտադրանքի ավելացումը։ Բայց այդ բնագավառում կատարվող աշխատանքներն անբավարար են։ Սիստեմատիկ չեն կատարվել եթերայուղի արտադրության պլանային առաջադրանքները, որի պատճառով վատացել է այդ գործարանների ֆինանսական դրությունը. նրանք ընդլայնված վերարտադրության հետ կապված բոլոր ծախսերը կատարել են միայն պետական վարկի օգնությամբ։

Եթերայուղի արտադրության եկամտաբերության բարձրացման չօգտագործված ռեզերվ է եթերայուղատու գործարանների սեզոնայնության կրճատումը, որին կարելի է հասնել ինչպես հումքի ասորտիմենտի ընդլայնմամբ, այնպես էլ թափուկներից տանիտ դաբաղանյութի, օծանելիքների և կոսմետիկական, արհեստական հոտավետ նյութերի արտադրամասի ստեղծմամբ։

Եկամտաբերության բարձրացման մյուս գործոնն աշխատողների նյութական շահագրգռվածության բարձրացումն է։ Անհրաժեշտ է լրացուցիչ վարձատրության ձևով նյութական խրախուսանք սահմանել՝ գործարանի անխափան աշխատանքի, եթերայուղի կորուստները նվազագույնի հասցնելու, էլեկտրաէներգիայի, վառելիքի և այլ նյութերի խնայողաբար ծախսումների համար, ինչպես նաև վարձատրության չափը կախման մեջ դնել եթերայուղի ելունքից և համախառն արտադրանքի արժեքից։

Է. Ն. ԱՍԱՏՐՅԱՆ



## ԿՈՆՍՈՒԼՏԱՑԻԱ

# ՍՏՐԿԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՅՈՒՐԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Ս. Տ. ԵՐԵՄՅԱՆ

ՀՍՍՀ ԳԱ ակադեմիկոս

Մարդկության պատմության մեջ առաջին անտագոնիստական սոցիալ-տնտեսական հասարակարգը ստրկատիրականն է, որի բովով անցել են բոլոր այն ժողովուրդները, որոնք պատմության ասպարեզ են իջել նախաֆեոդալական ժամանակաշրջանում։ Սակայն հայ ժողովրդի և նրա բաղադրիչ մասերը կազմող հեռավոր նախորդների՝ Հայկական լեռնաշխարհի նախաբնիկների պատմությունը մեզ հասցնում է մարդու և մարդկային հասարակության սաղմնավորման ժամանակաշրջանին՝ ստորին պալեոլիթին։ Նորագույն գյուտերը, մանավանդ հնագիտության ասպարեզում, ցույց են տալիս, որ Հայկական լեռնաշխարհում ապրող ցեղերը, նրանցից առաջացած հայ ժողովուրդը անցել են մարդկային պատմությանը հայտնի բոլոր փուլերը՝ նախնադարյան համայնական հասարակարգի երկարատև ժամանակաշրջանը և նրա ընդերքում առաջացած անտագոնիստական հնագույն սոցիալ-տնտեսական հասարակարգը՝ ստրկատիրությունը։

Պատմական զարգացման օրինաչափությունները մարքս-լենինյան տեսանկյունից դիտելով, անհրաժեշտ է դառնում հին աշխարհի ժողովուրդների զարգացման ընդհանուր օրինաչափությունների ֆոնի վրա վեր հանել մասնավորը, պատմական զարգացման այն առանձնահատկությունները, որ հատուկ են եղել հայ ժողովրդի բազմադարյան անցյալին։

Գիտությանը հայտնի է, որ Հայաստանը գտնվել է հին աշխարհի «Օյկումենեի» ներսում՝ Միջերկրածովյան ավազանի արևելյան շրջօղակում և Առաջավոր Ասիայի կենտրոնում, այսինքն՝ մարդկային պատմությանը հայտնի հնագույն քաղաքակրթության անմիջական հարևանությամբ և նրանց շրջօղակում։ Առանձնապես հարկավոր է նշել, որ Հայկական լեռնաշխարհը կուլտուրական բույսերի, հատկապես կուլտուրական ցորենի և մետաղամշակման հնագույն հայրենիքն է եղել (տե՛ս Н. И. Вавилов. Азия—источник видов. Журнал «Наука и жизнь», 1968, № 1, стр. 98, նաև՝ նույն տեղը Е. Черных. Первый металл планеты. № 7, стр. 33, 37): Նման բնորոշող եզրահանգումներ կարելի է անել միայն ամենալայն համեմատական ու բազմակողմանի ուսումնասիրության հիման վրա։

Հայ ժողովրդի մինչֆեոդալական ժամանակաշրջանի պատմությունը հասկանալու համար անհրաժեշտ է աչքի առաջ ունենալ նաև մի կարևոր հանգամանք. Առաջավոր Ասիան ընդգրկող բոլոր երկրները, ներառյալ Եգիպտոսը և Միջերկրածովյան ավազանի արևելյան մասը, պատմական զարգացման տեսակետից կազմում են մի շրջան և այդտեղ ապրող ցեղերն ու ժողովուրդները, սկսած մարդկության քաղաքակրթության արշալույսից, ընթացել են զարգացման ընդհանուր օրինաչափություններով, անշուշտ, ունենալով իրենց տեղական առանձնահատկությունները։ «Իրանիզմը» կամ «հելլենիզմը» նշված շրջանի համար լոկ միևնույն, ընդհանուր զարգացման տարբեր փուլեր են։ Աքեմենյան Իրանի աշխարհակալությանը նախորդել են Հին Արևելքի հնագույն պետությունները՝ Միջագետքի քաղաք-պետությունները՝ Աշշուրը—Ասորեստանը, Բիայնա-Ուրարտուն, Մարաստանը և հնագույն Հայկական պետությունը։ Սրանք այն աստիճաններն էին, որոնք հող պատրաստեցին Աքեմենյան Իրանի և հույն-մակեդոնական նվաճողների աշխարհակալությունների և հելլենիստական հասարակարգի համար, որտեղ սոցիալական և մշակութային նույնիսկ կրոնական պաշտամունքային բնագավառում մշակվել էր մեկ ընդհանուր տերմինոլոգիա. վերջինիս հիմքերը տանում են ասորա-բաբելական ժամանակաշրջանը և այնտեղից արամեական հին-



պարսկական, պահլավական և արամեական-հունական տերմինոլոգիային։ Սակայն Հայաստանում գոյություն է ունեցել նաև տեղական սոցիալական տերմինոլոգիա, որը պահպանվել է մեր մատենագրության մեջ։

Ստրկությունը՝ մարդու կողմից մարդու շահագործման այդ առաջին ձևը ծնունդ է առել դեռևս նախնադարյան համայնական կարգերի ընդերքում։ Իր զարգացման ամենավաղ փուլերում մարդկությունը նախնադարյան հոտից անցել է մայրիշխանության և հայրիշխանության համայնքին, որի ներսում տեղի են ունեցել սոցիալական շերտավորման բարդ պրոցեսներ։

Տնտեսական կյանքում անասնապահությունն ու երկրագործությունը հետզհետե տիրապետող էին դառնում, իսկ որսորդությունն ու հավաքչական տնտեսությունը՝ օժանդակ. դրան զուգընթաց ամրապնդվում էր նահապետական տոհմը։

Աշխատանքի առաջին խոշոր բաժանումը՝ անասնապահության անջատումը երկրագործությունից, հնարավորություն ընձեռեց արտադրաուժերի նոր, աննախընթաց վերելքի համար։

Այդ պրոցեսը՝ անասնապահության անջատումը երկրագործությունից, նշմարվում է դեռևս մ.թ.ա. IV—III հազարամյակներում— Եգիպտոսում, Պաղեստինում և Առաջավոր Ասիայի Իրանական, Հայկական և Փոքրասիական լեռնաշխարհներում։

Հովվական և երկրագործական ցեղերի միջև հաստատվում է անասնապահական և երկրագործական մթերքների կանոնավոր փոխանակություն։

Մանր նահապետական տոհմերն ու համայնքները, միավորվելով, ստեղծում են ցեղային միություններ։ Ցեղերից առանձնացող առաջնորդները, օգտվելով ցեղի գլխավորի և առաջնորդի իրենց դիրքից, ամենից ավելի էին օգտվում այդ փոխանակության արդյունքներից, իրենց ձեռքում կուտակելով հսկայական հարստություն։ Դա վերաբերում է հատկապես հովվական ցեղերի առաջնորդներին, որոնք մեծացնում էին իրենց հոտերը բացահայտ թալանի և անասուններ հափշտակելու միջոցով։ Այսպիսով, նախադրյալներ են ստեղծվում պատերազմների համար, որոնց նպատակն էր թալանը և կողոպուտը։

Փոխանակությունը կանոնավոր բնույթ է ընդունում աշխատանքի երկրորդ խոշոր բաժանումից հետո, երբ արհեստն անջատվում է որպես արտադրական գործունեության հատուկ ձև, որը սպասարկում է և՛ անասնապահներին, և՛ երկրագործներին։ Արհեստներն առանձնապես նպաստեցին կանոնավոր փոխանակության կարգավորմանը, քանի որ արհեստագործական արտադրանքը հիմնականում նախատեսված էր փոխանակության համար, այսինքն՝ ապրանք էր։

Նոր պայմաններում յուրաքանչյուր անհատ, որպես մթերքների արտադրող, ստեղծում էր շատ ավելի, քան անհրաժեշտ էր նրան պահպանելու իր գոյությունը, այսինքն՝ սկսում էր հավելյալ արդյունք արտադրել։

Հավելյալ արդյունքը պայմանավորված էր տեխնիկայի հետագա զարգացմամբ։ Հողի մշակության գործիքների կատարելագործումը և անասունների քարշիչ ուժի օգտագործումը պայմաններ են ստեղծում տոհմական համայնքից մոնոգամ ընտանիքների կտորակման համար։ Այդպիսի ընտանիքներից յուրաքանչյուրը վեր էր ածվում ինքնաբավ տնտեսական բջջի, որ հին հայերենում արտահայտվում էր «երդ» բառով։

Արորային երկրագործության զարգացման շնորհիվ զարգանում էր առանձին ընտանիքը, «երդ»-ը իր տնով, մշակելի հողամասով, պտղատու և խաղողի այգով։ Այդպիսի անհատ ընտանիքն ունենում էր իր գյուղատնտեսական ինվենտարը, քարշիչ անասունները և այլն, որն արդեն նրա մասնավոր սեփականությունն էր։

Արտադրական կյանքում տեղի ունեցող այս պրոցեսների արդյունքը եղավ տոհմական կապերի քայքայումը. տոհմը տրոհվում էր մի շարք ընտանիքների։ Նոր պայմաններում արենակցական կապերը կորցնում էին իրենց նշանակությունը, բայց ավելի մեծ դեր էին ստանում տնտեսական և տերիտորիալ կապերը։ Տոհմական համայնքը ետին պլան է մղվում և այնուհետև վճռական գործոն դառնում տերիտորիալ-դրացիական համայնքը։ Հողը նախկինի պես համարվում է ողջ համայնքի սեփականությունը, բայց ամեն մի ընտանիք-երդ մշակում էր վիճակով իրեն բաժին ընկած հողամաս «հող երդոյ»-ը։ Եվ այսպես, երկրագործական համայնքը դառնում է համատեղ կերպով հողը մշակելու համար համախմբված անջատ ընտանիքների միավորում։

Անհատ ընտանիքի տոհմից անջատման նման պրոցես է տեղի ունենում նաև անասնապահական ցեղերում։ Հոտերը դառնում են առանձին ընտանիքների սեփականություն։ Նախկինում տոհմի բոլոր անդամներն աշխատում էին համատեղ, մթերքներ էին արտադրում ողջ տոհմին պատկանող պարզունակ գործիքների միջոցով, և ստացված արդյունքը հավասարապես բաշխվում էր տոհմի անդամների միջև։ Իսկ հիմա թե՛ աշխատանքի գործիքները, թե՛ աշխատանքը դառնում են անջատ ընտանիքի սեփականություն։ Յուրաքանչյուր ընտանիք ինքն էր յուրացնում իր աշխատանքի արդյունքը։ Եվ այսպես, առաջ է գալիս մասնավոր սեփականությունը նախ՝ անասունների նկատմամբ,

քաղաքները, որպես բյուզանդական եկեղեցու թեմերի կենտրոններ։

Այլ էր իրադրությունը Անդրկովկասում։ Մեծ Հայք պետությունը և հարևան Վրաց և Աղվանից թագավորությունները թեև քաղաքականապես անկայուն էին, բայց այս շրջանում (IV—VI դդ.) զերծ մնացին «բարբարոսների» ներխուժումներից։ Թեև Մեծ Հայքը, 387 թ., բաժանվեց երկու մրցակից տերությունների միջև և դադարեց գոյություն ունենալ որպես կենտրոնացած պետություն, սակայն, ապրում էր օրինաչափ անցում՝ ստրկատիրական հասարակարգից ֆեոդալականին։ Հայաստանի բաժանումը ներքին, ֆեոդալականացող պրոցեսների հետևանք էր։ Այս ժամանակաշրջանում Հայաստանն ու Անդրկովկասը արտադրաուժերի բուռն զարգացում են ապրում։ Զարգանում է ֆեոդալական տնտեսությունը, ֆեոդալականացող ավագանու և քրիստոնեական հոգևորականության ստրկատիրական տնտեսություններում նախկին ստրուկներին դարձնում էին ինքնուրույն տնտեսություն վարողներ, թեև կախվածությունը առաջվա պես պահպանվում էր, իսկ համայնականները դառնում էին ֆեոդալականապես կախյալ մարդիկ։ Ժամանակի ընթացքում տեղի է ունենում համահարթման պրոցես՝ նախկին ստրուկները («բնակիչք ագարակին», «երդումարդիկ») և ազատ համայնականները («շինականները») ձուլվում են ֆեոդալական հասարակության մեջ, դառնում անմիջական արտադրողների միասնական դասակարգ։

Սասանյան Իրանը հելլենիզմին հակադրեց զրադաշտականությունը, որը ձևավորվեց իբրև պետական կրոն։ Հետագայում, երբ արաբները ոչնչացրին Սասանյան Իրանի պետությունը և իրենց գերիշխանությունը հաստատեցին, խալիֆայությունը զրադաշտականությունը փոխարինեց մահմեդական կրոնով, որը դանդաղեցրեց ֆեոդալականացման ընթացքը։ Այլ էր վիճակը Արևմտյան Հռոմեական կամ Բյուզանդական կայսրության ոլորտում ընդգրկված՝ Առաջավոր Ասիայի արևմտյան և հյուսիս-արևմտյան մասերում։ Մեծ Հայքի թագավորությունը, որի գահակալները՝ հակասասանյան հայ Արշակունիները, գտնվում էին Հռոմեական կայսրության «հովանավորության» ներքո։ Այդ ժամանակ ֆեոդալական հարաբերությունների ձևավորման պրոցեսը հելլենիստական հասարակարգի ճգնաժամը հարուցեց, որի արտահայտությունն էր իդեոլոգիայի բնագավառում ձևավորվող քրիստոնեական եկեղեցին։

Հիրավի, Առաջավոր Ասիայի արևմտյան մասում ստրկատիրական հասարակարգի ճգնաժամի խորացումը և ֆեոդալական հարաբերությունների ձևավորումը ամենացայտուն արտահայտությունը գտավ Մեծ Հայքի թագավորության մեջ։ Այստեղ էր, որ պատմության մեջ առաջին անգամ քրիստոնեությունը հայտարարվեց պետական կրոն և, հետագայում, երբ պատմության ասպարեզ իջավ նոր աշխարհակալությունը՝ ի դեմս Արաբական խալիֆայության, Հայաստանը, Վրաստանը և Աղվանքը արդեն ընթացել էին նոր ճանապարհով և կուլ չգնացին նոր նվաճողներին։

V դարում և հետո Հայաստանում ստեղծված գրականությունը Մեծ Հայքի թագավորությունը նկարագրում է իբրև զուտ ֆեոդալական երկիր։ Այս հանգամանքների ճնշման տակ է, որ հին հայագիտության ներկայացուցիչներն իրենց աշխատություններում Հին Հայաստանը ներկայացնում են իբրև ֆեոդալական հասարակարգի կլասիկ երկիր։ Այդ հայագետները IV—V դարերի Հայաստանի համար բնորոշ սոցիալական երևույթները հետադարձ հայացքով տանում են դեպի Հին Հայաստանի պետականության հնագույն ժամանակաշրջանները, հասցնելով այն նույնիսկ մինչև Ուրարտու։ Սովետական նոր հայագիտությունը Հին Հայաստանի հասարակարգը բոլորովին նոր տեսանկյունով է դիտում և հարկադրված է վերանայել այն դրույթներն ու եզրակացությունները, որ արել են նույնիսկ հայագիտության այնպիսի կարկառուն դեմքեր, ինչպիսիք են Ն. Ադոնցը և Հ. Մանանդյանը։

Թերևս անցյալում ու երբևէ այնքան բազմակողմանի ու խորաթափանց չի հետազոտվել Հին Հայաստանի հասարակարգի պատմությունը, ինչպես այժմ։ Դա սովետական պատմագրության հիմնական նվաճումներից մեկն է։ Այդ առաջընթացը պայմանավորված է Հին Արևելքը ուսումնասիրող սովետական պատմագրության նոր շկոլայով։

Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքն ուսումնասիրվում է մարքս-լենինյան մեթոդոլոգիայի ղեկավար սկզբունքների հիման վրա և հատուկ մեթոդիկայով, որը հնարավորություն է տալիս ավելի խոր ըմբռնելու այն երևույթները, որ հին շկոլայի ներկայացուցիչներն ի վիճակի չէին հասկանալու։

Հետազոտական մեթոդիկայի բարդացումը և բազմաթիվ նորահայտ նյութերի ընդգրկումը հնարավորություն են ընձեռում ավելի խոր թափանցելու Հին Հայաստանի հեռավոր անցյալը և երևան բերելու մինչֆեոդալական ժամանակաշրջանի այնպիսի բարդ երևույթ, ինչպիսին է ստրկատիրական հասարակարգը։



## ՆՈՐԸ ԻՐԱՆԻ ՀԵՏ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Իրանի աշխարհագրական դիրքը, բնական հարուստ ռեսուրսները, սահմանակից մեծ տարածությունը, տնտեսական փոխադարձ շահագրգռվածությունը բարենպաստ պայմաններ են ստեղծում ՍՍՀՄ հետ առևտրի ու տնտեսական համագործակցության լայն զարգացման համար։

Սովետա-իրանական ավանդական առևտրի հետ մեկտեղ 60-ական թվականներին սկսեց զարգանալ այդ երկրների համագործակցությունը շինարարության բնագավառում. սովետական կազմակերպությունների օգնությամբ Իրանում արդյունաբերական տարբեր օբյեկտներ կառուցվեցին։ Այսպես, 1963 թ. հուլիսին ստորագրվեց տնտեսա-տեխնիկական համագործակցության առաջին համաձայնագիրը՝ սահմանային Արաքս գետի վրա ամբարտակ և հիդրոէլեկտրակայան, Կասպիի վրա 11 հացահատիկային մեքենայացված շտեմարան և ձկնաբուծական գործարան կառուցելու մասին։ 1966 թ. հունվարին կնքված պայմանագրով Սովետական Միությունն Իրանին օգնում է Իսպահան քաղաքում մետաղամշակման կոմբինատ, Արաքեում մեքենաշինական գործարան կառուցելու և Իրանից ՍՍՀՄ գազամուղ անցկացնելու։ Այդ օբյեկտներին տրվող սովետական սարքավորումների, ինչպես նաև դրանց նախագծման ու սարքավորման տեխնիկական արժեքը կփոխհատուցվի Իրանից ստացվող գազով։

Ստեղծված փոխադարձ ձեռնտու պայմանների շնորհիվ ապրանքափոխանակությունը Սովետական Միության և Իրանի միջև վերջին տարիներս անընդհատ ընդլայնվում է։ Այդ են ցույց տալիս աղյուսակում բերված թվերը.

Սովետա-իրանական առևտրի զարգացումը
(մլն ռուբլիներով)

| | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|
| Շրջանառություն | 30,1 | 45,4 | 84,2 | 115,4 |
| Արտահանված է ՍՍՀՄ-ից | 13,8 | 27,9 | 56,7 | 79,3 |
| Ներմուծված է Իրանից | 16,3 | 17,5 | 27,5 | 36,1 |

ՍՍՀՄ և Իրանի միջև առևտրի հետագա ընդլայնման նպատակով, 1968 թ. վերջին մերձսահմանային առևտուր կազմակերպվեց Ադրբեջանական, Հայկական, Վրացական, Թուրքմենական սովետական հանրապետությունների և Իրանի միջև։ Այս առևտուրն իրականացնում է ՍՍՀՄ արտաքին առևտրի մինիստրության «Վոստոկինտորգ» համամիութենական միավորումը՝ Բաքվի հատուկ «Վոստոկինտորգի» բաժանմունքի և վերոհիշյալ հանրապետություններում՝ դրա լիազորների միջոցով։

քաղաքները, որպես բյուզանդական եկեղեցու թեմերի կենտրոններ։

Այլ էր իրադրությունը Անդրկովկասում։ Մեծ Հայք պետությունը և հարևան Վրաց և Աղվանից թագավորությունները թեև քաղաքականապես անկայուն էին, բայց այս շրջանում (IV—VI դդ.) զերծ մնացին «բարբարոսների» ներխուժումներից։ Թեև Մեծ Հայքը, 387 թ., բաժանվեց երկու մրցակից տերությունների միջև և դադարեց գոյություն ունենալ որպես կենտրոնացած պետություն, սակայն, ապրում էր օրինաչափ անցում՝ ստրկատիրական հասարակարգից ֆեոդալականին։ Հայաստանի բաժանումը ներքին, ֆեոդալականացող պրոցեսների հետևանք էր։ Այս ժամանակաշրջանում Հայաստանն ու Անդրկովկասը արտադրաուժերի բուռն զարգացում են ապրում։ Զարգանում է ֆեոդալական տնտեսությունը, ֆեոդալականացող ավագանու և քրիստոնեական հոգևորականության ստրկատիրական տնտեսություններում նախկին ստրուկներին դարձնում էին ինքնուրույն տնտեսություն վարողներ, թեև կախվածությունը առաջվա պես պահպանվում էր, իսկ համայնականները դառնում էին ֆեոդալականապես կախյալ մարդիկ։ Ժամանակի ընթացքում տեղի է ունենում համահարթման պրոցես՝ նախկին ստրուկները («բնակիչք ագարակին», «երդումարդիկ») և ազատ համայնականները («շինականները») ձուլվում են ֆեոդալական հասարակության մեջ, դառնում անմիջական արտադրողների միասնական դասակարգ։

Սասանյան Իրանը հելլենիզմին հակադրեց զրադաշտականությունը, որը ձևավորվեց իբրև պետական կրոն։ Հետագայում, երբ արաբները ոչնչացրին Սասանյան Իրանի պետությունը և իրենց գերիշխանությունը հաստատեցին, խալիֆայությունը զրադաշտականությունը փոխարինեց մահմեդական կրոնով, որը դանդաղեցրեց ֆեոդալականացման ընթացքը։ Այլ էր վիճակը Արևելյան Հռոմեական կամ Բյուզանդական կայսրության ոլորտում ընդգրկված՝ Առաջավոր Ասիայի արևմտյան և հյուսիս-արևմտյան մասերում։ Մեծ Հայքի թագավորությունը, որի գահակալները՝ հակասասանյան հայ Արշակունիները, գտնվում էին Հռոմեական կայսրության «հովանավորության» ներքո։ Այդ ժամանակ ֆեոդալական հարաբերությունների ձևավորման պրոցեսը հելլենիստական հասարակարգի ճգնաժամը հարուցեց, որի արտահայտությունն էր իդեոլոգիայի բնագավառում ձևավորվող քրիստոնեական եկեղեցին։

Հիրավի, Առաջավոր Ասիայի արևմտյան մասում ստրկատիրական հասարակարգի ճգնաժամի խորացումը և ֆեոդալական հարաբերությունների ձևավորումը ամենացայտուն արտահայտությունը գտավ Մեծ Հայքի թագավորության մեջ։ Այստեղ էր, որ պատմության մեջ առաջին անգամ քրիստոնեությունը հայտարարվեց պետական կրոն և, հետագայում, երբ պատմության ասպարեզ իջավ նոր աշխարհակալությունը՝ ի դեմս Արաբական խալիֆայության, Հայաստանը, Վրաստանը և Աղվանքը արդեն ընթացել էին նոր ճանապարհով և կուլ չգնացին նոր նվաճողներին։

V դարում և հետո Հայաստանում ստեղծված գրականությունը Մեծ Հայքի թագավորությունը նկարագրում է իբրև զուտ ֆեոդալական երկիր։ Այս հանգամանքների ճնշման տակ է, որ հին հայագիտության ներկայացուցիչներն իրենց աշխատություններում Հին Հայաստանը ներկայացնում են իբրև ֆեոդալական հասարակարգի կլասիկ երկիր։ Այդ հայացքները IV—V դարերի Հայաստանի համար բնորոշ սոցիալական երևույթները հետադարձ հայացքով տանում են դեպի Հին Հայաստանի պետականության հնագույն ժամանակաշրջանները, հասցնելով այն նույնիսկ մինչև Ուրարտու։ Սովետական նոր հայագիտությունը Հին Հայաստանի հասարակարգը բոլորովին նոր տեսանկյունով է դիտում և հարկադրված է վերանայել այն դրույթներն ու եզրակացությունները, որ արել են նույնիսկ հայագիտության այնպիսի կարկառուն դեմքեր, ինչպիսիք են Ն. Ադոնցը և Հ. Մանանդյանը։

Թերևս անցյալում ու երբեք այնքան բազմակողմանի ու խորաթափանց չի հետազոտվել Հին Հայաստանի հասարակարգի պատմությունը, ինչպես այժմ։ Դա սովետական պատմագրության հիմնական նվաճումներից մեկն է։ Այդ առաջընթացը պայմանավորված է Հին Արևելքը ուսումնասիրող սովետական պատմագրության նոր շկոլայով։

Հին Հայաստանի սոցիալ-տնտեսական, քաղաքական և մշակութային կյանքն ուսումնասիրվում է մարքս-լենինյան մեթոդոլոգիայի ղեկավար սկզբունքների հիման վրա և հատուկ մեթոդիկայով, որը հնարավորություն է տալիս ավելի խոր ըմբռնելու այն երևույթները, որ հին շկոլայի ներկայացուցիչներն ի վիճակի չէին հասկանալու։

Հետազոտական մեթոդիկայի բարդացումը և բազմաթիվ նորահայտ նյութերի ընդգրկումը հնարավորություն են ընձեռում ավելի խոր թափանցելու Հին Հայաստանի հեռավոր անցյալը և երևան բերելու մինչֆեոդալական ժամանակաշրջանի այնպիսի բարդ երևույթ, ինչպիսին է ստրկատիրական հասարակարգը։

# ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԿՅԱՆՔ

## ՆՈՐԸ ԻՐԱՆԻ ՀԵՏ ՏՆՏԵՍԱԿԱՆ ԿԱՊԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Իրանի աշխարհագրական դիրքը, բնական հարուստ ռեսուրսները, սահմանակից մեծ տարածությունը, տնտեսական փոխադարձ շահագրգռվածությունը բարենպաստ պայմաններ են ստեղծում ՍՍՀՄ հետ առևտրի ու տնտեսական համագործակցության լայն զարգացման համար։

Սովետա-իրանական ավանդական առևտրի հետ մեկտեղ 60-ական թվականներին սկսեց զարգանալ այդ երկրների համագործակցությունը շինարարության բնագավառում. սովետական կազմակերպությունների օգնությամբ Իրանում արդյունաբերական տարբեր օբյեկտներ կառուցվեցին։ Այսպես, 1963 թ. հուլիսին ստորագրվեց տնտեսա-տեխնիկական համագործակցության առաջին համաձայնագիրը՝ սահմանային Արաքս գետի վրա ամբարտակ և հիդրոէլեկտրակայան, Կասպիի վրա 11 հացահատիկային մեքենայացված շտեմարան և ձկնաբուծական գործարան կառուցելու մասին։ 1966 թ. հունվարին կնքված պայմանագրով Սովետական Միությունն Իրանին օգնում է Իսպահան քաղաքում մետաղամշակման կոմբինատ, Արաքում մեքենաշինական գործարան կառուցելու և Իրանից ՍՍՀՄ գազամուղ անցկացնելու։ Այդ օբյեկտներին տրվող սովետական սարքավորումների, ինչպես նաև դրանց նախագծման ու սարքավորման տեխնիկական արժեքը կփոխհատուցվի Իրանից ստացվող գազով։

Ստեղծված փոխադարձ ձեռնտու պայմանների շնորհիվ ապրանքափոխանակությունը Սովետական Միության և Իրանի միջև վերջին տարիներս անընդհատ ընդլայնվում է։ Այդ են ցույց տալիս աղյուսակում բերված թվերը.

Սովետա-իրանական առևտրի զարգացումը
(մլն ռուբլիներով)

| | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|
| Շրջանառություն | 30,1 | 45,4 | 84,2 | 115,4 |
| Արտահանված է ՍՍՀՄ-ից | 13,8 | 27,9 | 56,7 | 79,3 |
| Ներմուծված է Իրանից | 16,3 | 17,5 | 27,5 | 36,1 |

ՍՍՀՄ և Իրանի միջև առևտրի հետագա ընդլայնման նպատակով, 1968 թ. վերջին մերձսահմանային առևտուր կազմակերպվեց Ադրբեջանական, Հայկական, Վրացական, Թուրքմենական սովետական հանրապետությունների և Իրանի միջև։ Այս առևտուրն իրականացնում է ՍՍՀՄ արտաքին առևտրի մինիստրության «Վոստոկինտորգ» համամիութենական միավորումը՝ Բաքվի հատուկ «Վոստոկինտորգի» բաժանմունքի և վերոհիշյալ հանրապետություններում՝ դրա լիազորների միջոցով։

Սահմանային առևտրի բնորոշ կողմն այն է, որ Իրանին մատակարարված ապրանքների արժեքի դիմաց այդ հանրապետություններն իրավունք և հնարավորություն ունեն ներմուծելու այնպիսի անհրաժեշտ ապրանքներ, որոնք լիովին իրացվում են միայն տվյալ հանրապետությունում։ Իրանական կողմը նույնպես շահագրգռված է սահմանային առևտրի զարգացմամբ, քանի որ այդ սիստեմը հնարավորություն է ընձեռում առանց վալյուտա ծախսելու նշված հանրապետություններից ներմուծել իրեն անհրաժեշտ ապրանքները։

Հայկական ՍՍՀ առևտրի պալատի հրավերով 1968 թ. դեկտեմբերին Հայաստան այցելեց Իրանի գործարար շրջանների ներկայացուցիչների 12 հոգուց բաղկացած պատվիրակությունը, որը եղավ Հայաստանի ժողովրդական տնտեսության նվաճումների, շինանյութերի արդյունաբերության ցուցահանդեսում և ծանոթացավ մեր հանրապետության արդյունաբերության հնարավորություններին, արտահանվող ապրանքատեսակներին։ Իրանի պատվիրակությանն ընդունեց Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ Բ. Հ. Մուրադյանը։ Ընդունելության ժամանակ համաձայնեցին զարգացնել սահմանային առևտուրը Հայաստանի և Իրանի միջև։

1969 թ. Իրան է ուղարկվել բամբակի չվտված ձեթ, կալցիումի կարբիդ, նատրիումի ացետատ, կիտրոնաթթու, էլեկտրալամպեր, դաշնամուրներ, որոնց քանակը հետագայում կավելանա։ Կուղարկվեն նաև սպորտապրանքներ, տեխնիկական յուղ, գեղարվեստական առարկաներ և այլն։

Վերջին տարիներին առևտրական կապերը ՍՍՀՄ և Իրանի միջև հետևյալ պատկերն ունի։

Սովետական Միությունից Իրան է արտահանվել

| Ապրանքների անվանումը | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|
| Ընդամենը (մլն ռուբլի) | 13,8 | 27,9 | 56,7 | 79,3 |
| Մեքենաներ և սարքավորումներ (մլն ռուբ.) | 1,3 | 7,9 | 30,0 | 52,2 |
| Բուսական յուղ (հազար տոննա) | — | 9,2 | 38,9 | 42,7 |
| Շաքար » | 78,6 | 125,3 | 108,5 | 108,0 |
| Սև մետաղներ » | 18,6 | 38,0 | 45,6 | 58,7 |
| Պոլիմերային նյութեր (հազ. մ3) | 33,7 | 35,4 | 31,8 | 44,9 |
| Քիմիական ապրանքներ (հազ. ռուբլի) | 401 | 283 | 432 | 760 |
| Թուղթ (հազար տոննա) | 2,3 | 4,1 | 4,9 | 5,6 |
| Ցեմենտ » | — | 106 | 110 | 66 |

Ներկայումս իրանական կողմի հետ բանակցություններ են վարվում այդ երկրին Հայաստանի քիմիական արդյունաբերության նոր ապրանքներ՝ մեթիլացետատ, պոլիվինիլացետատ, կենցաղային օգտագործման տարբեր քիմիկատներ, տարբեր գույնի էմալե և լուսած ներկեր, մետաղյա և էլեկտրատեխնիկական արուրքներ, սպորտային գույք և այլն մատակարարելու համար։ Բանակցությունների շնորհիվ զգալի չափով կընդլայնվի Իրան մատակարարվող ապրանքների ծավալը։

Իրանին ապրանքներ մատակարարելու գործում առանձին նշանակություն են ստանում այն ձեռնարկությունները, որոնք սկսել են զբաղվել արտահանվող ապրանքների արտադրությամբ և մատակարարմամբ։ Օրինակ, Երևանի դաշնամուրի ֆաբրիկան մինչև վերջերս արտադրում էր միայն ներքին շուկայի համար։ Երբ լուծվեց Իրանին «Սևան» դաշնամուրներ մատակարարելու հարցը (բնորոշ է, որ տեղի բնակիչները շահագրգռված են գնելու Երևանի դաշնամուրի ֆաբրիկայի արտադրանքը) ֆաբրիկայի աշխատողները վերանայեցին արտադրության տեխնոլոգիական պրոցեսը, բարձրացրին արտադրության կուլտուրան, օգտագործեցին առավել բարձրորակ նյութեր. այս ամենից հետո, արտահանվող ապրանքների որակով զբաղվող մասնագետների հանձնաժողովն ընդունեց և Իրան ուղարկեց առաջին դաշնամուրները։ Նույնը պետք է ասել Սպիտակի շաքարի գործարանի մասին, որն Իրանին կիտրոնաթթու է մատակարարում։ Անհրաժեշտ է նշել նաև Կիրովականի քիմիական



կոմբինատի, Երևանի «Պոլիվինիլացետատ» և էլեկտրալամպերի գործարանների լավ աշխատանքը, որոնք ժամանակին և բարձրորակ արտադրանք ուղարկեցին հարևան երկրին։

Սահմանային առևտուրը զարգացնելու համար մատակարարող ձեռնարկությունների կոլեկտիվները պետք է խրախուսվեն և շահագրգռված լինեն թողարկելու արտապլանային արտադրանք, ցուցաբերեն ձեռներեցություն, ժամանակին առաքեն նախատեսված ապրանքները։

Հետզհետե մեծանում է նաև Իրանից ՍՍՀՄ ներմուծվող ապրանքների քանակը։ Դա երևում է ստորև բերված աղյուսակի թվերից։

1965—1968 թթ. ՍՍՀՄ ներմուծել է Իրանից

| Ապրանքների անվանումը | 1965 թ. | 1966 թ. | 1967 թ. | 1968 թ. |
|---|---|---|---|---|
| Ընդամենը՝ (մլն ռուբլի) | 16,3 | 17,5 | 27,5 | 36,1 |
| Բամբակ (հազար տոննա) | 7,1 | 6,4 | 11,2 | 13,7 |
| Նապարացինկի հանքաքար (հազար տոննա) | 42,7 | 56,2 | 59,4 | 55,9 |
| Տրիկոտաժ (մլն ռուբլի) | — | 0,1 | 3,2 | 3,2 |
| Չամիչ (հազար տոննա) | 7,2 | 6,2 | 12,9 | 12,4 |
| Նաշվի հումք (մլն հատ) | 1,2 | 1,4 | 1,8 | 2,1 |
| Կոշիկ (մլն զույգ) | — | 0,1 | 1,5 | 1,9 |

Իրանից ապրանքների ներմուծմանը մեծ նշանակություն է տրվում։ Իրանի ֆիրմաների արտադրանքի՝ Բաքվում կազմակերպված ցուցահանդեսը և տնտեսական պատվիրակության՝ Երևան բերած ապրանքների նմուշները լրիվ պատկերացում չէին կարող տալ այդ երկրի արդյունաբերության հնարավորությունների մասին։ Որպեսզի Սովետական Միությունը և Իրանի հետ սահմանային առևտուր անող հանրապետությունների գործարար շրջաններն ավելի լավ ծանոթանան Իրանի արտադրության հնարավոր ասորտիմենտին, 1969 թ. ամռանը Իրանի էկոնոմիկայի մինիստրությունը Մոսկվայում կազմակերպեց արդյունաբերական ապրանքների ցուցահանդես։ Նման ցուցահանդես առաջին անգամ է կազմակերպվել Սովետական Միությունում։ Դրան Մոսկվայում լուրջ նշանակություն էին տալիս, քանի որ արդյունաբերական ֆիրմաների արտադրանքի ցուցադրումից բացի, Իրանի ֆիրմաների հետ գործարար բանակցություններ անցկացվեցին և պայմանագրեր կնքվեցին Իրանի կողմից Սովետական Միությանը ապրանքներ մատակարարելու առթիվ։

Ցուցահանդեսում ներկայացված էին սննդամթերքներ արտադրող խոշոր ֆիրմաները. առանձնապես աչքի էին ընկնում «Մինու-պարս» բաժնետիրական ընկերության քաղցրավենիքի, «Խոշքեբար Իրան» ֆիրմայի չոր մրգերի զանազան նմուշները, պարոն Ասլանյանի գլխավորած «Իրան Արարատ» բաժնետիրական ընկերության խմիչքները։ Գոհացնում էին «Փաշմբաֆիե Աֆշար» բաժնետիրական ընկերության տեքստիլ արդյունաբերությունը և հագուստեղենի արտադրությունը, «Սակայի» բրդե գործվածքները, զանազան կտորեղենը, «Տրիկո Սաֆայի» տրիկոտաժը, «Քյաֆշե Մելլի» բաժնետիրական ընկերության գլխավոր ֆիրմայի կոշիկի արտադրությունը, որն Իրանում ամենալավն է համարվում և այլն։ Առանձին հետաքրքրություն էին ներկայացնում «Վարդան» ֆիրմայի տաղավարի՝ թանկարժեք նյութերից ու քարերից ձեռքով պատրաստված իրերը։

Բնորոշ էր Իրանի մետաղամշակման արդյունաբերության արտադրանքը։ Իրանում փաստորեն նոր ստեղծված այս ճյուղը ներկայացրել էր կենցաղային սառնարաններ, գազօջախներ, արծնապատ ամանեղեն, ածելու շեղբեր, երկաթեղեն և այլն։

Ավտոմոբիլային արտադրությունը ներկայացված էր ավտոբուսների, բեռնատար ու մարդատար մեքենաների մի քանի նմուշներով՝ հիմնականում հավաքովի, որոնք արտադրվում են արևմտաեվրոպական ֆիրմաների օգնու-

թյամբ: Ինչպես երևում է, այս ճյուղում առաջատար դեր է խաղում արևմտագերմանական «Մերսեդես» ֆիրման:

Ցուցահանդեսում կարելի էր տեսնել նաև դեղորայքի, քիմիական նյութերի, պարֆյումերիայի, հեռուստացույցների, ռադիոընդունիչների նմուշներ և այլ ապրանքներ: Ներկայացված ապրանքները հիմնականում լավորակ էին և ընդունելի ներմուծման համար:

Ցուցահանդեսի ընթացքում գործարար բանակցություններ էին վարվում իրանական ֆիրմաների հետ ապրանքների փոխանակության շուրջ: Այդ բանակցությունների շնորհիվ պայմանագրեր կնքվեցին Իրանից Հայաստան տրիկոտաժ, կոշիկ, բրդե գործվածք, գաղօջախներ և այլ ապրանքներ ներմուծելու մասին:

Այս տարվա մարտին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Պոդգոռնու պաշտոնական այցը Իրան նոր ազդակ հանդիսացավ երկու երկրների միջև բարի դրացիական հարաբերությունների և համագործակցության զարգացման համար:

Մեկնաբանելով այցելության արդյունքները, իրանական «Աժանգ» թերթը նշում է. Սովետական Միության և Իրանի միջև հաստատված հարաբերությունները մեծ նշանակություն կունենան ո՛չ միայն էկոնոմիկայի, տեխնիկայի, գիտության և կուլտուրայի բնագավառում փոխադարձ համագործակցության զարգացման, այլև կարևոր ներդրում կլինի միջազգային խաղաղության ամրապնդման համար:

Բանակցությունների ընթացքում սահմանվեցին սովետա-իրանական առևտրի հետագա ընդլայնման հիմնական ուղիները: Այդ իր կոնկրետ արտահայտությունը կգտնի 1971—1975 թթ. առևտրա-վճարային համաձայնագրում. ինչպես գրում է իրանական «Այանդեգան» թերթը՝ մոտակա հինգ տարիների ընթացքում ՍՍՀՄ և Իրանի միջև ապրանքաշրջանառությունը կավելանա 200 մլն դոլարով, իսկ սահմանամերձ առևտրի հետագա զարգացումը կնպաստի այդ բանին:

Այս բանակցությունների արդյունքը եղավ այն, որ կնքվեցին Իրանից ստանալիք ապրանքների համաձայնագրեր. Հայաստանի առևտրական կազմակերպություններն արդեն ստացել և իրացրել են մոտ 2 միլիոն ռուբլու գործվածքեղեն, բրդյա կտոր և այլ ապրանքներ:

Հանրապետության վերադաս մարմիններն առանձին նշանակություն են տալիս Իրանի հետ սահմանային առևտրի զարգացմանը և, մեր կարծիքով, Հայաստանի համապատասխան մինիստրությունները, կազմակերպություններն ու ձեռնարկություններն իրենց հերթին ամեն կերպ կնպաստեն Իրանի հետ առևտրի զարգացման այս նոր ձևին:

Գ. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ
«Վոստոկինտորգ» համամիութենական միավորման լիազոր Հայկական ՍՍՀ-ում



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՐԱԶԱՏ ՁԱՅՆԵՐ ՕՏԱՐ ԱՓԵՐԻՑ

(ՀԱՄԱՌՈՏ ԱԿՆԱՐԿ)

Սովետական կարգերի հաղթանակը Հայաստանում էական փոփոխություններ հարուցեց սփյուռքահայ զանգվածների շրջաններում: Հայրենասիրական ոգով տոգորված աշխատավորները հետզհետե համախմբվեցին այն կազմակերպությունների շուրջը, որոնք բարյացակամությամբ լեցուն, սկսեցին խոսքով ու գործով օգնել վերածնված հայրենիքի առաջընթացին: Այս առումով խիստ ուշագրավ է այն երևույթը, որ սփյուռքահայ մամուլի տարբեր օրգաններում սկսեցին հանդես գալ առաջավոր անձնավորություններ, ովքեր ծառս լինելով դաշնակցական բախտախնդիրների հայրենադավ ոտնձգությունների դեմ, հաստատապես կանգնեցին սովետական հայրենիքի բարեկամների շարքում:

Թերթելով սփյուռքի մամուլի էջերը՝ պարզորեն ընկալում ենք մեր բարեկամների ազնիվ ձգտումների ու հայրենաբաղձության կարոտալի կանչերի առույգ ձայները:

Մեծ է սփյուռքահայ առաջադեմ գրականության դերը օտարության մեջ գտնվող հայերի գաղափարական կողմնորոշման, սովետական հայրենիքի պաշտպաններին միանալու, օտարի սեմերը լիզող ազգադավների դեմ պայքարելու, հայապահպանության գործում: Այսօր իսկ սուր պայքար է մղվում սփյուռքում խորհրդային հայրենիքի հետ իրենց հույսերը կապած հայության և հայրենիքին ուրացող հայերի միջև: Սովետական Հայաստանին նվիրված իր *Զրնգող հայրենիք* («Լրաբեր») բանաստեղծության մեջ Մ. Շիրակացին ցավով գրել է.

Դեռ կան կույր աչքեր, որ լուսապայծառ
Կյանքը լուսաշող տեսնել չեն ուզում.
Անարժան փառքի, աթոռի համար՝
Չոքած օտարի սեմերն են լիզում:

1935 թ. Նյու-Յորքում լույս տեսավ Հակոբ Գույումճյանի *Լենինյան երգեր* ժողովածուն՝ նվիրված «Լենինիզմի դրոշակակիր ամերիկահայ երիտասարդության»: Այս և այլ գրքերում հեղինակը հանդես է գալիս իբրև հավատավոր կոմունիստ, համակված այն համոզմամբ, թե ողջ մարդկությունը կընթանա Լենինի մատնանշած ուղիով: Նա անվախ հանդես է գալիս.

Իբրև երգիչը Կարմիր դրոշին,
Կարմիր փառքին,
Կարմիր կամքին:

Գույումճյանը ներբողում է հանճարեղ Լենինին, որ լուսավորել է իր ժողովրդի խավար կյանքը, ազատություն, խնդություն տվել նրան:

Տրամաբանական և ակնբախ է այն իրողությունը, որ, ինչպես համայն աշխարհի առաջադեմ գրողների, Սովետական Միության գրականության մշակների, այնպես էլ հայրենիքի և սփյուռքի գրականության մեջ Հոկտեմբերյան հեղափոխության թեման, հետհոկտեմբերյան րոլոր նվաճումներն ու հասումները կապվում են Իլյիչի անվան հետ:

Սփյուռքահայ արձակի վարպետներից մեկը՝ Անդրանիկ Անդրեասյանը, 1961 թ. Բեյրութում հրատարակված իր *Խոհերում* Հոկտեմբերյան հեղափոխությունը համարում է հայ ժողովրդին ևս փրկող «պատմութեան մեկ հրաշք»: Այն հայրենասեր հայերի ներկայացուցիչն է նա, որ տեսնելով խորհրդային իրավակարգի շնորհիվ ծաղկող, բարգավաճող իր երկիրը, նորակառույց գործարաններն ու դպրոցները, գիտության ու մշակույթի նորոգ պալատները՝ արտասահմանում ծառս է լինում վերածնված Հայաստանը զրպարտողների, նրա թերությունները «խոշորացույցի տակ ներկայացնողների» դեմ: Ահա նա Մոսկվայում է, թեթև արդյունաբերության ժողովրդական կոմիսարիատի տուֆակերտ շենքի մոտ: Շոյելով հայկական քարը, հպարտությամբ նա մտածում է. «Լա՛վ է, շա՛տ լավ է, ու ես ուրախ եմ, սիրելի *Հայրենակից*... որ կրցեր ես այսքան հեռու հորիզոններ հասցնել մեր հայրենիքին անունը, որ նպաստեր ես մեր Հայաստանին՝ ինքզինք հավիտենական «րռտացողի» դիրքէն ձերբազատելու, փրկելու հերոսական ճիգերուն»:

Այցելուները աշխարհի աշխատավորության մեծագույն առաջնորդի դամբարանում են.

# ԳԻՐՔ ԿՐԿՆԱԿԻ ՀԵՐՈՍԻ ՄԱՍԻՆ

Հայրենական մեծ պատերազմում սովետական ժողովուրդը, նրա պանծալի կարմիր բանակը իրենց ամուր կամքի, ջերմ հայրենասիրության ու մասսայական հերոսության շնորհիվ պատմական փայլուն հաղթանակ տարան, չնայած նրան, որ կրեցին անասելի զրկանքներ ու մեծ կորուստներ: Ամենածանրը միլիոնավոր մարդկանց զոհվելն էր, որոնցից ոչ ոք չի մոռացվել ու չի մոռացվի: Նրանք անմահ են իրենց գործով, քաջությամբ ու սերունդներին թողած հայրենասիրության վառ օրինակներով:

Դրանց շարքում առանձնահատուկ տեղ է գրավում հայ ժողովրդի անվեհեր զավակ, Սովետական Միության կրկնակի հերոս, ավիացիայի փոխգնդապետ **Նելսոն Գևորգի Ստեփանյանը**, որն իր «Իլ—2» ինքնաթիռով կատարել է մոտ 250 մարտական թռիչք և ոչնչացրել հակառակորդի ավելի քան 5000 զինվոր ու սպա, մի քանի հարյուր ավտոմեքենա, 80 տանկ, 27 ինքնաթիռ, երկու տասնյակից ավելի ռազմանավ ու փոխադրանավ, հրանոթային բազմաթիվ մարտկոցներ, զինամթերքի պահեստներ և ռազմական այլ օբյեկտներ: Ահա թե ինչու Ն. Ստեփանյանի, «...քաջերից քաջի,— գրել է ծովակալ Հովհաննես Իսակովը,— այդ երևելի մարդու մասին շատ գրքեր կարելի է գրել և պետք է գրել՝ այնքան շատ ուսանելի բան է կապված նրա փառավոր անվան հետ»:



Ն. Ստեփանյանի մասին հետաքրքրական գիրք է գրել նախկին օդաչու, միլիցիայի մայոր Նիկոլայ Վարդանյանը*: Նրա գիրքը իր ծավալով մեծ չէ: Այն կլանում է ընթերցողի ողջ ուշադրությունը, անջնջելի տպավորություն թողնում հերոսի քաջագործությունների, անհուն նվիրվածության, մարդկային վսեմ հատկությունների վերաբերյալ:

«Այս գիրքը,— համեստորեն գրում է հեղինակը,— միայն մի փորձ է մոռացումից փրկելու անմահ հերոսի կյանքի մի քանի դրվագները»: Այդ դրվագները այնքան պարզ, պատկերավոր ու համոզիչ են նկարագրված, որ հերոսը հառնում է իր ողջ վեհությամբ, նրա մարտական գործողությունները կինոժապավենի պես տեսանելի են դառնում, հմայում ընթերցողին:

Ահա նա հինգ ընկերների հետ Լենինգրադից փոխադրվում է հարավային ռազմաճակատ, ուր գրոհային օդաչուների խիստ կարիք կար: Այստեղ նրանք ստանում են մարտական առաջին առաջադրանքը— ոչնչացնել թշնամու՝ ռազմաճակատ փոխադրվող ուժերը: Թռիչքից առաջ օդաչուները գըրկախառնվում են, որը երբեմն նշանակում է հավերժական հրաժեշտ: Նելսոնն անխնա ոչնչացնում է թշնամուն, փայլուն կերպով կատարելով առաջադրանքը: Մեկ ուրիշ մարտում նա լռեցնում է Կրեմենչուկ քաղաքը ռմբակոծող թշնամու հեռահար հրանոթներին, նեղքում հակառակորդի զենիթային կրակի պատնեշը, վնասված ինքնաթիռով երկրորդ անգամ գրոհի նետվում, կատարում հանձնարարությունը և շնորհակալության արժանանում:

Հուզիչ է Ստեփանյանի մասնակցության նկարագրությունն Օդեսայի պաշտպանությանը, որի ընթացքում նա իր մարտական ընկերների հետ միասին բազմաթիվ սխրանքներ է կատարում: Այստեղ է, որ գերմանացիները մեր օդայիններին անվանում են «սև մահ»: 19-րդ մարտական թռիչքից հետո Նելսոնը ճանաչվում է որպես խուզող թռիչքի վարպետ և բացառիկ մանևրող: Դրանց հետ միասին ընթերցողը ծանոթանում է նաև Ստեփանյանի հնարամտությանը, գերհամարձակ վճիռների իրագործմանը, որոնց ապացույցներից մեկը ռումինական հուսարական գնդի ջախջախումից հետո ձիերի քշումն ու ռազմաճակատի գծից անցկացումն է:

Իրական գործողությունների պատկերավոր նկարագրությամբ, իր սեղմ գրելաոճով հեղինակը բացահայտում է սովետական հերոս մարտիկի հոգու անընկճելիությունը, ամրակամությունը, տառապանքների, զրկանքների ու դժվարությունների հաղթահարման կարողությունը, թշնամու հանդեպ տածած ատելությունը և բուռն հայրենասիրությունը: 20-րդ թռիչքի ժամանակ խփված ինքնաթիռից Նելսոնը վիրավոր վիճակում պարաշյուտով իջնում է թշնամու գրաված տերիտորիան, օրերով քաղցած է մնում, տառապում վերքից, բայց ուժեղ կամքի, տոկունության և պարտիզանների շնորհիվ նրան հաջողվում է կըրկին մարտաշարք վերադառնալ:

Անվեհեր կովկասցին նորից Լենինգրադում է, կարմրադրոշ Բալթիական նավատորմի ծովային օդաչու: Մարտերում կոփված փորձառու օդաչուն այստեղ, ուր դրությունն ավելի ծանր էր ու կրիտիկական, ցուցաբերում է անօրինակ հերոսության օրինակներ: Խիզախ օդաչուն արհամարհելով մահը, մշտապես գտնվում է Լենինգրադի պաշտպանության օդային մարտերի առաջին գծում և ընկերների հետ միասին ավելի հուժկու հարվածներ հասցնում հակառակորդին:

Ահա նա Պոտապովի հետ թռչում է Լենինգրադի վրայով: «Օդաչուները գիտեին, որ այնտեղ՝ ներքևում, ցրտից սառած, քաղցից տառապող մարդիկ կան, կանայք ու պատանիներ, գիտնականներ ու զինվորներ, որոնք չեն լքել հարազատ քաղաքը ու սպասում են... Սպասում են, որ կգա հաղթանակը, գուցե և օդանավի թևերով... գուցե... համենայն դեպս, էսկադրիլիան իր թևերի վրա մահին՝ մահ էր տանում» (էջ 101—102): Իրոք, էսկադրիլիան մահին մահ տարավ, համարձակորեն գրոհեց Տոսնոյի վրա, խորտակեց թշնամու մեքենաները, բենզինի պահեստները, տանկնուվրա արեց ու մոխրակույտի վերածեց օդանավակայանը, ոչնչացրեց բազմաթիվ հիտլերականների:

Այս և մյուս ռազմական գործողությունների մասին հեղինակը պատմում է իրազեկությամբ: Նա վառ գույներով նկարագրում է Նելսոնի մարտերի տեխնիկան, վարպետությունը, կշռադատված գործողությունները, որոնցով ամբողջապես պատկերացում է տալիս սիրելի հերոսի մասին: Բնական է, երբ ընթերցողը մտովին մի պահ տեղափոխվում է ռազմաճակատ, սրտի տրոփով հետևում այրվող հորիզոններում Նելսոնի վարած մարտերին, ապրում նրա հույզերով և թեթևացած շունչ քաշում, երբ նա կրկին հայրենի օդանավակայանում է:

Նկատենք, որ հեղինակին հաջողվել է ոչ միայն ճշմարտացիորեն նկարագրել անմոռաց Նելսոնի մարտական գործողությունները, այլև կենդանի մարմնավորել է նրա վեհ հատկությունները՝ սերն ընտանիքի, մարդու հանդեպ, ընկերասիրությունն ու անօրինակ անվեհերությունը:

1941 թվականի դեկտեմբերի 14-ին կատարում է ամենապատասխանատու հանձնարարություններից մեկը, առաջադրանք ունենալով ոչնչացնելու Մգա գետի երկաթուղային կամուրջը: Թռիչքն ընթանում է օդերևութաբանական աննպաստ պայմաններում՝ խիստ ամպամածության մեջ: Խորհելով, որ նման պայմաններում կարող է բախվել ընկերոջ՝ Սաշայի ինքնաթիռին, Նելսոնը նրան հրամայում է ետ վերադառնալ: Սաշան սկզբում համառում է, բայց ստիպված կատարում է հրամանը՝ սրտի ցավով մենակ թողնելով սիրելի ընկերոջը: Ճեղքելով ամպերը, Նելսոնը գտնում է կամուրջը: Ֆաշիստները այդ-

---

* **Այրվող հորիզոններ**, *«Հայաստան» հրատարակչություն, 1969, 146 էջ:*

պիսի գրոհ չէին սպասում, բայց Նելսոնը հարձակվում է աննահանջ: Թշնամին ուժեղ կրակ է բացում, բայց Նելսոնն արհամարհելով մոտալուտ վտանգը, թռչում է 20 մետր բարձրությամբ և ուղիղ ռմբակոծությամբ ոչնչացնում կամուրջը: Դա իսկական սխրագործություն էր:

Մեկ ուրիշ թռիչքի ժամանակ, նա իր վրա է գրավում թշնամու զենիթային կրակը, անխուսափելի մահից փրկում երկու օդաչուի:

Գրքում հիմնական տեղը գրավում են Լենինգրադի պաշտպանության համար Ն. Ստեփանյանի մղած մարտերի նկարագրությունները, որոնք շատ ու շատ բան են ասում կրտսեր լեյտենանտի աստիճանից փոխգնդապետի կոչման, էսկադրիլիայի հրամանատարի պաշտոնին հասած գրոհիչ օդաչուի մասին: Նա իր կատարած սխրագործությունների շնորհիվ դառնում է Բալթիական նավատորմի անձնակազմի սիրելին, ճանաչված հերոսը: Ընկերները նրան համարում են մրրկահավ, Բալթիական երկնքի բազե, որը տիրաբար սավառնում է օդում և ահ ու սարսափի մատնում թշնամուն:

1942 թ. օգոստոսի 18-ին, սովետական օդային նավատորմի տոնի առթիվ գումարված միտինգում հանդես է գալիս նաև Ն. Ստեփանյանը: Նա ասում է. «Պաշտպանելով Լենինգրադը, ես պաշտպանում եմ իմ հայրենի Կովկասը, իմ Երևանը, իմ հարազատներին: Լենինգրադն իմ հոգում մեր մեծ Սովետական Միության խորհրդանիշն է: Կեցցե Լենինգրադը» (էջ 72):

Հայրենիքի ազատության ու անկախության համար մղած մարտերում առավել աչքի ընկնելու և հրամանատարության առաջադրանքները փայլուն կերպով կատարելու համար Նելսոն Ստեփանյանին 1942 թվականին շնորհվում է Սովետական Միության հերոսի կոչում:

Հերոսը շարունակում է իր սխրանքները: Գրքի հեղինակը դա ցույց է տալիս մի շարք օրինակներով, որոնցից հատկանշական է հետևյալը. Կարմրադրոշ բալթյան նավատորմի օդային ուժերի հրամանատար՝ գեներալ-լեյտենանտ Սամոխինը հրամայում է Կատոյի օդանավակայանում ոչնչացնել հակառակորդի 30 ծանր ռմբակոծիչները, ավերել օդանավակայանը և գիշատիչներին թույլ չտալ հայտնըվել Լենինգրադի երկնքում:

Հրամանը կատարելու համար մեր ինքնաթիռները օդ են բարձրանում երեք խմբով, որից մեկը Ստեփանյանի հրամանատարությամբ: Չնայած թշնամու զենիթայինների ըստեղծած կրակային պատնեշին, սովետական օդաչուները մահացու բեռը թափում են հակառակորդի վրա, շարքից հանում նրա ինքնաթիռները: Ստեփանյանն անձամբ ոչնչացնում է 2 ինքնաթիռ և անտառում նկատում անվնաս մնացած երեք ռմբակոծիչ: Նա իր խմբին հրամայում է վերադառնալ օդանավակայան, իսկ ինքն անջատվելով ընդհանուր շարքից, բացում է ինքնաթիռի անիվները և խորամանկելով վայրէջքի գնում: Ֆաշիստները դադարեցնում են կրակը և համոզվում, որ սովետական օդաչուն գերի է հանձնվում:

«Նելսոնը գերմարդկային սառնասրտությամբ իջավ... Այս ու այն կողմից հայտնվեցին ավտոմատավորներ, որոնք վազում էին դեպի մեքենան: Նելսոնն ուղղություն էր վերցրել դեպի անվնաս կանգնած ռմբակոծիչները: Բավական տարածությունից անսպասելիորեն մինչև վերջ հրեց գազի բռնակը, ետ հավաքեց անիվները, լողաց ինքնաթիռների վրայով: Ֆաշիստները մինչև ուշքի կգային, «ԻԼ»-ը սահեց անտառի վրայով, հեռացավ» (էջ 110—111):

Գնդի հրամանատարն այդ պատասխանատու թռիչքի արդյունքներն ամփոփելիս, ասում է.

— Այսօր մենք ականատես եղանք մայոր Ստեփանյանի հերոսական թռիչքներից մեկին, որը վեր է ամեն գովեստից: Պետք է ատել թշնամուն այնպես, ինչպես ատում է Նելսոն Ստեփանյանը: Պետք է խորամանկել ու գործել այնպես համարձակ, ինչպես մայոր Ստեփանյանը: Նա օրվա հերոսն է» (էջ 111):

Նման նորանոր սխրագործությունների համար 1944 թվականի օգոստոսի 20-ին 11-րդ ավիադիվիզիայի հրամանատարը զեկուցագիր է ներկայացնում բարձր հրամանատարությանը Ն. Ստեփանյանին Սովետական Միության կրկնակի հերոսի կոչում շնորհելու: Սակայն Նելսոնը այդ չտեսավ. տեղի ունեցավ օդային մեծ ճակատամարտ, որից նա չվերադարձավ: Դա 1944 թվականի դեկտեմբերի 14-ին էր, երբ Նելսոնը վերջին անգամ թռիչք կատարեց դեպի անմահությունը:

**Այրվող հորիզոններ** գրքում շատ հուզիչ ու տպավորիչ է նկարագրված հերոսական այդ դրվագը: Ռազմաճակատի հրամանատար Հովհաննես Բաղրամյանի բանակները Լիբավա թերակղզում շրջապատել են ֆաշիստական 30 դիվիզիա: Մահվան ծուղակն ընկած հրեշները չեն հանձնվում: Լիբավա նավահանգստում հավաքվել են մեծ թվով ռազմական նավեր և փոխադրանավեր: Ֆաշիստական հրամանատարությունը փորձում է օղակից փրկել դիվիզիաները, ապա անցնել հարձակման:

Ամբողջ ավիադիվիզիան դուրս է գալիս մեծ ու պատասխանատու թռիչքի՝ առաջադրանք ունենալով ձախողել թշնամու պլանները, ոչնչացնել նրա հածանավերն ու փոխադրանավերը: Գլխավոր հրամանատարության կարգադրության համաձայն դիվիզիայի հրամանատարին փոխարինում է արդեն փոխգնդապետ Ստեփանյանը: Դա մեծ վստահություն էր: 42 գրոհային ինքնաթիռներ օդ են բարձրանում և խումբ-խումբ մարտական կարգ ընդունում. առաջատարը Նելսոնն է: Նա ակամայից մտաբերում է նախորդ թռիչքները, բայց ահա լսում է մարտական ընկերոջ՝ Ռումյանցևի ձայնը .

— Ընկեր հրամանատար, հակառակորդը մեզ նկատել է: Բալթիական երկինքը լցվել է ռադիոալիքներով: Լսում եմ «Ասսս...» ազդանշանը: Ամենուրեք յուրաքանչյուրին հայտնում են, որ «Նելսոնն օդում է»:

— Ավելի վատ իրենց համար,— պատասխանում է Նելսոնը...

Եվ ահա սկսվեց մեծ ճակատամարտը: Օդը լցվեց հրանոթների ու գնդացիրների որոտով: Ներքևից բարձրացող ֆաշիստական 2 «Ֆոկե-Վուլֆ»-եր և վերևից 2 կործանիչներ հարձակվում են Նելսոնի վրա, որոշում ինչ գնով լինի խփել առաջատարին: Մարտն անհավասար էր ու կատաղի: «Նելսոնը իր հերթին ուժեղ կրակ բացեց ներքևից եկողների վրա: Բայց չհասցրեց տեսնել արդյունքը: Կարծես Ռումյանցևի ձայնը հասավ ականջին ու լռեց: Օդանավի խցիկում մի լույս կայծակեց: Ինչ-որ բան փշրվեց: Մարմինը պարուրվեց անսովոր ջերմությամբ: Մոտորը սկսեց ոռնալ, հեկեկալ: Նա ներքև նայեց... Ծովը ցնցվում էր: Այդ գրոհայիններն էին անխնա թափում իրենց բեռը: Ուրախացավ: Ճիգ գործադրելով ինքնաթիռն ուղղեց վեր, ղեկը չենթարկվեց: Նա միայն նկատեց բոցերով հեղեղված երկինքը» (էջ 141):

Հետո «Նելսոնին թվաց, թե ծովն ուռչում է, անհունի արագությամբ բարձրանում, որ առջևում երևացող հսկա նավը վերցնի ու զարկի ինքնաթիռին: Հագուստն այրվում էր, չէր զգում: Ձեռքերն այրվում էին, չէր զգում: Իջնում էր, իջնում, իջնում: Ահա և փոխադրանավը: Նա չտեսավ խուճապահար փախչող հիտլերականներին: Չլսեց նրանց մահասարսուռ ճիչերը: Նրան թվում էր, թե ինքը կանգնած է, այդ նավն է թռչում վեր, որ զարկի իրեն:

Զարկվեց:

Հրեղեն լեզուները շոշափեցին ծովը: Փոքրիկ բեռնանավերը շտապում էին փախչել հրդեհված հրեշներից: Դեռ անձրևում էին ռումբերը: Դեռ հերոսացումով մեռնում էին բալթիական երկնքի անմահները...»:

Նելսոնը «այնպես համարձակ նայեց մահվան աչքերին, որ մահը նրանից վախեցավ:

Նա վրձնեց անմահությունը, որովհետև ուզում էր ապրել:

Եվ անմահացավ» (էջ 142):

Հայրենիքի շնչով ապրող և նրա համար իր երիտասարդ կյանքը զոհած խիզախ օդաչուի ու նշանավոր հրամանատարի ծառայությունները բարձր գնահատվեցին: 1945 թվականի մարտին 6-ին ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության հրամանագրով Նելսոն Ստեփանյանին ետմահու շնորհվեց Սովետական Միության կրկնակի հերոսի կոչում:

Ընթերցողի իրավունքով ըստ արժանվույն գնահատելով Ն. Վարդանյանի **Այրվող հորիզոններ** արժեքավոր ու հետաքրքրական գիրքը, միաժամանակ հարկ ենք համարում ասելու, որ սպասում ենք սովետական մարդկանց սրտերում ապրող և միշտ հիշվող Նելսոն Ստեփանյանի կյանքն ու մարտական գործողությունների պատմությունն ամբողջացնող նոր աշխատության: Դա անհրաժեշտ է, որովհետև շատ ու շատ ուսանելի բան է կապված անմահ հերոսի փառավոր անվան հետ: Չըպետք է մոռանալ, որ Նելսոնի և մյուս խիզախ մարտիկների մասին վարպետորեն գրըված գեղարվեստական ամեն մի գիրք մեր երիտասարդությանը ռազմա-հայրենասիրական ոգով դաստիարակելու կարևոր միջոցներից մեկն է:

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ



## ՄԻ ԲԱՆԱՎԵՃԻ ԱՌԹԻՎ

*Մեր ամսագրի 1966 թ. նոյեմբերյան համարում քննարկման կարգով տպագրվեց ժուռնալիստ Մ. Հակոբյանի գրախոսական հոդվածը՝ Ա. Հովհաննիսյանի և Ա. Ռուսակի՝ Մորավիայի արծիվը գրքույկի մասին: 1967 թ. ապրիլյան համարում զետեղվեց հեղինակների պատասխանը: Ինքնին հասկանալի է, որ ընթերցողներն սպասում էին խմբագրության կարծիքին: Թեև ուշացումով, բայց և այնպես անհրաժեշտ ենք համարում ընթերցողներին հայտնել մեր կարծիքը:*

*Անկախ վիճողներից, ստուգեցինք հարցը բազմակողմանի: Ջանացինք ծանոթանալ այն վավերագրերի ու աղբյուրների հետ, որոնք այս կամ այն չափով առնչվում են Արտեմ Պետրոսյանի կյանքին ու գործունեությանը: Մեզ համար այժմ անկասկած է, որ գրքույկի հեղինակները նեղություն չեն կրել ընթանալու հերոսի գործողությունների իրական կեռմաններով: Հարկ եղածի պես չեն որոնել ու չեն բացահայտել Ա. Պետրոսյանի սխրանքների մի շարք կարևոր դրվագներ և դրանք արտացոլող լուրջ փաստաթղթերը: Ակներև է, որ գրքույկի հեղինակներն ըստ էության թերագնահատել են նյութի ճշմարտացիության կամ վավերականության նշանակությունը և դրա փոխարեն այն լցրել հորինված անցքերի նկարագրությամբ:*

*Խմբագրության տրամադրության տակ եղած փաստաթղթերը վկայում են, որ Ուկրաինայում պահպանվում են Ա. Պետրոսյանի օրագրերը, պարտիզանական ջոկատների զեկուցագրերն ու նրանց ղեկավարների՝ Պետրոսյանին տված բնութագրերը, որոնց ուսումնասիրմամբ էապես կշահեր հերոսի իրական կերպարի վերակերտումը:*

*Այն հանգամանքը, որ Ա. Հովհաննիսյանը և Ա. Ռուսակն իրենց պատասխան հոդվածում համառեցին թույլ տված սխալներում և կոնկրետ չընդունեցին ոչ մի թերություն իրենց գրքույկում, վկայում է, որ նրանք չեն ըմբռնել իրենց առջև ծառացած խնդրի կարևորությունը: Անհերքելի է, որ նրանք նույնիսկ չեն ճշգրտել հերոսի անձնավորության հետ կապված մի շարք էական և տարրական, բայց միանգամայն անհրաժեշտ մանրամասներ:*

*Խմբագրությունը եկավ այն համոզման, որ Մորավիայի արծիվը գրքույկի հեղինակները փորձելով գեղարվեստական միջոցներով վերարտադրել Հայրենական մեծ պատերազմի ակտիվ մասնակից Արտեմ Պետրոսյանի հերոսական սխրանքները, երբ թույլ են տվել փաստական անճշտություններ և այլ կարգի վրիպումներ, որոնք, անշուշտ, խոչընդոտել են փայլուն հայրենասեր Ա. Պետրոսյանի ամբողջական կերպարի ստեղծմանը:*



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՆՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции,—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տնտեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 02130 Պատվեր 818 Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$: Տիրաժ 12600 Գինը 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 16/VI 1970 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:*

## ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

### ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գիտության մասին, *«Հայաստան» հրատ., 1969: Ժողովածուում զետեղված են Լենինի աշխատությունները, ելույթները, նամակները և ասույթները գիտության տարբեր հարցերի մասին:*

ՎՈԼԿ Ս. Ս.— Կարլ Մարքսը և ռուս հասարակական գործիչները: *Լ., 1969, 216 էջ: Գիրքն արտացոլում է Մարքսի և հեղափոխական ռուս էմիգրանտների կապը:*

ՅՈՒՖԵՐԵՎԱ Ե. Վ.— Լենինյան ուսմունքը սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի պետական կապիտալիզմի մասին: *Մ.,* «Экономика» *հրատ., 1969, 223 էջ:*

ԿԱԶԱԿԵՎԻՉ Մ. Հ.— Կապույտ տետրակը *(պատմվածք Լենինի մասին): Մ., 1969, 167 էջ:*

ԽԻԳԵՐՈՎԻՉ Ռ. Ի.— Կրտսեր եղբայրը: *Մ., Քաղհրատ, 1969, 175 էջ: Փաստագրական պատմվածք է Դմիտրի Իլյիչ Ուլյանովի մասին:*

ԳՈՒԴԻՆԱ Ռ. Ս.— Լենինյան թեման Մարիետա Շահինյանի ստեղծագործության մեջ *(ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1969, 153 էջ:*

ԿՈՍՏՅՈՒԿՈՎՍԿԻ Բ. Ա. և ՏԱԲԱՉՆԻԿՈՎ Ս. Մ.— Ռուսական նմրատը: *Մ., Քաղհրատ, 1969, 350 էջ: Հեղինակները պատմում են հեղափոխական ակտիվ գործիչ, Լենինի զինակից Վիրգիլիա Շանցերի մասին, որը մահացավ աքսորում 1917 թ.: «Մայրս ֆրանսուհի էր, հայրս գերմանացի, իսկ ես իսկական ռուս եմ», գրել է Շանցը:*

ՍՈԽԱՆ Պ. Ս.— Բոցավառ հեղափոխականը: *Կիև,* «Наукова Думка» *հրատ., 1969, 255 էջ: Գրքում շարադրված են Բուլղարիայի և միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչ Գեորգի Դիմիտրովի կյանքը և հեղափոխական գործունեությունը:*

ԳԱՆԴԻ ՄՈԽԱՆԴԱՍ ԿԱՐԱՄՉԱՆԴ— Իմ կյանքը: *Մ.,* «Наука» *հրատ., 1969, 612 էջ:*

ՍՄԿԿ պատմության քրեստոմատիա *(օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ունկնդիրներին). «Հայաստան» հրատ., 1969, 650 էջ:*

Սոցիալիզմի աշխարհը թվերով և փաստերով: *Տեղեկատու, Մ., 1968:*

Մամուլը և կոմունիզմի կառուցումը: *Մոսկվայի համալսարանի հրատ., 1969, 275 էջ: Այստեղ լուսաբանված է մամուլի դերը կոմունիզմի կառուցման գործում:*

ՄՅՈՒԼԵՐ ՀԱՆՍ և ՌԱՅՍԻՆԳ ԿԱՐԼ— Սոցիալիզմի ամրոցը: *Գերմանական Դեմոկրատական Հանրապետության քսան տարին: Մ.,* «Прогресс» *հրատ.,* ***1969, 343*** *էջ: Գրքում արտացոլված են ԳԴՀ անցած քսան տարվա (1949—1969 թթ.) նվաճումները:*

ՎԻՆԵՐ ՆՈՐԲԵՐՏ— Ես մաթեմատիկոս եմ: *«Հայաստան» հրատ., 1969, 443 էջ: Ամերիկացի աշխարհահռչակ գիտնականի ինքնակենսագրության երկրորդ մասն է:*

ՄԱԹԵՎՈՍՅԱՆ Շ. Ս.— Գենետիկայի ծագումը և զարգացման փուլերը: *Ե., «Գիտելիք» ընկերության հրատ., 1969, 40 էջ:*

ՆԻԿՈԼԱԵՎՍԿԱՅԱ Ե. Մ.— Աշխարհի ծայրին: Բանաստեղծություններ Հայաստանի *մասին: Թարգմանություններ (ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1969, 127 էջ:*

ՈՒԶՈՒՆՅԱՆ Մ. Ի.— Պատիժ և դաստիարակություն: *«Հայաստան» հրատ., 1969, 237 էջ: Հեղինակն այստեղ արտացոլել է պատժի առաջացման պատճառները, բացահայտել հանցագործներին դարձի բերելու հնարավորությունները և դաստիարակության հետ կապված այլ հարցեր:*

ԱՊՐԵՍՅԱՆ Հ. Ձ.— Հռետորական արվեստ: *Մոսկվայի համալսարանի հրատ., 1969, 160 էջ:*

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Բ. Գ.— Սովետահայ թատրոնի տարեգրություն, գիրք երկրորդ— *1941—1960: ԳԱ հրատ., 1969, 936 էջ: Գիրքն ընդգրկում է Սովետական Հայաստանի թատրոնների, ինչպես և Վրաստանի, Ադրբեջանի և այլ վայրերի թատրոնների քսան տարվա պատմությունը:*

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

# ՄԻ ԲԱՆԱՎԵՃԻ ԱՌԹԻՎ

Մեր ամսագրի 1966 թ. նոյեմբերյան համարում քննարկման կարգով տպագրվեց ժուռնալիստ Մ. Հակոբյանի գրախոսական հոդվածը՝ Ա. Հովհաննիսյանի և Ա. Ռուսակի՝ Մորավիայի արծիվը գրքույկի մասին: 1967 թ. ապրիլյան համարում զետեղվեց հեղինակների պատասխանը: Ինքնին հասկանալի է, որ ընթերցողներն սպասում էին խմբագրության կարծիքին: Թեև ուշացումով, բայց և այնպես անհրաժեշտ ենք համարում ընթերցողներին հայտնել մեր կարծիքը:

Անկախ վիճողներից, ստուգեցինք հարցը բազմակողմանի: Ջանացինք ծանոթանալ այն վավերագրերի ու աղբյուրների հետ, որոնք այս կամ այն չափով առնչվում են Արտեմ Պետրոսյանի կյանքին ու գործունեությանը: Մեզ համար այժմ անկասկած է, որ գրքույկի հեղինակները նեղություն չեն կրել ընթանալու հերոսի գործողությունների իրական կեռմաններով: Հարկ եղածի պես չեն որոնել ու չեն բացահայտել Ա. Պետրոսյանի սխրանքների մի շարք կարևոր դրվագներ և դրանք արտացոլող լուրջ փաստաթղթերը: Ակներև է, որ գրքույկի հեղինակներն ըստ էության թերագնահատել են նյութի ճշմարտացիության կամ վավերականության նշանակությունը և դրա փոխարեն այն լցրել ճոռոմված անցքերի նկարագրությամբ:

Խմբագրության տրամադրության տակ եղած փաստաթղթերը վկայում են, որ Ուկրաինայում պահպանվում են Ա. Պետրոսյանի օրագրերը, պարտիզանական ջոկատների զեկուցագրերն ու նրանց ղեկավարների՝ Պետրոսյանին տված բնութագրերը, որոնց ուսումնասիրմամբ էապես կշահեր հերոսի իրական կերպարի վերակերտումը:

Այն հանգամանքը, որ Ա. Հովհաննիսյանը և Ա. Ռուսակն իրենց պատասխան հոդվածում համառեցին թույլ տված սխալներում և կոնկրետ չընդունեցին ոչ մի թերություն իրենց գրքույկում, վկայում է, որ նրանք չեն ըմբռնել իրենց առջև ծառացած խնդրի կարևորությունը: Անհերքելի է, որ նրանք նույնիսկ չեն ճշգրտել հերոսի անձնավորության հետ կապված մի շարք էական և տարրական, բայց միանգամայն անհրաժեշտ մանրամասներ:

Խմբագրությունը եկավ այն համոզման, որ Մորավիայի արծիվը գրքույկի հեղինակները փորձելով գեղարվեստական միջոցներով վերարտադրել Հայրենական մեծ պատերազմի ակտիվ մասնակից Արտեմ Պետրոսյանի հերոսական սխրանքները, իրոք թույլ են տվել փաստական անճշտություններ և այլ կարգի վրիպումներ, որոնք, անշուշտ, խոչընդոտել են փայլուն հայրենասեր Ա. Պետրոսյանի ամբողջական կերպարի ստեղծմանը:



ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ս., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ԴԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Адрес редакции,—Ереван-33, Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տնտեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

ՎՖ 02130  Պատվեր 818  Թղթի չափսը $70 \times 108^{1}/_{16}$:  Տիրաժ 12600  Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ:  Ստորագրված է տպագրության՝ 16/VI 1970 թ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28:

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գիտության մասին, «Հայաստան» հրատ., 1969: Ժողովածուում ընտրված են Լենինի աշխատությունները, ելույթները, նամակները և ասույթները գիտության տարբեր հարցերի մասին:

ՎՈԼԿ Ս. Ս.— Կարլ Մարքսը և ռուս հասարակական գործիչները: Լ., 1969, 216 էջ: Գիրքն արտացոլում է Մարքսի և հեղափոխական ռուս էմիգրանտների կապը:

ՅՈՒՖԵՐԵՎԱ Ե. Վ.— Լենինյան ուսմունքը սոցիալիզմին անցնելու ժամանակաշրջանի պետական կապիտալիզմի մասին: Մ., «Экономика» հրատ., 1969, 223 էջ:

ԿԱԶԱԿԵՎԻՉ Մ. Հ.— Կապույտ տետրակը (պատմվածք Լենինի մասին): Մ., 1969, 167 էջ:

ԽԻԳԵՐՈՎԻՉ Ռ. Ի.— Կրտսեր եղբայրը: Մ., Քաղհրատ, 1969, 175 էջ: Փաստագրական պատմվածք է Դմիտրի Իլյիչ Ուլյանովի մասին:

ԳՈՒԴԻՆԱ Ռ. Ս.— Լենինյան բեմը Մարիետա Շահինյանի ստեղծագործության մեջ (ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1969, 153 էջ:

ԿՈՍՏՅՈՒԿՈՎՍԿԻ Բ. Ա. և ՏԱՐԱԶՆԻԿՈՎ Ս. Մ.— Ռուսական Մարատը: Մ., Քաղհրատ, 1969, 350 էջ: Հեղինակները պատմում են հեղափոխական ակտիվ գործիչ, Լենինի զինակից Վիրգիլիա Շանցերի մասին, որը մահացավ աքսորում 1917 թ.: «Մայրս ֆրանսուհի էր, հայրս գերմանացի, իսկ ես իսկական ռուս եմ», գրել է Շանցը:

ՍՈԽԱՆ Պ. Ս.— Բոցավառ հեղափոխականը: Կիև, «Наукова Думка» հրատ., 1969, 255 էջ: Գրքում շարադրված են Բուլղարիայի և միջազգային կոմունիստական շարժման ականավոր գործիչ Գեորգի Դիմիտրովի կյանքը և հեղափոխական գործունեությունը:

ԳԱՆԴԻ ՄՈԽԱՆԴԱՍ ԿԱՐԱՄՉԱՆԴ— Իմ կյանքը: Մ., «Наука» հրատ., 1969, 612 էջ:

ՍՄԿԿ պատմության քրեստոմատիա (օգնություն մարքսիզմ-լենինիզմի հիմունքների ունկնդիրներին). «Հայաստան» հրատ., 1969, 650 էջ:

Սոցիալիզմի աշխարհը թվերով և փաստերով: Տեղեկատու, Մ., 1968:

Մամուլը և կոմունիզմի կառուցումը: Մոսկվայի համալսարանի հրատ., 1969, 275 էջ: Այստեղ լուսաբանված է մամուլի դերը կոմունիզմի կառուցման գործում:

ՄՅՈՒԼԵՐ ՀԱՆՍ և ՌԱՅՍԻՆԳ ԿԱՐԼ— Սոցիալիզմի ամրոցը: Գերմանական Դեմոկրատական Հանրապետության քսան տարին: Մ., «Прогресс» հրատ., 1969, 343 էջ: Գրքում արտացոլված են ԳԴՀ անցած քսան տարվա (1949—1969 թթ.) նվաճումները:

ՎԻՆԵՐ ՆՈՐԲԵՐՏ— Ես մաթեմատիկոս եմ: «Հայաստան» հրատ., 1969, 443 էջ: Ամերիկացի աշխարհահռչակ գիտնականի ինքնակենսագրության երկրորդ մասն է:

ՄԱԹԵՎՈՍՅԱՆ Շ. Ս.— Գենետիկայի ծագումը և զարգացման փուլերը: Ե., «Գիտելիք» ընկերության հրատ., 1969, 40 էջ:

ՆԻԿՈԼԱԵՎՍԿԱՅԱ Ե. Մ.— Աշխարհի ծայրին: Բանաստեղծություններ Հայաստանի մասին: Թարգմանություններ (ռուսերեն): «Հայաստան» հրատ., 1969, 127 էջ:

ՈՒՋՈՒՆՅԱՆ Մ. Ի.— Պատիժ և դաստիարակություն: «Հայաստան» հրատ., 1969, 237 էջ: Հեղինակն այստեղ արտացոլել է պատժի առաջացման պատճառները, բացահայտել հանցագործներին դարձի բերելու հնարավորությունները և դաստիարակության հետ կապված այլ հարցեր:

ԱՊՐԵՍՅԱՆ Հ. Զ.— Հռետորական արվեստ: Մոսկվայի համալսարանի հրատ., 1969, 160 էջ:

ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Բ. Գ.— Սովետահայ թատրոնի տարեգրություն, գիրք երկրորդ— 1941—1960: ԳԱ հրատ., 1969, 936 էջ: Գիրքն ընդգրկում է Սովետական Հայաստանի թատրոնների, ինչպես և Վրաստանի, Ադրբեջանի և այլ վայրերի թատրոնների քսան տարվա պատմությունը:

ԳԻՆԸ 25 Կ.

ԻՆԴԵՔՍ 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԵՎՍ ՄԵԿ ՀՈՒՅՍ

Լեհաստանի վիրաբուժության Վարշավայի կենտրոնը աշխարհի սակավաթիվ հիմնարկություններից է, ուր ներդրվել է ճաղատության դեմ պայքարելու նոր օպերատիվ մեթոդ։ Հեռացվում են մաշկի այն հատվածները, որոնք զուրկ են մազածածկույթից և դրանք փոխարինվում են մազածածկույթ ունեցող մաշկով։ Կարելի է 8—10 սմ$^2$ մաշկ պատվաստել միանգամից, իսկ մի քանի վիրահատությունների ընթացքում՝ 150 սմ$^2$։ Հաճախ պատվաստումը կատարվում է հիպնոտիկ նարկոզով։

## ՍԱՌՆԱՄԱՆԻՔՆ ՕԳՆՈՒՄ Է

Ընդունված է կարծել, թե միայն տարվա տաք եղանակին բետոնապատված ճանապարհն է ամուր։

Մոսկվայի ինժեներա-շինարարական ինստիտուտի աշխատակիցներ պրոֆեսոր Մ. Խազերովիչի, ինժեներներ Ն. Մուշտաևվայի և Մ. Կարասևի մշակած մեթոդով կարելի է ճանապարհը բետոնապատել նույնիսկ ամենախիստ սառնամանիքին, միայն թե բետոնը ծածկվի թեփի հաստ շերտով։

Սառած բետոնը գարնանը հետզհետե փափկում է և շերտ առ շերտ ամրանում։ Այդ եղանակով պատրաստված ճանապարհը ոչնչով չի զիջում ամռանը կառուցվածին։ Ճանապարհի բետոնապատման հաջորդ օրն իսկ ավտոմեքենաները կարող են ազատ երթևեկել։

## ԳԱԶԱՀԱՏՈՂԻ ՈՒՂԵԿԻՑԸ

«Спутник—2»— այսպես է կոչվում փոքր տրամաչափի խողովակահատը։ Այն օգտագործվում է նախապատրաստական, վերանորոգման արտադրամասերում և մոնտաժային հրապարակներում, խողովակաշարերի մագիստրալային ուղիներում։ Սարդի տեսքով այդ փոքրիկ կոմպակտ մեքենան ամուր գրկում է մետաղյա խողովակը։ Իր «կնճիթով» այն կարող է շիկացնել 194—1420 մմ տրամաչափի խողովակի 5—50 մմ հաստության պատերը։

Խողովակահատն ունիվերսալ է, թողարկվում է երկու տարբերակով՝ դաշտային պայմանների և արտադրամասերի համար։ Բարձր արտադրողականությամբ այդ մեքենան հեշտությամբ կարող է կառավարել մեկ գազահատողը։ Այն գործում է ամենատարբեր կլիմայական պայմաններում (—50-ից մինչև +40 ջերմաստիճանի դեպքում)։

## «ՕԴԵՍԱ—70»

Ունիվերսալ, արագագործ ֆոտոպատճենահան այս մեքենայի միջոցով ստացվում է զոդման կիսահումք, առանց հավաքման տեղում այն հարմարեցնելու։ Հատման ճշտությունը ոսկերչական է։ 8 մ երկարությամբ, 5—100 մմ լայնությամբ կլոր թերթավոր գլանվածքներից այս մեքենայի օգնությամբ կարելի է պատրաստել զանազան դետալներ։ Այս տիպի մեքենաներն անփոխարինելի են մեքենաշինության, մետաղամշակման արդյունաբերության և նավթաշինության բնագավառում։ Սարքավորմանն սպասարկում է մեկ օպերատոր։

Ֆոտոպատճենահան նախկին մեքենաների համեմատությամբ, «Օդեսա—70»-ի արտադրողականությունը բարձր է 3—4 անգամ, իսկ շահագործման ծախսերը ցածր են 10—15 տոկոսով։

## ՆՈՐ ՇԱՐԺԻՉ

Հոլանդացի ինժեներ Ռոլֆ Մեյերը ստեղծել է նոր շարժիչ, որը կարող է դառնալ այժմյան ներքին այրման շարժիչների լուրջ մրցակիցը։ Այդ շարժիչն անաղմուկ է, չի թրթռացնում, չի աղտոտում օդը արտածվող գազերով, և կարող է աշխատել ցանկացած վառելիքով։ «Ստեոլինգ» շարժիչը, որին կարելի է անվանել նաև «արտաքին այրման» շարժիչ, վառելիքի լուծույթը չի ներծծում գլանաձև խցիկը. Նրա գլանը հերմետիկ է՝ լցված հելիում գազով, որը տաքացվում է դրսից։ Ընդարձակվելով՝ գազը շարժման մեջ է դնում մխոցային սիստեմը։

## «ԳՐՊԱՆԻ» ԻՆՔՆԱԹԻՌ

Մյունխենի մի խումբ ինժեներներ նախագծել են «գրպանի» տուրիստական ինքնաթիռ. ծալած թևերով այն ազատ տեղավորվում է սովորական գարաժում։ Թռչող ապարատի շարժիչն ունի 460 ձիաուժ հզորություն և կարող է մեկ ժամում զարգացնել 250 կիլոմետր արագություն։ Վայրէջքի և թռիչքի համար անհրաժեշտ է ընդամենը 400 մետրանոց հրապարակ։